ՂՈՒԿԱՍԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Է.



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## Ի ՀԵՐԱԿԼՆ



ԹԻՖԼԻՍ

Էլէկտրաշ. Օր. Ն. Աղանեանի, Պոլից. 7

1913

Ի ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿ

# ԱՒԵՏԻՔԵԱՅ ՔԱԼԱՅԵԱՆ

## ՂՈՒԿԱՍԵԱՆՑ

Ընծայեալ

*Սեբէոսի պատմութեան այս տպագրութիւնն ար-
տատպուած է պրօֆ. Ք. Պ.-ի 1879 թուին Պե-
տերբուրգ հրատարակած օրինակից։*

Նորս այս տպագիր «Պատմութեան Սեբէոսի ի Հերակլն» արարաւ յետ մանրակրկիտ բաղդատութեան տպագրելոյն ի Կ. Պօլիս ընդ նորագոյն գրչագիր օրինակի Կայսերական ճեմարանին գիտութեանց ի Ս. Պետերբուրգ։ Ի գալն մեր յամսեանն սեպտեմբերի ի Ս. Էջմիածին բազում ջանիւ ի խնդիր ելեալ բնագրին պատմութեանս, զորմէ ասէ պ. Միհրդատեան ի յառաջաբանի իւրում (եր. ժդ.) թէ՝ «զօրինակն մեր բաղդատեցաք ընդ բնագրին, որ ի Ս. Էջմիածին», ոչ գտաք զայն ի հռչակաւոր մատենադարանի Սրբոյ Աթոռոյս, զորմէ ճառել ունիմք յայլում նուագի, և ոչ զայլ հնագոյն օրինակն, զոր յիշատակէ հրատարակիչն սակաւ ինչ յետոյ ի նոյն կանխաբանութեան։ Ուստի հարկ եղև մեզ զնոր տպագրութիւնս այս առանց ընդ հնագոյն օրինակաց բաղդատութեան ի լոյս ընծայել, ուրեք ուրեք միայն զթերութիւնս գրչաց և զվրիպակս ընթերցուածոց ուղղելով ի վերայ նորագոյն գրչագրի և ի վերայ մասանց ինչ Սեբէոսի, որ ի փոխ առեալ յայլ պատմագրաց մերոց յերկասիրութիւնս նոցա հասին ցաւուրս մեր։ Զայսոսիկ

հատուածս առանձինն եդաք վասն համեմատութեան ի յաւելուածս ի վերջ պատմութեան Սեբէոսի։ Այլ և այնպէս տեսցեն ընթերցողք զինչ ինչ տարբերութիւնս ի մէջ երկուց հրատարակութեանց, անմոռաց պահելով զարդիւնսն առաջին տպագրողին մատենիս։

Զբաժանումն ի Դպրութիւնս և ի Գլուխս և զբովանդակութիւնս նոցին թողաք ըստ հին տըպագրին առանց իրիք փոփոխութեան, զի պակասէին ի մերում գրչագրի։ Յանձնէ յաւելաք միայն զքանի մի ծանօթութիւնս մթին բանից կամ զուղղութիւնս ինչ աղաւաղութեանց անփոյթ գրչաց, և զմեկնութիւնս ինչ բառից և պարսիկ անուանց, որոց նշանակութիւն սակաւածանօթ է յարդիս։

Յերից դպրութեանց մատենիս միայն զերրորդն համարիմք լինել Սեբէոսի, որպէս ի վաղուց հետէ ասացեալ է մեր յայլում տեղւոջ։ Առաջինն է Ագաթանգեղոսի անուանեալ արձանագրութիւն, նշխարք հնագոյն պատմագրութեան ազգիս, հաւասար քաղուածոյն Խորենացւոյն ի Մարիբաս Կատինայէ։ Երկրորդն՝ Քրոնիկոն հանեալ ի պատմութեանց Խորենացւոյն և Ասողկայ։ Այլոյ ուրուք թուի լինել հատուածն զՄամիկոնէից ծագմանէ, ոչ ամենևին միաբան Քերթողահօրն. զոր լուեալ հեղինակին ի բերանոյ հրեշտակաց Ճենաց Թագաւորին, եկեալ ոչ ի պա-

լատն արքային Հայոց Խոսրովու, որպէս կարծեն ոմանք, այլ ի դուռն միոյ ի Խոսրովացն Պարսից։

Ցանկացողք առաւելագոյն պատմական ծանօթութեանց և տեղեկութեանց զբովանդակութենէ մատենիս գտցեն զայնս ի ռուս թարգմանութեան մերում սոյն հեղինակութեանս, զոր հրատարակեալ է մեր ի Ս. Պետերբուրգ յամին 1862։

Քերովբէ Րեստէն-Պատկանեան։

1 յունվարի 1879

Ս. Պետերբուրգ։

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Ա.

Եւ եղև ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի զանստարագրել ժամանակ և զնախնի քաջացն ձեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս, զի՞ն յիշատակել զառասպելս, և ի նոյն շարագրելով ասացից զառ ի յապայմն եղելոյ, և ցուցից համառաւտիւք զարդեաց ժամանակացս զաղետիցս վերաբերութեան զամս և զաւուրս հինգ Թագաւորացն յիշատակելով։

Անդ հայելով ի մատեանն Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ, զոր եգիտ դրոշմեալ ի վերայ արձանի ի Մծբին քաղաքի՝ յապարանսն Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն։

Քանզի զսիւնս տաճարին այնորիկ խնդրեալ ի դուռն արքային Պարսից, և բացեալ զաւերածն վասն սեանցն ըստ դիպան արձանագրին դրոշմեալ ի վերայ վիմի զամս և զաւուրս հինգ Թագաւորացն Հայոց և Պարթևաց. յունարէն դըպրութեամբ. զոր իմ գտեալ ի Միջագետս՝ ի նորին աշակերտացն, կամեցայ ձեզ գրուցակարգել. քանզի այսու ունէր վերնագիրն այսպէս։

«Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ՝ առեալ ի դիւանէ արքունի, զոր փոքր մի և ապա յիւրում տեղւոջն տեսցես զպատճէնն [1]։

«Բայց ես նախ առաջին զվէպս յանհեղն արքայ և յարի այրն սկսայց ասել, նախ զնախնեացն պատմութիւնս՝ ուստի եղև սկիզբն ամենայն երկրի շինուածոց լրմանց. և անտի ի սոյն պատուաստելոյ յաւդել զգլուցակարգութեան վէպս հսկայազանցն և զառասպելս ունայնս անհանճար զաւրացն. զոր ի մեծ երկանցն աշտարակին յղութիւն ծնանելով ցրէր ընդ մեծ անապատ անթիւ, որ ի կայս անլուրս ձայնից անդադար ի վերայ առն ընկերի առնոյր սուրն Տիտան. յորում առաջին թագաւորեաց ի վերայ երկրի։

«Եւ Բէլն Տիտանեան ի վեր կարծէր զինքն քան զամենայն ազգս մարդկան՝ զիւրն ոչ ճանաչելով զբնութիւն, այլ զամենայն ազգս մարդկան ի ծառայութիւն իւր կոչէր։ Ապա՛ յայնմ ժամանակի Հայկն Աբեթածին ոչ կամեցաւ հնազանդիլ ի ծառայութիւն Բէլայ արքայի. արհամարհեաց զնա աստուած կոչել. անդ Բէլ ի վերայ Հայկին յարձակեալ մարտիւ։ Իսկ Հայկն արի՝ աղեղամբ հալածեաց զնա։

---

[1] Տես Պատմ. Վարդանայ, տպ. ի Վենետ. եր. 31, 35։

«Արդ՝ այս է Հայկն՝ որ ծնաւ զԱրամանեակ զորդի իւր 'ի Բաբելոն։ Եւ ծնաւ Արամանեակ ուստերս և դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամայիս։ Եւ ծնաւ Արամայիս ուստերս և դըստերս բազումս՝ յորոց անդրանիկն Ամասիա։ Եւ ծնաւ Ամասիա ուստերս և դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Գեղամ։ Եւ ծնաւ Գեղամ ուստերս և դստերս բազումս, յորոց անդրանիկն Հարմա։ Եւ ծնաւ Հարմա ուստերս և դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արամ։ Եւ ծնաւ Արամ ուստերս և դստերս բազումս՝ յորոց անդրանիկն Արայն գեղեցիկ։

«Արդ՝ այս են անուանք ազգածինն արանանդրանկելոցն 'ի Բաբելոն, գնացելոցն ընդ կողմանս հիւսիսոյ յերկիրն Արարադայ։ Զի չուեաց խաղաց գնաց Հայկն 'ի Բաբելոնէ կնաւն և որդւովքն և ամենայն աղխիւն հանդերձ։ Եւ չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ ի տանն որ ի լեռնոտինն, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ հաւրն՝ և եղբարբքն հանդերձ։

«Եւ ապա ետ գնա Հայկն կալուած ժառանգութեան Կադմեայ Թոռին իւրում որդւոյն Արամանեկայ։ Եւ ինքն չուեաց գնաց անտի նա ի հիւսիսակողմն և չոքաւ բնակեցաւ ի բարձրաւանդ դաշտավայրի միոջ. և կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն։

«Իսկ երկիրն ըստ Նմին պատշաճի կոչեցաւ

անուն Հայք՝ որ են հայազամբք հանդերձ։

«Եւ արդ՝ այս Հայկ հզաւր զաւրութեամբ և բարի անձամբ՝ և կորովի աղեղամբ՝ և մարտիկ յոյժ։

«Յայնմ ժամանակի թագաւորեաց ի Բաբելոն որսորդ հսկայ Բէլն Տիտանեան, ճոխն չաստուածացեալ, որոյ հզաւր զաւրութեամբ և սաստիկ յոյժ գեղ պարանոցի իւրոյ։ Եւ էր իշխան ամենայն ազգաց՝ որ սփռեցան ի վերայ երեսաց ամենայն երկրի։ Որոյ արարեալ առ աչաւք կախարդութեամբ հնարս՝ և հրամանս թագաւորականս ամենայն ազգաց. և հպարտութեամբ ամբարտաւանութեան իւրոյ կանգնեաց զպատկերն իւր, և ետ երկրպագանել իբրև աստուծոյ, և զոհս մատուցանել։

«Եւ վաղվաղակի կատարէին ամենայն ազգքն զհրամանս նորա. բայց մի ոմն Հայկ անուն Նահապետ ազգացն ոչ հնազանդեցաւ ի ծառայութիւն նորա, և ոչ կանգնէր ի տան իւրում զպատկեր նորա. և ոչ մեծարէր զնա աստուածաւրէն շքով։

«Եւ էր անուն նորա Հայկ, ընդ որում ծնաւ արքայի Բէլայ ոխութիւն մեծ։ Եւ զաւրաժողով լինի Բէլ արքայ ի Բաբելոն և դիմէ գնայ ի վերայ Հայկայ սպանանել զնա։

«Գայ հասանէ յերկիրն Արարադայ ի տունն՝ որ էր նոցա հայրենի՝ զոր շինեալն էր ի լեռնո-

տին. և Կադմոս փախստական գնաց ի Հարք առ հայր իւր ազդ առնել նմա. և ասէ. «Դիմեալ գայ Բէլ արքայ ի վերայ քո, և եկն եհաս մինչև ի տուն անդր. և ես կնաւ իմով և որդւովք ահաւասիկ կամ փախստական»:

«Առնու Հայկն զԱրամենակ և զԿադմոս զորդի իւր. և զորդիս նոցա և զորդիս եւթանեցունց դստերաց իւրոց, արս հսկայս և նուազունս թուով:

«Եւ ի դիմի հարկանի Բէլայ արքայի. և ոչ կարաց զդէմ ունել բազմութեան արանց հսկայից սպառազինաց:

«Անդ ի դիմի հարկանի Հայկն Բէլայ, և կամեցաւ ըմբռնել զնա Բէլ ի բուռն իւր: Յոյս ետ Հայկն յերեսաց նորա, և գնայր նա փախստական. և Բէլ զհետ նորա երթայր պնդագոյն հանդերձ զինակրաւն իւրով:

«Զտեղի կալաւ Հայկն, և ասէ ցնա. «Զի՞ պնդեալ գաս զհետ իմ. դարձի՛ր անդրէն ի տեղի քո՝ զի մի՛ մեռանիցիս այսաւր ի ձեռաց իմոց. քանզի ո՛չ վրիպի նետ իմ իմիք»: Պատասխանի ետ Բէլ, և ասէ. «Վասն այնորիկ՝ զի մի՛ անկցիս ի ձեռս մանկտւոյ իմոյ և մեռանիցիս. այլ եկ ի ձեռս իմ, և կեա՛ց ի տան իմում խաղաղութեամբ, ունելով ի գործս զմանկունս ի տան իմոյ զօրականս»:

«Պատասխանի ետ նմա Հայկն և ասէ. «Շո՛ւն ես դու և յերամակէ շանց՝ դու և ժողովուրդ քո:

Եւ վասն այնորիկ Թափեցի՛ց իսկ այսաւր ի քեզ զկապարճս իմ»։ Եւ արքայն Տիտանեան սպառազինեալ, և վստահացեալ ի կուռ սպառազինութիւն անձին իւրոյ։

«Եւ Հայկն Աբեթայն մերձենայր և ունէր ի ձեռին իւրում զաղեղն, որպէս հեծան հզաւր մայրափայտեայ։ Եւ Հայկին զտեղի կալեալ պատրաստի ընդդէմ նորա աղեղամբ։

«Եւ կանգնէ զկապարճսն ի գետնոյ ընդ ինքեան յաղեղն[1] սկայաւրէն կամարին, և ընդ գիրկս մտեալ զաւրութեամբ հարկանէ նետիւ զտախտակս երկաթիս, և ընդ պղնձի վահանն ի Թափ անցուցանէ ընդ մսեղէն արձանն յերկիր խարըսխեալ վտարեալ նետն. և վաղվաղակի կործանեալ զաստուածակարծեալ հսկայն. և զաւրք նորա փախստական լինէին։ Եւ նոքա զհետ մտեալ Թափեցին ի Նոցանէ երամակս ձիոց և ջորեաց և ուղտուց։

«Եւ Հայկ դարձաւ ի տեղի իւրն. և չոքաւ կալաւ Հայկն զերկիրն Արարադայ. և բնակեցաւ անդրէն ազգաւ իւրով մինչև ցայժմ։ Եւ ի ժամանակի մահուան իւրոյ ետ զնա կալուած ժառանգութեան Կադմեայ Թոռին իւրում, որդւոյ Արամանեկայ եղբաւր Հարմայի (?)։

«Եւ Արամանեկայ հրամայեաց երթալ ի հիւսիսակողմն՝ ուր ինքն իսկ դադարեաց զառա-

---

[1] Ի ձեռագ. օրինակին՝ յաւղ։

ջինն։ Եւ եղև յետ մահուանն Հայկայ առ Արամենակ զորդիս իւր և զդստերս իւր և զարս նոցա, և զքորս եւթանեսին և զարս նոցա, զուստերս և զդստերս նոցա և զամենայն աղխ իւր։ Եւ չոգաւ բնակեցաւ անդէն յառաջնումն դաշտին, զոր կոչեցին յանուն Հարց իւրեանց՝ Հարք։

«Ապա գնա անտի ևս Արամանեակ ի հիւսիսակողմն և երթեալ իջանէ յերկիր մի խորին դաշտավայր, որ կայ ի մէջ բարձրաբերձ լերանց. և հատանէ անցանէ ընդ մէջ նորա գետ յորդահոսան. որով անցեալ Արամենակ բնակէ անդ, և շինէ զերկիրն կալուած ժառանգութեան իւրոյ՝ զվայրն լեռնակողմն և զառապառ։

«Ձկնի Արամենակայ՝ որդի նորա Արամայիս շինէ իւր ի վերայ գետեզերն տուն բնակութեան, և անուանէ զանունն նորա ըստ անուան իւրոյ Արամայիր։ Եւ որդիք նորա սկսան բազմանալ և լնուլ զերկիրն։

«Եւ շինեցին գաւառք. մեռաւ և Արամայիս, և կալաւ զերկիրն որդի նորա Ամասիա։ Եւ ապա հետ նորա Գեղամ։ Մեռաւ Գեղամ՝ և տիրեաց որդի նորա Հարմայ. ապա որդի նորա Արամ։ Ապա որդի նորա Արայն գեղեցիկ, որով անուն իսկ դաշտին այնորիկ կոչեցաւ յանուն Այրարատ։

«Եւ Շամիրամ կինն Ասորւոց արքային Նինոսի, քանզի լուաւ վասն գեղեցկութեան նորա և կամեցաւ առնել ընդ նմա բարեկամութիւն,

որպէս զի կատարեսցէ զկամս նորա պոռնկու-
թեամբ. քանզի ըստ լրոյ համբաւոյ յոյժ տըռ-
փեալ էր ի վերայ անձին և գեղոյ նորա գեղեց-
կութեանն: «Զի ոչ գտանէր յայնմ ժամանակի
նման նորա այր ոք ամենևին՝ այր պատկերա-
ճոխ. յղէ առ նա հրեշտակս պատարագաւք և կոչէ
զնա առ ինքն ի Նինուէ: Իսկ Արայն ոչ զպա-
տարագն նորա ընկալաւ և ոչ յանձն առնու եր-
թալ ի Նինուէ առ Շամիրամ. ապա առնու զզաւրսն
իւր Շամիրամ, և գնայ ի վերայ նորա ի Հայս:
Գայ հասանէ ի դաշտն Արայի, և տայ պատե-
րազմ ընդ Արայի, հարկանէ զզաւրն, և սպա-
նանէ զԱրայ ի պատերազմին:

«Եւ հրամայէ Շամիրամ տանել զդի նորա ի
վերնատունն ապարանից իւրոց, և ասէ «Ես ա-
սացից աստուածոց լիզուլ զվէրս նորա և կեն-
դանասցի»:

«Իսկ իբրև նեխեցաւ դի նորա ի վերնա-
տանն, հրամայեաց գաղտնի ընկենուլ ի վիհ և
ծածկել: Եւ զարդարէ զմի զոմն ի հոմանեաց իւ-
րոց այր պատշաճող. և համբաւ հանէ զԱրայի
լիզուլ աստուածոցն և յարուցանել: Ունի ի ծա-
ծուկ. և ոչ ումեք ի ծանաւթից նորա ցուցանէ
զնա. և այնպէս հանէ համբաւ Արալեզաց տի-
կինն Շամիրամ [1]:

---

[1] Խորեն. Ա. ժե: Փաւստոս եր. 238:

«Յայնժամ տիրեաց Շամիրամ 'ի վերայ երկրին Հայաստանեայց, և յայնմհետէ Ասորեստանեայց թագաւորքն տիրեցին մինչև ցմեռանելն Սենեքերիմայ. ապա ապստամբեցին յԱսորւոց թագաւորացն ծառայութենէ։

«Եւ տիրէ ի վերայ նոցա Զարեհ որդի որդւոց Արամանեկայ, այր զաւրաւոր և կորովի աղեղամբ. ապա Արմոգ. ապա Սարհանգ. ապա Շաւաշ. ապա Փառնաւազ։

«Սա ծնաւ զԲագամ և զԲագարատ. և Բագարատ ծնաւ զԲիւրատ, և Բիւրատ ծնաւ զԱսպատ [1], և որդիքն Բագարատայ ժառանգեցին զժառանգութիւնս իւրեանց ի կողմանս արևմտից. այսինքն է Անգեղ տուն. վասն զի կոչեցաւ Բագարատ և Անգեղ, զոր ի ժամանակին յայնմիկ ազգ բարբարոսացն աստուած կոչեցին։

«Այս Փառնաւազ հնազանդեալ Նաբուգոդո-

---

[1] Յօրինակս՝ Բագարամ և Բիւրամ. մեզ այսպէս պատշաճ դատեցաւ ուղղել։ Ասպատ է ասպետ, մականուն Բագրատունեաց, զորս անյայտ հեղինակս յորդւոց Արամանեկայ ասէ սերեալ և ոչ 'ի Հրէից։ Յայս իմն ակնարկեն բանք Խորենացւոյն Ա. իբ. «քանզի ասելն ոմանց անհաւաստի մարդոց, ըստ յօժարութեան և ոչ ըստ ճշմարտութեան, 'ի Հայկայ զԹագադիր ազգ լինել Բագրատունեաց։ Վասն որոյ ասեմ. մի՛ այսպիսեաց յիմար բանից հաւանիր՝ զի և ոչ մի շաւիղ կամ ցուցումն գոյ նմանութեան յասացեալսդ՝ որ զարդարութիւն ակնարկէ. զի 'ի բայ բանից և անոճ իմն յաղագս Հայկայ և նմանեացն կակազէ»։

Նոսորայ արքայի ի Բաբելոն։ Եւ ապա յայնմ-
հետէ Բաբելացւոց և Մարաց թագաւորքն տիրե-
ցին մինչև ցԱղեքսանդր Մակեդոնացի, որ զա-
մենայն տիեզերս հնազանդեցոյց ի ծառայու-
թիւն։

«Եւ ծառայեցին Մակեդոնացւոց մինչև
ցապստամբութիւնն Պարթևաց և Մակեդոնացւոց,
և ցհամբարձումն Արշակունեաց թագաւորու-
թեանն։ Քանզի զսոյն ճառէ ժամանակագիրն՝
այդպէս, որպէս առաջիդ կայ։

«Ի Դամասկոսէ ասեն գնացեալ զՄարսեակն
զընդոծինն Աբրահամու փախստական յեալ յհի-
սահակայ, և եկեալ բնակեցաւ առ ոտամբ եր-
կուց լերանցն որ հային հանդէպ մեծի դաշտին
Արայի, յԱրագած կատար և ի Գեղ լեառն։

«Եւ անուանէ զլերինս յանուն իւր. որում
Ազատն կոչեն լեառն։ Եւ լինին նորա երեք որ-
դիք, Փառոխ նա է Եղիազար, և Փառոխա՝ կո-
չեն զտեղի բնակութեանն, և Փառականն դաշտ
որսոց և արշաւանաց նոցին, որ խառնին յազգ
Արամենակայ։

## ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ ՊԱՐԹԵՒԱՑ ՈՐ ԵՂԵՒ Ի ՅԱՅՍ ԺԱՄԱՆԱԿԻ։

«Եւ եղև յետ մահուանն Աղէքսանդրու կայսեր Մակեդոնացւոց, ծառայեցին Պարթևք Մակեդոնացւոց ամս կա։ Քանզի թագաւորեաց Սելևկիոս Նիկանովր ի Բաբելոն ամս լբ։ Անտիոքոս Սոտեր՝ ամս ժթ։ Անտիոքոս Թէոս՝ ամս ժ։

«Եւ յամի մետասաներորդի Անտիոքայ արքայի ապստամբեալ ի բաց կացին Պարթևք ի ծառայութենէ Մակեդոնացւոց։ Եւ թագաւորեաց Արշակ մեծ որդի արքային Թէտալացւոց ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց, որում ամենայն ազգք արևելից և հիւսիսոյ հնազանդեցան ի ծառայութիւն։

«Զուեաց խաղաց գնաց Արշակ արքայն ամենայն զաւրաւքն հանդերձ յարևելից երթալ ի Բաբիլոն, յառաջին թագաւորացն կալուածսն. զի անդ հաստատեսցէ զթագաւորութիւն իւր. եկն եհաս ի Բաբելոն։

«Իսկ Անտիոքոս իբրև ետես՝ զի անչափ բազմութեամբ եկեալ հասեալ էր 'ի վերայ նորա Արշակ արքայն Պարթևաց, այնուհետև ոչ կարացեալ վստահանալ յիւր զաւրացն բազմութիւն ի դիմի հարկանել վիրագին այնմիկ, և խոյս ետ յերեսաց նորա. փախեաւ և գնաց յԱսիաստան։ Եւ թագաւորէ ի վերայ Ասիաստանու ամս ե. և

ապա մի ըստ միոջէ թագաւորեն Մակեդոնացիքն յԱսիաստան ի ժամանակս ինչ։ Եւ Արշակ արքայ հնազանդեցոյց ի ծառայութիւն զԱսորեստանեայս, որ ըստ Անտիոքայ։ Եւ զԲաբելացիս և զՊարսիկս և զՄարս. և զերկիրն Հայոց մինչև ցլեառն մեծ Կապկոհ, և ի յեզր ծովուն մեծի արևմտից. թագաւորէ Արշակ ի Բաբելոն ամս բազումս։

«Եւ եղև յամին հարիւր և տասներորդի չորրորդի Արշակայ արքայի Պարթևաց. ի չորրորդում ամի թագաւորութեան Դեմետրեայ ի վերայ Ասիաստանի և Ասորւոց, մինչ Արշակ արքայ գնաց յարևելս, զաւրաժողով լեալ և Դեմետրիոս չոքաւ կալաւ զԲաբելոն։

«Իբրև ետես Դեմետրիոս, զի այնչափ բազմութեամբ եկն եհաս ի վերայ նորա Արշակ, տեղի ետ նմա և գնաց մինչև ցԱնտիոք. և անդ ճակատեցաւ ընդդէմ Արշակայ ի պատերազմ։ Եւ եղև պատերազմ մեծ առ Անտիոք քաղաքաւ. հարկանեն և սրբաջնջեն առնեն զզաւրն Դեմետրեայ. և ձերբակալ առնեն զԴեմետրիոս. կապէ զնա Արշակ արքայ ոտիւք և ձեռաւք, և առնու գնայ յարևելս ի Բահլ Շահաստան։

«Իբրև ետես Անտիոքոս եղբայր Դեմետրեայ եթէ ըմբռնեցաւ Դեմետրիոս ի ձեռս Արշակայ արքայի. ինքն թագաւորէ ի վերայ Ասորւոց և Ասիաստանի. զաւրաժողով լինի և գնայ ի

Բաբելոն, զկնի տասն ամի։ Ազգ լինի սորին՝ եթէ թագաւորեաց Անտիոքոս եղբայր Դեմետրեայ և եկն ի Բաբելոն։

«Լուծանէ Արշակ զԴեմետրիոս զկնի տասն ամի. և արձակէ առ եղբայրն, որպէս զի խաւսեսցի ինչ առնել նմա. և Դեմետրիոս ոչ գնաց առ եղբայրն իւր ի Բաբելոն, այլ յԱսխաստան անցանէ։ Ապա խաղայ գնայ Արշակ[1] ի Բաբելոն երեքտասան բիւրովք։

«Յամի հարիւրերորդի քսաներորդի ութերորդի թագաւորութեան իւրոյ իբրև մաւտ եղև ի Բաբելոն, անկանի ի վերայ նորա Անտիոքոս յանկարծակի ի ձմեռն ժամանակի՝ ի նեղ վայրի. և ոչ կարեն զաւրել. սպառեն զզաւրն. զարկանեն և ընկենուն զԱնտիոքոս ի խոնարհ և սպանանեն. և ձերբակալ առնեն զՍելևկիոս զորդին Անտիոքայ, զոր ունէր ասէ արքայ ի դրանն իւրում թագաւորին։

«Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին քաղաքի։ Եւ զատուցանէ նմա սահմանս զԱրուաստան առ երկրաւն Տաճկաց և առ երկրաւն Ասորւոց։ Եւ զԿապուտկեայ առ Կիւղիկեաւ՝ մինչև ցեզր ծովուն մեծի արևմտից. և ցհիւսիսոյ կողմանէ ի լեառն մեծ

[1] Ի ձեռ. օրինակիս էր՝ Աշխակ։

հովկաս, որ ձգի ընդ կողմանս արևելից. և անցանէ առ սահմանաւն առ ամուր աշխարհաւն Մարաց. և հասանէ 'ի լեառն Զարասպ. և անցանէ առ նոր Շիրակ երկրաւն։

«Եւ յուղարկէ զնա ի Մրծանայ ընդ յարևմուտս զաւրու մեծաւ եւթանասուն հազարաց սպառազինաց. և մեծամեծ իշխանաւք նախարարաց հազարաց բիւրաւորաց, որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ։ Սմա ընդ առաջ ելանէր Բագարատն Փառազեան յորդւոցն Արամանեկայ նախարար մեծ հանդերձ զաւրու։ Մատուցանէ նմա պատարագ ոսկի և արծաթ. և զարդարէ զնա ի մնդր և ի վակաս. պսակէ զնա ի թագ հայրենի. և նստուցանէ զնա ի վերայ ոսկիապատ ականակուռ գահոյիցն. և տայ նմա զդուստր իւր ի կնութիւն։

«Զսա արար Արշակ արքայ ասպետ Հայաստան երկրին, որ էր իշխան և հրամանատար ամենայն թագաւորութեանն հրամանաց գլուխ, և հայր արքայի, և եղբայր. որում ետ իշխանութիւն տէրութեանն այնորիկ։ Նա կոտորեաց զհսկայսն, որ զաւրաժողով եղեն ի վերայ նորա ի Միջագետս Ասորւոց։

«Եւ այս են իշխանք Պարթևաց, որք թագաւորեցինն զկնի Արշակայ հաւր իւրեանց ի Բահլ Շահաստան յերկիրն Քուշանաց։ Որդիք չորք ասեն լեալ Արշակայ արքայի Պարթևաց. զառա-

ջինն ասեն թագաւորեցոյց Թետալացւոց աշխարհին. զերկրորդն ի վերայ Կիլիկեցւոց. զերրորդն ի վերայ Պարթևաց. զչորրորդն ի Հայաստան աշխարհին։

«Եւ լինին ամենայն ամք Արշակայ կենաց իւրոց ճլ ամ. և թագաւորեաց ամս յիսուն և վեց։ Զկնի նորա թագաւորէ որդի նորա Արշակ ի վերայ Պարթևաց՝ ի Բահլ Շահաստանի յերկիրն Քուշանաց՝ ամս հ։ Ապա որդի նորա Աշնաշ՝ ամս լբ։ Ապա Արշէն՝ ամս իբ։ Ապա Արշաւիր՝ ամս խե։ Ապա Արտաշէս՝ ամս լդ։ Ապա Դարեհ՝ ամս լ։ Ապա Արշակ ամս ժէ։ Ապա Արտաշիր՝ ամս խզ։ Ապա Պերոզ ամս կդ։ Ապա Վաղարշակ՝ ամս ծ։ Ապա Արտաւան՝ ամս լզ։ Ապա լինին ամենայն ամք Պարթևաց տէրութեանն ամք շհզ (շհզ?)։

«Եւ այս են թագաւորք Արշակունիք որք թագաւորեցին Հայաստան երկրի զկնի Արշակայ մեծի։

Արդ՝ թագաւորէ Արշակ փոքր կոչեցեալ՝ յամի հարիւրերորդի քսան և իններորդի թագաւորութեան Արշակայ հաւր իւրոյ՝ ի վերայ Հայաստան երկրի՝ ի Մրծուին քաղաքի եղբարբ իւրով Վաղարշակաւ՝ զոր թագաւորեցոյց Հայաստան աշխարհիս՝ ամս խբ։ Ապա Արշակ՝ ամս ժգ։ Ապա Արտաշէս՝ ամս իե։ Ապա Արտաւան և Արշաւիր, ամս ժբ։ Ապա Արշակ որդի Արշաւրի՝ ամս լէ։ Ապա Երուանդ որդի Արշակայ՝ ամս իա։

Ապա Արտաշէս եղբայր նորին՝ ամս ծբ։ Ապա Տիրան որդի Արտաշեսի՝ ամս իբ։ Ապա Տիգրան եղբայր նորին՝ ամս խբ։ Ապա Արշամ՝ ամս ի։ Ապա Աբգար որդի Արշամայ՝ ամս լը։ Ապա Սանատրուկ քեռորդի Աբգարու՝ ամս լ։ Ապա Արտաշէս որդի Սանատրկոյ ամս՝ խա։ Ապա Արտաւազդ և ապա Տիգրան, որդիք Արտաշիսի՝ ամս իդ։ Ապա Վաղարշ որդի Տիգրանայ՝ ամս ի։ Ապա քաջն Խոսրով որդի Վաղարշու՝ ամս խը։ Ապա մեծն Տրդատէս որդի Խոսրովայ՝ ամս ծգ։ Ապա Խոսրով որդի Տրդատայ՝ ամս թ։ Տիրան որդի Խոսրովայ՝ ամս խը։ Արշակ որդի Տիրանայ ամս է։ Շապուհ արքայ Պարսից՝ ամս հգ։ Պապ որդի Արշակայ՝ ամս է։

---

## ԴՊՐՈՒԹԻՒՆ Բ.

*Արդ՝ թէ պիտոյ է քեզ ով ընթերցասէր, երկրորդեցից ի պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ և Ստեփաննոսի Տարաւնացւոյ հաւաստի և ճշմարիտ մատենագրաց՝ զորդի ի հաւրէ ճանաչել։*

---

Յետ մահուանն Աղէքսանդրու՝ թագաւորէ Արշակ քաջ ի Բահլ Շահաստանի՝ յերկիրն Քուշանաց. կեցեալ ամս ճլ, թագաւորեաց ամս ծէ։ Յետ նորա որդի նորա Արտաշիր՝ ամս լա։ Յետ նորա թագաւորէ նորին որդի Արշակ՝ որ կոչեցաւ մեծ՝ ամս ծբ։

Սա թագաւորեցոյց զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց։ Արդ՝ այսպէս զատուցեալ երևէին երկու ցեղքն թագաւորութեանց՝ Պարսից և Հայոց։

Արշակ քաջ նախնեաց երկուց ցեղից՝ թագաւորեցելոյ Պահլաւկանին և Արշակունւոյն, ամենայն քաջութեամբ թագաւորեաց ամս ծէ։ Յետ որոյ որդիքն զատուցեալք թագաւորք Պարսից. Արշակ մեծ՝ ամս ծբ։ Արշական՝ ամս լ։ Ար-

շանակ՝ ամս լբ։ Արշէս՝ ամս ի։ Արշաւիր՝ ամս խզ։ Արտաշէս՝ ամս լա։ Դարեհ՝ ամս լ։ Արշակ՝ ամս ժթ։ Արտաշէս՝ ամս ի։ Պերոզ՝ ամս լգ։ Վաղարշակ՝ ամս ծ։ Արտաւան՝ ամս լզ։

Զսա սպանեալ Ստահրացւոյն Արտաշրի՝ որդւոյ Սասանայ, եբարձ զտէրութիւն Պահլաւաց։ Սկսեալ յերեսուն ամի թագաւորութեանն Փիլեդելփոս Պտղոմէոսի, կալեալ նոցա ընդ ամենայն ամս՝ նծէ։

Յետ որոյ նուաճեալ Ստարհացւոյն Արտաշրի որդւոյ Սասանայ զամենայն արիս և զանարիս, և զբազումս ի նոյն ազգէ թագաւորութեան Պարթևաց և Պահլաւկաց՝ թագաւորէ ինքն։ Եւ յետ նորա պայազատք նորին։ Զնոյն ձև աւրինադրէն զՄամիկոնէիցն սակս ազգաց զնեղութիւնն։ Քանզի ոչ են սոքա որդիք ազգածնինն Արամանեկայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ յամս Արտաւանայ արքայի Պարթևաց և մեծին Խոսրովու արքայի Հայոց. որպէս լուայ յառնէն մեծէ՝ որ եկեալ էր հրեշտակութեամբ ի Ճենաց թագաւորէն առ արքայն Խոսրով, յոր իմ հարցեալ ի դրանն արքունի եթէ՝ «Ազգ մի մեծ ի Հայաստան երկրի կայ՝ զորմէ ասեն եթէ ի ձերմէ աշխարհէն գնացեալ են»։ Եւ նա ասաց ինձ. «Ասեն, ասէ, գուսանք և ի մերում աշխարհին յերգս իւրեանց, զՄամիկն և զԿոնակն արս երկուս լեալ քաջս և գլխաւոր եղբարս հարազատս,

որդիք Կառնամայ նախարարին՝ որ էր երկրորդ ի թագաւորութեանն Ճենաստանի։ Որոյ յետ մահուանն առնս այսորիկ, առ զկին սորին թագաւորն նոցին ի կնութիւն։ Եւ եղև ի նմանէ որդի՝ որ զկնի մահուան հաւր իւրոյ յաջորդեալ նստաւ յաթոռ հայրենի թագաւորութեանն։ Եւ նոքա երկու եղբայրք նորա ի մաւրէ, և ոչ ի հաւրէ, ապստամբեալ ի բաց կացին ի նմանէ. և միաբանեալ ընդ ինքեանս զմասն մի ի նախարարացն և ի զաւրացն՝ առնեն ուխտ միաբանութեան։ Որոց խորհեալ խորհուրդ չարութեան սպանանել զեղբայրն իւրեանց՝ զթագաւոր աշխարհին Ճենբակուր, և առնուլ զթագաւորութիւն նորա։

Եւ զաւրաժողով լինէին Մամիկն և Կոնակն ի վերայ նորա ի միում տեղւոջ աշխարհին իւրեանց, և բաժանի զաւր աշխարհին յերկուս։ Ազգ լինի Ճենբակուրի. գումարէ և նա զզաւրս իւրոյ կողմանն՝ և գնայ ի վերայ նոցա ի պատերազմ։ Եւ յարձակին ի վերայ միմեանց՝ հարկանեն սրով սուսերի, և սպառեն զզաւրն ապստամբական։

Փախստական լեալ Մամիկն և Կոնակն գնան առ արքայն Արշակունի՝ որ նստէր ի Բահլ Շահաստանի՝ յերկիրն Քուշանաց։ Եւ էր խաղաղութիւն ի մէջ երկոցունց թագաւորութեանցն այնոցիկ։

Յայնժամ մեծաւ աղերսիւ խնդրեաց զնոսա Ճենբակուրի՝ յարքայէն Պարթևաց. «Զի բարձցէ ի միջոյ. ապա թէ ո՛չ՝ լուծցի ուխտ խաղաղութեանն՝ որ ի միջի մերում»: Իսկ նորա խնայեալ յարմն, ո՛չ ետ զնոսա ի ձեռն նորա, այլ գրէ առ նա սիրով. «Անդրէն ուխտ խաղաղութեան մերոյ, ասէ, հաստատուն կացցէ ի միջի մերում, զի երդուեալ եմ առ նոսա զի նոքա մի՛ մեռցին, այլ ետու տանել զնոսա ի մուտս արևու և յեզր երկրի՝ ի տեղին յայն, որ արեգակն ի մայրն մտանէ»:

Յայնժամ հրամայէ արքայն Պարթևաց զաւրաց իւրոց տանել զնոսա զգուշութեամբ մեծաւ՝ կնաւ և որդւովքն իւրեանց և ամենայն աղխիւն իւրեանց յերկիրն Հայոց առ ազգական իւր արքայն Արշակունի՝ որ էր թագաւոր Հայաստան երկրին, ուր և սերեալ բազմացան յոյժ, և եղեն յազգ մեծ ի Մամիկոնայ և ի Կոնակայ. յայսմանէ այն է սպարապետ:

Եւ եղև յետ մահուանն Արտևանայ՝ որդւոյ Վաղարշու արքային Պարթևաց, թագաւորեաց Արտաշիր որդի Սասանայ միահեծեան տէրութեամբ ի վերայ Բաբելացւոց, Ասորւոց և Մարաց և Պարսից և Պարթևաց, ամս ծ:

Յամի երրորդի Եղիանոսի կայսեր, և յամս լ երորդի ա մեծի Խոսրովայ արքային Հայոց՝ փոփոխումն թագաւորութեանն այսորիկ լեալ: Եւ

էր Խոսրով՝ լա ամ։ Եղիանոս՝ երրորդն. Արտաշիր՝ զառաջինն։

Յամի լ երորդի չորրորդի մեծին Խոսրովայ, և չորրորդ ամի արքային Պարսից Արտաշրի՝ թագաւորէ Տերենտիանոս ամիսս վեց. քանզի փութանակի վաղճանի։

Յամի լե երորդի Խոսրովայ արքայի. և ի հինգերորդ ամի Արտաշրի Պարսից արքայի՝ թագաւորէ Պրոպոս ամս զ։ Խոսրով՝ լե։ Արտաշիր ե։ Պրոպոս զառաջինն։

Եւ եղև յամին խա երորդի մեծին Խոսրովայ. և ի ժա ամի Արտաշրի՝ թագաւորէ Յունաց Կարոս՝ հանդերձ որդւովքն իւրովք Կարինաւ և Նումերիանոսիւ՝ ամս է։ Խոսրով՝ խա։ Արտաշիր՝ ժա։ Կարոս զառաջինն։

Յամի խը երորդի Խոսրովայ, ժը Արտաշրի. մինչ արքայ Խոսրով ի Միջագետս էր, Կարոս կայսր գումարէ ամբոխ զաւրաց բազմաց, և դիմէ ի վերայ արքային Խոսրովայ. անտի աճապարեալ ընդ դէմ նորա ելանէ (Կոոնակ սպարապետ մեծին Խոսրովու հաւրն Տրդատայ։ Ասեն զմանէ յերկարեալ զամս կենացն ճկ և ունել ի ժամ մահուանն) զհերս և զաչս և զլսելիս և զզաւրութիւնն մանկութեանն [1]։

---

[1] Սամուէլ Անեցի. «Կարոսի վախճանելն ի Միջագետս. Նումերիանոսի առ նովաւ լինէր, սպանանել ի

Եւ ապա (ժամ) եղև պատերազմ մեծ ի մէջ Խառանու և Ուրհայի. հարկանեն և վանեն զզաւրն Յունաց. և մեռանի Կարոս ի պատերազմին հանդերձ միով որդւովն Կարինոսիւ։ Եւ ի նմին ամի թագաւորէ Յունաց Դիոկղետիանոս ամս իը։ Խոսրով՝ խը։ Արտաշիր՝ ժը։ Դիոկղետիանոս զառաջինն։

Յամի ի երորդի առաջներորդի Արտաշրի Պարսից արքային ի չորրորդում ամի Դիոկղետիանոսի կայսեր՝ մեռանի քաջն Խոսրով ի վատանուն Անակայ։ Եւ տիրէ ի վերայ աշխարհիս Հայոց Արտաշիր արքայ Պարսից ամս ժա։ Դիոկղետիանոս՝ զչորրորդն։

Յամին լ երորդի Արտաշրի, հնգետասաներորդի Դիոկղետիանոսի՝ կայսերակերպ շքեղութեամբ Տրդատիոս ելանէ ախոյեան ընդդէմ արքային Գթաց։ Եւ անդէն ձերբակալ արարեալ, զախոյեան անարի զթագաւորն Գթաց՝ ածեալ կացուցանէ յանդիման կայսերն Դիոկղետիանոսի.

---

թրակ, և Կարինոս նոյնպէս ի Կորնակայ պատերազմին։ Կորնակ սպարապետ մեծին Խոսրովայ հաւրն Տրդատայ, ասեն, յերկարեալ զամս կենացն ամս ճկ, և ունել ի ժամ մահուան զաչս և զլսելիս և զհերս և զատամունս և զզաւրութիւն մարմնոյ մանկութեան։ Սա եհար զԿարոս կայսր և սպանաւ Կարոս որդւովն իւրով ի պատերազմին»։

և անդէն ի նմին ամի թագաւորեցուցանէ Դիոկղետիանոս զՏրդատ ի վերայ աշխարհիս Հայոց։ Գումարէ ի ձեռս սորա զաւրս բազումս, և արձակէ յիւրական իշխանութիւն աշխարհին Հայոց։ Որ տիրէ ամենայն քաջութեամբ և բարեպաշտութեամբ ամս հ։ Եւ է այսպէս. Արտաշիր՝ լբ։ Դիոկղետիանոս՝ ժե։ Տրդատէս զառաջինն։

Յամին թ երորդի Տրդատայ արքային Հայոց՝ թագաւորէ 'ի վերայ Յունաց աշխարհին Կոստանդիանոս. որ շինեաց զԲիւզանդիա ամս թ։ Արտաշիր՝ գխ։ Տրդատիոս իններորդ։ Կոստանդիանոս զառաջինն։

Յամին խթ երորդի Արտաշրի արքային Պարսից. և ժթ ամ Տրդատայ արքային Հայոց՝ թագաւորէ Շապուհ որդի Արտաշրի ի վերայ աշխարհին Պարսից ամս հգ։ (և ի սոյն ամի վախճանի կայսրն Յունաց Մաքսիմիանոս, և թագաւորէ Գալիանոս՝ ամս ժը և տայ պատերազմ ընդ Շապհոյ որդւոյ Արտաշրի ի Միջագետս ի Խառան. և լինի անդ կոտորած մեծ, մինչև ի նեղ անկանել զաւուրն Պարսից յերկիրն Ուրհայու. և տեսեալ Շապուհ զպարտութիւն իւր զաւրուն, գիջանի առնել խաղաղութիւն ընդ կայսեր. և նա առեալ զգանձս և զաւարս բազումս դառնայ ի տեղի իւր)։ Տրդատէս ի։ Մաքսիմիանոս և Գալիանոս՝ զերկրորդն։ Շապուհ զառաջինն։

Յամին լէ երորդի Տրդատայ արքային՝ ժը

երորդի Շապհոյ արքայի՝ թագաւորէ Յունաց Մաքսիմիանոս որդի Մաքսիմիանոսի՝ ամս ժգ։ Տրդատէս՝ լէ։ Շապուհ՝ ժը։ Մաքսիմիանոս զառաջինն։

Յամին ծ երորդի Տրդատայ արքայի՝ թագաւորէ Յունաց Կոստանդէս՝ ամս ժէ։ Տրդատէս՝ ծ։ Շապուհ՝ լա։ Կոստանդէս զառաջինն։

Յամին կէ երորդի Տրդատայ արքային Հայոց. խը ամի Շապհոյ արքային Պարսից՝ թագաւորէ Կոստանդիանոս որդի Կոստանդեայ ամս լբ։ Տրդատ՝ կէ։ Շապուհ՝ խը։ Կոստանդիանոս զառաջինն։

Յամին ծբ երորդի Շապհոյ արքային Պարսից, և երորդի ամի բարեպաշտին Կոստանդիանոսի կայսեր՝ վաղճանի երանելին Տրդատէս. և թագաւորէ Խոսրով որդի նորա ամս ժէ։ Շապուհ՝ ծբ։ Կոստանդիանոս՝ և երորդն։ Խոսրով զառաջինն։

Յամին կթ երորդի Շապհոյ արքային Պարսից, իբ Կոստանդիանոսի կայսեր՝ թագաւորէ ի վերայ Հայոց Տիրանն որդի Խոսրովայ՝ ամս ժբ. Շապուհ կթ։ Կոստանդիանոս՝ իբ։ Տիրան զառաջինն։

Յամի իէ երորդի Կոստանդիանոսի կայսեր. ի զ ամի Տիրանայ արքայի Հայոց՝ թագաւորէ Ներսէհ որդի Շապհոյ ի վերայ Պարսից ամս թ։ Կոստանդիանոս՝ իէ։ Տիրան՝ զ։ Ներսէհ զառաջինն։

Յամի ժբ երորդի Տիրանայ արքայի Հայոց՝ Թագաւորեն Կոստանդիաս և Կոստաս՝ որդիք Կոստանդի բարեպաշտի՝ ամս ժդ։ Տիրան ամս՝ ժբ։ Ներսէհ՝ է։ Կոստանդիաս և Կոստաս զառաջինն։

Յամին ժբ երորդի Տիրանայ, և է երորդ ամի Ներսէհի արքային Պարսից, և ա ամի Կոստանդի և Կոստասայ՝ որդւոց Կոստանդիանոսի բարեպաշտի Հռովմայ՝ եկն ի վերայ նորա ի Բասեան գաւառի ի գեաւղն Յոսխայ՝ մինչ դարձուցանել նմա զՏիրան արքայ ամենայն գերութեամբն հանդերձ. և զորդի նորա Արշակ Թագաւորեցուցանել և արձակել ի Հայս։ Ներսէհ զութերորդն։ Կոստանդիաս և Կոստաս՝ զբ։ Արշակ զառաջինն։

Յամի չորրորդի Կոստանդեայ և Կոստասու, և յերրորդի ամի Արշակայ՝ Թագաւորեաց Պարսից Որմազդ որդի Շապհոյ ամս դ։ Կոստանդիաս և Կոստաս՝ դ։ Որմազդ զառաջինն։

Յամի զ երորդի Արշակայ արքային Հայոց՝ Թագաւորէ ի վերայ Պարսից՝ Շապուհ որդի Որմազդայ՝ ամս հ։ Կոստանդիաս և Կոստաս՝ է երորդն։ Արշակ՝ զ երորդն։ Շապուհ զառաջինն։

Յամի թ և ժ երորդի Շապհոյ արքայի Պարսից, ի երորդի չորրորդի ամի Արշակայ արքային Հայոց՝ Թագաւորէ Յունաց Յուլիանոս՝ ամս բ։ Արշակ՝ իդ։ Շապուհ՝ ժթ։ Յուլիանոս նզովածն զառաջինն։ Սա որդի է քեռ մեծին Կոստանդի-

անոսի, թողեալ զքրիստոնէութիւնն և եղև կռապաշտ։ Ի նոյն աւուրս երանելին Աթանաս հալածեցաւ յԱրիանոսացն՝ զոր Սոկրատն պատմէ, ի սուրբն Կոստանդիանոսէ սկսանի և մինչ ի փոքր Թէոդոսն զանսրբոց և զսրբոց գործքն և զհայրապետացն զուղղափառութիւնս։ Յուլիանոս՝ և Գաղիանոս՝, որդիք Դաղմատիոսի ումեծն, մնացին որբ ի մէկ հաւրէ, և ոչ ի մաւրէ, զոր սնոյց Կոստանդ բարեպաշտն. յետոյ եղեն կռապաշտ։

Կոստի քոյր թագաւորին Կոստանդէ, կին Լիկիանէ թագաւորին՝ որ ի բռնազբաւսելն մեռաւ։

Յամին իզ երրորդի Արշակայ թագաւորին Հայոց և ի իա երրորդ ամի Շապուհ արքային Պարսից՝ թագաւորէ Վաղենտիանոս և Վաղէս՝ ամս ժզ. Արշակ՝ իզ։ Շապուհ իա։ Վաղենտիանոս և Վաղէս զառաջինն։

Յամին լդ երրորդի Շապհոյ արքային Պարսից, լթ ամի Արշակայ արքային Հայոց՝ թագաւորէ Յունաց Գրատիանոս զառաջինն։

Յամի խդ երրորդի Շապհոյ արքային Պարսից և Յուլիանոսի պղծոյ, ըմբռնի Արշակ Հայոց արքայ ի Շապհոյ արքայէն Պարսից։ Եւ տիրէ Շապուհ ի վերայ Հայոց ամս ժբ սրով և հրով և դերութեամբ։ Ապա թագաւորէ Յունաց Թէոդոս՝ ամս ժթ։ Շապուհ ծա, ի տէրութեան (ի վերայ

Հայոց) զերկոտասաներորդն։ Թէոդոսն մեծ զառաջինն։

Յամին ծզ երորդի Շապհոյ արքային Պարսից, և ի զ երորդի ամի թագաւորութեանն Թէոդոսի մեծի, թագաւորեցոյց Թէոդոս զՊապ որդի Արշակայ ի վերայ աշխարհին Հայոց, տիրէ ամս ժզ։ Շապուհ՝ ծզ։ Թէոդոս՝ զ։ Պապ զառաջինն։

Յամի կթ երորդի Շապհոյ արքային Պարսից, ժթ երորդի Թէոդոսի մեծի՝ թագաւորէ ի վերայ Հայոց Վարազդատ՝ ամս զ։ Շապուհ՝ կթ։ Վարազդատ զառաջինն։

Յամի հ երորդի Շապհոյ արքայի Պարսից, երկրորդ ամի Վարազդատայ արքայի Հայոց՝ թագաւորէ Յունաց Արկադէոս որդի Թէոդոսի ամս ժթ։ Շապուհ՝ հ։ Վարազդատ զերկրորդն։ Արկադէոս զառաջինն։

Յամի ե երորդի Արկադեայ կայսեր՝ ի զ երորդի Վարազդատայ արքայի Հայոց՝ թագաւորէ Պարսից Արտաշիր որդի Շապհոյ՝ ամս դ։ Արկադէոս՝ ե։ Վարազդատ՝ զ։ Արտաշիր զառաջինն։

Յամի զ երորդի Արկադեայ կայսեր, յերկրորդի ամի Արտաշրի արքային Պարսից՝ թագաւորեն ի վերայ Հայոց Արշակ և Վաղարշակ՝ ամս ե։ Արկադէոս՝ զ։ Արտաշիր՝ բ։ Արշակ և Վաղարշակ զառաջինն։

Ապա թագաւորէ Պարսից Վռամ ամս ժա։

Արկադէոս ամս թ։ Արշակ և Վաղարշակ՝ դ։ Վռամ զառաջինն։

Յամի երկրորդի Վռամայ, մետասաներորդի ամի Արկադեայ կայսեր՝ թագաւորէ ի վերայ Հայոց Խոսրով ոմն հրամանաւ Պարսից արքային՝ ամս գ։ Արկադէոս՝ ժա։ Խոսրով զառաջինն։

Յամի ժդ երրորդի Արկադեայ կայսեր, և ի գ երրորդի ամի Վռամայ Պարսից արքային՝ թագաւորէ Հայոց Վռամշապուհ արքայ ամս ը։ Արկադէոս՝ ժդ։ Վռամ՝ գ երրորդն։ Վռամշապուհ զառաջինն։

Յամին ժա երրորդի Վռամայ Պարսից արքային՝ թագաւորէ Յունաց Ոնորիոս՝ ամս իբ։ Վռամշապուհ է։ Յազկերտ զառաջինն։

Յամի երկրորդի Յազկերտի՝ որդւոյ Վռամայ, և յամի երկրորդի Ոնորեայ կայսեր բարձաւ թագաւորութիւնն Հայոց՝ որ տևեաց ամս նե։ Եւ վաղճանեցաւ և վճարեցաւ։

---

Եւ արդ՝ երկակի կանոնաւ զՊարսից և զՅունաց համատարելով նշանակեցից զթագաւորութեան ժամանակն։

Արդ՝ թագաւորէ Պարսից Յազկերտ ամս իա։ Եւ Ոնորիոս թագաւորէ Յունաց ամս իբ։ Յազկերտ զառաջինն։ Եւ Ոնորիոս զառաջինն.

Յամի ի երրորդի երկրորդի Ոնորեայ կայսեր՝

թագաւորէ Վռամ որդի Յազկերտի՝ ամս իբ։ Եւ յամի երկրորդի Վռամայ՝ թագաւորէ Յունաց Թէոդոս ամս իբ։ Եւ ի՛նորիոս՝ իբ։ Վռամ՝ բ։ Թէոդոս զառաջինն։

Յամի ի երորդի Թէոդոսի փոքու՝ թագաւորէ Պարսից Յազկերտ՝ որդի Վռամայ, ամս ժթ։ Եւ յամի Յազկերտի թագաւորէ Յունաց Կոստանդիաս՝ ամս ա։ Յազկերտ զառաջինն։

Յամի երկրորդի Յազկերտի՝ թագաւորէ Յունաց Վաղենտիանոս՝ ամս լ։ Յազկերտ զերկրորդն։ Վաղենտիանոս զառաջինն։

Յամի ժը երորդի Վաղենտիանոսի կայսեր՝ թագաւորէ Պարսից Վաղարշ որդի Յազկերտի՝ ամս դ։ Վաղենտիանոս՝ ժը։ Վաղարշ զառաջինն։

Յամի ի երորդի երկրորդի Վաղենտիանոսի կայսեր, թագաւորէ Պարսից Պերոզ՝ ամս խը։ Վաղենտիանոս՝ իբ։ Պերոզ զառաջինն։

Յամի ժ երորդի Պերոզի՝ թագաւորէ Յունաց Նարկիսոս ամս գ։ Պերոզ՝ ժ։ Նարկիսոս զառաջինն։

Յամի ժէ երորդի Պերոզի արքայի՝ թագաւորէ Յունաց Վռափնոս՝ ամս գ։ Պերոզ ժէ։ Վըռափնոս զառաջինն։

Յամի ի երորդի Պերոզի՝ թագաւորէ Յունաց Մարկիանոս ամս ե։ Պերոզ՝ ի։ Մարկիանոս զառաջինն։

Յամի իե երորդի Պերոզի՝ Թագաւորէ Լևոն զառաջինն։ Յամին լ երորդի Պերոզի Թագաւորէ Յունաց Անթիմոս՝. ամս գ։ Պերոզ՝ լա։ Անթիմոս զառաջինն։

Յամի խ և չորրորդի Պերոզի՝ Թագաւորէ Յունաց Ոլիմպոսս՝ ամ մի։ Եւ ի միւսում ամի միւս Զենոն՝ ամ մի։ Եւ ի խզ երորդին Պերոզի՝ Թագաւորէ Զենոն ի վերայ Յունաց՝ ամս ժէ։ Պերոզ՝ խզ։ Զենոն զառաջինն։

Յամի չորրորդի Զենոնի՝ Թագաւորէ Պարսից Զամասպ՝ ը։ Զենոն ի վերայ Յունաց զչորրորդն։ Զամասպ զառաջինն։

Եւ ի վերայ ե երորդի ամի Զենոնի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Կաւատ՝ ամս խա։ Զենոն՝ գ։ Կաւատ զառաջինն։

Յամի ժգ երորդի Կաւատայ՝ Թագաւորէ Յունաց Անաստաս՝ ամս խէ։ Կաւատ՝ զժգ։ Անաստաս զառաջինն։

Յամի խ երորդի Կաւատայ՝ Թագաւորէ Յունաց Յուստիանոս ամս լը։ Կաւատ՝ զխ։ Յուստիանոս զառաջինն։

Յամի երրորդի Յուստիանոսի կայսեր՝ Թագաւորէ Խոսրով որդի Կաւատայ՝ ամս խէ։ Յուստիանոս զերրորդն։ Խոսրով զառաջինն։

Յերեսուն և եօթն ամի Խոսրովայ՝ Թագաւորէ Յունաց Յուստիանոս՝ ամս ժբ։ Խոսրով լէ։ Յուստիանոս զառաջինն։

*Յամի ժբ երորդի Յուստինոսի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Որմիզդ որդի Խոսրովայ ամս ժբ։ Յուստինոս՝ ժբ։ Որմիզդ զառաջինն։*

*Յամի երկրորդի Որմզդի՝ Թագաւորէ Յունաց Տիբերոս՝ ամս գ։ Ոզմիզդ զերկրորդն։ Տիբերոս զառաջինն։*

*Ի հինգերորդի ամի Որմզդի՝ Թագաւորէ Յունաց Մաւրիկ՝ ամս իա։ Որմիզդ՝ ե։ Մաւրիկ զառաջինն։*

*Յամի է երորդի Մաւրկայ կայսեր՝ Թագաւորէ Պարսից Խոսրով որդի Որմզդի՝ ամս լէ։ Մաւրիկ զէ երորդն։ Խոսրով զառաջինն։*

*Յամի ժդ երորդի Խոսրովայ՝ Թագաւորէ Յունաց Փոկաս՝ ամս ը։ Խոսրով ժդ։ Փոկաս զառաջինն։*

*Յամի ի երորդի Խոսրովայ Պարսից արքային՝ Թագաւորէ Յունաց Երակղոս՝ որդի Երակղի, ամս լ։ Խոսրով իբ։ Երակղոս զառաջինն։*

*Յամի ժէ երորդի Երակղի կայսեր՝ Թագաւորէ Պարսից Կաւատ, որդի Խոսրովայ ամս ա։ Երակղոս՝ ժէ։ Կաւատ զառաջինն։*

*Ապա Արտաշիր ամս գ։ Երակղոս ամս ի։ Արտաշիր զառաջինն։*

*Ապա Բոր Բամբիշն, դուստր Խոսրովայ՝ ամս բ։ Երակղոս իա։ Բամբիշ զառաջինն։*

*Ապա Յազկերտ ամս ի։ Երակղոս իգ։ Յազկերտ՝ զառաջինն։*

Յամի իդ երրորդի երանելւոյն Երակղի կայսեր, և յերկրորդ ամի՝ միաբանեալ Պարսից արքայի ընդ Իսմայէլացիսն, (որ ելին) արտաքս ի Սինէ անապատէ՝ հրամանաւ Աստուծոյ առնել անապատ միանգամայն զամենայն երկիր։ Երակղոս իդ։ Յազկերտ զերկրորդն։ Ամռ, արքայ Իսմայէլի, զառաջինն։

Բայց զամս եկամտիցն և ծառայիցն թագաւորելոցն, որպէս Խոռեմայն և զԽոռոխ Որմզդին և Խոսրովայն և զՈրմիզդն՝ որք բռնութեամբ կալան զթագաւորութիւն։ Եւ էր որ ընդ պատառել ազգացն հակառակութեամբ ի սոյնս յաւելեալ կարգեցից թիւ. որպէս զկէս ամին Խոռեմայ ի կէս ամին Կաւատայ. յաւել ևս ասացից ամ մի։

Յամի գ երրորդի Պարսից արքայի Յազկերտի՝ վախճանի Երանելին Երակղէս, և թագաւորեն որդիք նորա Կոստանդին և Երակղակ։ Ի նմին ամի մեռաւ Կոստանդին դաւեալ ի մաւրէն։ Եւ թագաւորէ Երակղակ։ Դարձեալ փոխեցաւ Երակղակ, և թագաւորէ Կոստոս որդի Կոստանդեայ՝ որ կոչեցաւ յանուն հաւր իւրոյ Կոստանդին։ Յազկերտ է երրորդ։ Կոստաս զառաջինն։

Եւ թագաւորեաց Յազկերտ ի վերայ աշխարհին Պարսից ամս ի։ Յազկերտ՝ ի։ Կոստանդին՝ ժա։ Արքայն Իսմայէլի թ։

Յերկոտասան ամի Կոստանդի, և ի ի երորդ ամի Իսմայէլացւոց տէրութեանն՝ բարձաւ տէրութիւնն Պարսից՝ որ կալաւ շլբ ամ։

---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## Ի ՀԵՐԱԿԼՆ

---

## ՆԱԽԵՐԳԱՆՔ

*Եւ եղև ի նուազիլ ժամանակաց տէրութեանն Արշակունեաց ի Հայաստան աշխարհի, ի բառնալ տէրութեանն Վռամշապուհ արքայի՝ տիրէ ի վերայ սորա ազգն Կարքեդովմայեցի իշխանութեանն, խորհուրդ ի ձեռն առեալ ահեղ և ահագին՝ հանդերձ միաբանութեամբ դառնաշունչ և մեծամեծ քաղդէիցն, և ամենայն գլխաւոր նախարարաւքն թագաւորութեան իւրոյ՝ բառնալ ի Հայաստան աշխարհէ զբարեպաշտութեան պըտուղս։ Ուստի ոչինչ աւգտեցաւ, այլ յոյժ վնասեցաւ, և բարեպաշտութիւնն ևս քան զևս ծաղկեալ պայծառացաւ։*

*Արդ՝ զժամանակս թագաւորութեանն չարագործին Յազկերտի. և եթէ որպէս նա կամէր զաստուածայինն եղծանել կարգս։ Եւ կամ որպէս*

քաջ նախարարացն Հայոց և նախանձաւորն Աստուծոյ նահապետն Մամիկոնէից տանն՝ կարմիրն կոչեցեալ Վարդան, հանդերձ միադունդ սպառազէն նիզակակից ընկերաւքն և զաւրաւքն իւրեանց կազմեալ զինեցան ի պատերազմ, առեալ ի ձեռն զվահանն հաւատոյ, և զգեցեալ իբրև զզրահ ամրութեան զնախանձն աստուածային բանին. գոգցես թէ առաջի աչաց իսկ ականատես դէմ յանդիման տեսանելով զ'ի վերուստ առաքեալ նոցա զպսակն։ Վասն որոյ արհամարհեալ զմահ, և առաւել լաւ համարեալ մեռանել[1] ի վերայ աստուածային պողոտային։ Եթէ՝ որպէս ի վերայ նոցա էին զաւրքն պարսիկ սաստիկ բռնութեամբ, և կամ՝ որպէս ի դիմի հարեալ զիւրեանց կատարեցին զնահատակութիւն։ Եւ կամ՝ որպէս ի ձեռս հեթանոսաց ըմբռնեալ սուրբ վկայքն Քրիստոսի՝ կատարեցին զնահատակութիւնս իւրեանց յԱպր Շահր մերձ ի Նիւշապուհ քաղաքի, ի տեղւոջն՝ որ կոչի Թէարքունի։ Այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ. որպէս ցուցանէ նոյն իսկ պատմութիւնն։

Բայց զայն ամենայն՝ որ ի Պերոզի ժամանակն եղեալ չարութիւն, և զառ ի Խոսրովայ զապստամբութիւն զՎարդանայ, և զզաւրացն

---

[1] Այսպէս ի ձեռագ. օրինակիս, իսկ ի տպ. էր՝ տեսանել։

Պարսից զապստամբելն ի յՈրմզդիէ. զմահն Որմզդայի և զԹագաւորելն Խոսրովայ. զմահն Մաւրկայ և զԹագաւորելն Փոկասայ. զառնուլն Եգիպտոսի. զկոտորածն Աղէքսանդրի. զդիմելն Հերակղի ի կողմանս հիւսիսոյ առ արքայն Թէտալացւոց. զյուղարկումն անհուն բազմութեանն ազգաց. զասպատակն Յունաց յԱտրպատական, զառ և զաւար. և զդարձն ընդ Փայտակարան. զեկ զաւրացն Պարսից յարևելից զդիմի հարկանել նմա. զպատերազմն՝ որ յաշխարհին Աղուանից. զդարձ կայսերն ի Նախճըւան քաղաքն և զկոխն Արճիշոյ. զգնալն կայսեր անդէն ի սահմանս իւր. զմիւս ևս այլ դիմելն ի վերայ Խոսրովայ. զգործ պատերազմին՝ որ ի Նինուէ. զասպատակն որ ի Տիսբոն քաղաք. զդարձն յԱտրպատական. զմահն Խոսրովայ. զԹագաւորելն Կաւատայ. զհաշտութիւն՝ որ ի մէջ Թագաւորացն երկոցունց. զԹողուլն անդրէն ի բաց զսահմանսն Յունաց. զդարձ աստուածեան խաչին ի քաղաքն սուրբ։ Յետ այսորիկ զարԹուցեալ անհուն բարկութիւն, և զվերջին աղէտս հինին՝ որ ի կողմանս հարաւոյ։ Եւ Թէ՝ որպէս յանկարծաւրէն շարժեցան բանակքն Իսմայէլի, և ի վայրկեան ժամանակի վանելով զզաւրութիւն Թագաւորացն երկոցունց՝ կալան յԵգիպտոսէ մինչև յայս կոյս գետոյն մեծի Եփրատայ և ցսահման Հայաստանեայց, և յեզերէ ծովուն մեծի արևմտից մինչև ի դուռն Թագա-

ւորութեանն Պարսից. զամենայն քաղաքս Միջա-գետաց Ասորւոց և զՏիսբոն և զՎեհ Արտաշիր և զՄարանդ, զՀամատան մինչև ցԳանձակ քաղաք և ցՀրատն մեծ՝ որ յԱտրպատական գաւառի։

Զայս ամենայն կամեցայ ի ձեռն գրոյս այ-սորիկ կարճառօտ ձեզ վիպասանել։

---

## ԳԼՈՒԽ Ա.

*Ապստամբութիւն Վահանայ ի Պերոզէ, և գրաւել զիշ-խանութիւնն, և պատերազմաւ յաղթել. մահ Պերոզի և թագաւորել Վաղարշու և պատուել զՎահանն մարզպա-նութեամբ. մահ Վաղարշու և թագաւորել Խոսրովայ՝ որ Անուշ Ռուան կոչի. ապստամբիլ Վարդանայ և ծառա-յել Յունաց. պատերազմ Խոսրովայ և պարտիլ։*

Եւ եղև յամս Պերոզի արքայի Պարսից բար-ձումն ամենայն իշխանութեանցն և կարգաց և աւրինաց քրիստոնէութեան, և այնպիսի վտանգ նեղութեան հալածանաց և քամահանաց ի վերայ հասեալ իշխանաց, մինչ զի ի բաց ընկեցին յին-քեանց զլուծն ծառայութեան։ Եւ ապստամբեալ Մամիկոնեանն Վահան՝ հալածեաց զՊարսիկս և բռնաբարայն գրաւեաց զիշխանութիւնն։

Յայնժամ արձակէ ի վերայ նորա Պերոզ արքայ՝ Հոնաց զաւր յոյժ։ Եւ հրաման տայ խիստ սաստիւ սպանանել զապստամբն, և հարկանել

զամենայն արու սրով սուսերի։ Ընդդէմ սորա անձապարեալ Վահան սպարապետ լ հազարաւ ընտիր վառելոց, կարգին գունդ առ գունդ, և ճակատ առ ճակատ, և յարձակին ի միմեանս ի ձայն փողոյ տագնապաւ ի դաշտին Գերանայ։

Անդ յաւգնութիւն հասեալ աստուածեան Բանն, հողմն սաստկացուցեալ զմրրիկ փոշւոյն՝ զզաւրաւքն Պարսից հեղոյր, իբրև զմութ խաւարի՝ զնոսա պատէր ի միջաւրեայ ժամանակի։ Սաստիկ կոտորած լինէր երկոցունց կողմանցն, և ոչ գոյր ընտրել զդի անկելոցն, ո՛չ զպարսիկ և ո՛չ զհայ զաւրական։ Բայց սակայն զաւրացեալ զաւրն Հայոց վանեցին անդ կոտորածով զզաւրն Պարսից, և զմնացեալսն փախստական արարեալ՝ հալածական տանէին. և դարձան յաղթութեամբ մեծաւ։

Այս Վահան ժողովեաց և զհարկս աշխարհին Հայոց և շինեաց եկեղեցիս մեծամեծս, զոր աւերեալ էր Պարսից ի Վաղարշապատ քաղաք և ի Դունի և ի Մզրայս և ի բազում տեղիս աշխարհիս Հայոց։ Եւ շինեալ զերկիրն նորոգեաց վերըստին։

Իսկ Պերոզի արքային Պարսից՝ թէպէտ և կամեցաւ վերստին զաւրս գումարել ի վերայ աշխարհիս Հայոց, ո՛չ եղև նմա պարապ. զի համբաւք թշնամեացն ստիպէին զնա ի կողմանցն

Քուշանաց։ Եւ յայնմ մարզէ [1], զի ինքն իսկ արքայն Քուշանաց խաղացեալ գայր ի վերայ նորա զաւրու մեծաւ։

Եւ նորա գումարեալ զաւրս իւր՝ գնաց ընդդէմ նորա տագնապաւ մեծաւ։ Ասէ. «Երթայց նախ առաջին զնա վանեցից, և ապա պարապաւ դարձեալ գնացից ի Հայս և մի՛ խնայեսցէ սուր իմ ի նոսա, յարս և ի կանայս»։

Եւ ինքն անցեալ՝ փութանակի եհաս ընդդէմ թշնամւոյն յարձակելս. և եղև պատերազմն սաստիկ, հարին և կործանեցին զբազմութիւն զաւրացն Պարսից, մինչև ո՛չ մնաց ի նոցանէ ապրեալ և փախստական։ Եւ մեռաւ Պերոզ արքայ ի պատերազմին հանդերձ եւթանեքումբք որդւովքն։

Եւ ապա յայնժամ թագաւորեաց Կաւատ որդի նորա ի վերայ աշխարհին Պարսից։ Եւ զի բեկեալ էր զաւրութիւն բազմութեանն զաւրաց իւրոց, ո՛չ ընդ ումեք կամեցաւ ունել գործ պատերազմի, այլ արար խաղաղութիւն յամենայն կողմանց. առնէ և ընդ Հայոց հաշտութիւն, և կոչէ զՎահան ի դուռն, և մեծարէ զնա մեծապէս պատուով։ Եւ տայ նմա զմարզպանութիւն աշխարհին և զՄամիկոնեայ տէրութիւն, և երդում առ բազում ի ծառայութիւն, և արձակէ բարեաւ յերկիր իւր։

---

[1] Ի ձեռ. օրինակիս՝ աւրէ։

Յետ Վահանայ կալաւ զիշխանութիւն Վարդ Պատրիկ եղբայր նորա սակաւ ինչ ժամանակ, և մեռաւ։ Զկնի նորա եկին մարզպան պարսիկք. ապա ոչ կարացին պատերազմիլ Հայք, ի հնազանդութեան կացին մինչև ցՍուրէն մարզպանն և ցՎարդան Մամիկոնէից Տէրն։

Եւ եղև ի խա ամի թագաւորութեան Խոսրովայ՝ որդւոյ Կաւատայ՝ ապստամբեաց Վարդան, և ի բաց եկաց ի ծառայութենէ թագաւորութեանն Պարսից հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաւք։ Սպանեալ զՍուրէնն մարզպան յանկարծաւրէն ի Դրւին քաղաքի, աւին զաւար բազում, և գնացին ի ծառայութիւն Յունաց։

Յայնժամ յառաջ քան զայս ապստամբեալ ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց, և խնդրեաց ի Խոսրովայ յարքայէն Պարսից. զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դրւնայ ի Փայտակարան քաղաք, և կարգեսցէ զքաղաքն ի Շահրմար Ատրպատականի. զի մի՛ ևս կոչեսցի անուն Հայոց ի վերայ նոցա։ Եւ կատարէր հրամանն։

Իսկ առ Հայոց երդնոյր թագաւորն Յունաց, և հաստատէր զնոյն ուխտ՝ որ ի մէջ թագաւորացն էր երկոցունց՝ երանելւոյն Տրդատայ և Կոստանդիանոսի. և տայր նոցա զզաւրսն կայսերական յաւգնութիւն։ Եւ նոցա առեալ զզաւրն՝

դիմեցին ի վերայ քաղաքին Դըւնայ և պաշարեալ կործանեցին ի վայր, և հալածեցին զզաւրն Պարսից՝ որ ի նմա կային։

Բայց եհաս ի վերայ նոցա յանկարծաւրէն խռովութիւն մեծ, զի զեկեղեցի սրբոյն Գրիգորի, որ շինեալ էր մերձ ի քաղաքն, էին արարեալ համբարանոցս Պարսիկքն, հարին հուր և այրեցին. վասն որոյ եղև նոցա խռովութիւն մեծ։

Գայ ապա ի վերայ նորա Միհրանն Միհրևանդակ ի հազարաւ զաւրու և փղաւք բազմաւք։ Եւ եղև պատերազմ մեծ ի դաշտին Խաղամխեայ, և հարեալ զզաւրն Պարսից անհնարին հարուածովք մաշէին ի սուր սուսերաց, զփիղսն զամենայն Թափէին։ Եւ Միհրանն[1] սակաւուք պրծեալ գնացին յերկիրն իւրեանց։

Այս այն Վարդան է՝ յորոյ վերայ եկն ինքն արքայն Պարսից՝ կոչեցեալ Անուշ Ըռուան Խոսրով, հանդերձ բազմութեամբ սպառազէն զաւրացն և փղաւք բազմաւք, և ճանապարհ կալեալ ընդ գաւառն Արտազու՝ գնաց ընդ Բագրևանդ՝ զանց արարեալ զԿարնոյ քաղաքաւ։ Եւ կալեալ ճանապարհ գնաց ի տեղի մի, և բանակեցաւ դէմ յանդիման նորա։

Եւ ի վաղուեան առաւօտուն հապճեպ ստիպով կարգեն գունդ առ գունդ, և ճակատ առ ճակատ, և բաղխէին զմիմեանս պատերազմաւ։

[1] Ի ձեռ. օրինակիս էր՝ Միրհեանն։

Եւ սաստկացաւ պատերազմն ի վերայ յերեսաց երկրի, և խմբեցաւ պատերազմն յոյժ. և մատնեաց Տէր ի պարտութիւն զԹագաւորն Պարսից և զաւրս նորա զամենայն։ Եւ խորտակեցան առաջի Թըշնամեացն սրով սուսերի, և փախեան յերեսաց նոցա սաստիւ տագնապաւ, ո՛չ գիտելով զճանապարհս փախստեան իւրեանց՝ երթեալ ամրացան ի գետն մեծ՝ որ կոչի Եփրատես։ Եւ ուռուցեալ ի վեր ջուրն՝ խաղացոյց զբազմութիւն փախըստականացն իբրև զբազմութիւն մարախոյ, և ո՛չ կարացին յաւուր յայնմիկ ճողոպրել բազումք։ Բայց Թագաւորն մազապուր պրծեալ սակաւուք՝ ի փիղս և ի ձին ապաստան եղեալ, փախստական ընդ Աղձնիսն անդրէն ի կայանս իւր երթայր։

Եւ նոքա առին զբանակն ամենայն հանդերձ արքունական գանձիւքն։ Եւ կալան զԲամբիշն և զբանակն, և Թափեցին զՄաշապերճանն, ամենայն դեսպակն ոսկեղէն բազմաքանքար, որ էր ակամբք պատուականաւք և մարգարտաւ յօրինեալ, որ անուանեալ կոչէր ի նոցունց դեսպակ փառաց։ Առաւ և Հրատն՝ զոր ընդ ինքեան շըրջեցուցանէր Թագաւորն հանապազորդ յաւգնականութիւն իւր, որ մեծագոյն համարեալ էր քան զամենայն կրակ, որ կոչէր ի նոցունց Աթաշ. հեղձաւ ի գետն հանդերձ Մովպետան Մովպետաւ և այլ բազմութեամբ մեծամեծաց աւագաց։ Յամենայն ժամ աւրհնեալ է Աստուած։

## ԳԼՈՒԽ Բ.

*Ի Քրիստոս հաւատալ և մկրտիլ Անուշ Ըռուանայ յեպիսկոպոսէն, և ննջումն. թագաւորել Որմզդի. հարկանել Վահրամայ զզօրս Թէտալացւոց և պատերազմիլ ընդ արքային Մազգըթաց, և սպանանել զնա անդ. ապստամբութիւն Վահրամական զօրացն ի Խոսրովայ և փախուստ. գալ Վահրամայ. օգնութիւն խնդրել Խոսրովայ ի կայսերէն Մաւրկայ։*

Այս Խոսրով որ կոչեցաւ Անուշ Ըռուան՝ ի ժամանակս իւրոյ թագաւորութեանն յառաջ քան զապստամբութիւն զայս, հաստատեաց զերկիր, քանզի էր խաղաղասէր և աշխարհաշէն։ Եւ ի լինել ապստամբութեան այնորիկ, յայնժամ հետէ ընդոստուցեալ զարթեաւ ի բարկութիւն՝ զանձն անփաստ համարեալ՝ իբր թէ՝ «հայր էի ամենայն երկրի, և ոչ տէր։ Եւ սնուցեալ զամենեսեան իբրև որդի և սիրելի։ Եւ արդ՝ ասէ, ի նոցանէ խնդրեսցէ Աստուած զարիւնս զայս»։ Այս Խոսրով ի ժամանակս իւրոյ թագաւորութեան կապեաց զպահակն Ճորայ և Աղուանից. կալաւ ձերբակալ զարքայն Եգերացւոց. և առ մարտիւ զԱնտիոք պիսիդացւոց, և գերեալ նստոյց առ թագաւորական կայանիւն։

Շինեալ քաղաք և անուանեալ զնա Վեհ Ան-ջատոք Խոսրով, զոր անուանեալ Շահաստանին Ոկնոյ կոչեն։ Եւ առ սա զԴարա և զԿաղնիկոս, գերեաց ապատակաւ և զկողմանս Կիւղիկեա-ցւոց։

Կալաւ սա զթագաւորութիւնն՝ ամս լը։ Եւ ի ժամ վաղճանին ծագեալ փայլակնացեալ զնո-վաւ լոյս աստուածային Բանին. քանզի հաւա-տաց ի Քրիստոս՝ ասելով այսպէս. «Հաւատամ ի միայն Աստուած, յայն՝ որ արար զերկինս և զերկիր, զոր քրիստոնեայքն պաշտել խոստովա-նին՝ Հայր և Որդի և Հոգի սուրբ. զի նա միայն է Աստուած. և այլ ոչ գոյ բաց ի նմանէ զոր քրիստոնեայքն պաշտեն»։

Եւ հրաման տուեալ սպասաւորացն զմոգ-պետն արձակել արքունի ի հեռագոյն տեղիս ի գործ, և զայլսն մերժեալ յարքունական կայե-նիցն, և կոչեալ զԵպիսկոպոսապետն՝ որ Երան [1] կաթուղիկոս անուանի։ Մկրտեցաւ ի նմանէ և հրամայեաց ժամ առնել ի սենեկին, և ընթեռ-նուլ զՏէրունական Աւետարանին զպատգամս, և հաղորդեցաւ ի կենդանարար Մարմնոյ և Արեանն Տեառն. և հրաժարեալ ի Կաթողիկոսէն և ի Տէ-

[1] Ի տպ. և ի ձեռ. օրինակի էր՝ որ էր անդ, մեզ այսպէս ուղղելի դատեցաւ։ Տես Պատմ. Վարդանայ, տպ. ի Վեն. եր. 59։

րունեան Աւետարանէն, և արձակեն զնա յիւր տեղին։

Եւ ապա զկնի սակաւ ինչ աւուրց ննջեաց ի բարւոք ծերութեան իւրում. և բարձեալ զմարմին նորա քրիստոնէիցն՝ տարեալ եդին ի շիրիմս Թագաւորացն։ Եւ Թագաւորէ Որմիզդ որդի նորա յետ նորա։

Եւ արդ՝ այս են զաւրավարք արքային Պարսից՝ որ եկին մի ըստ միոջէ յերկիրս Հայոց՝ յապըստամբութենէ Վարդանայ Մամիկոնէից տեառն՝ որդւոյն Վասակայ, մինչև ցայսաւր ժամանակի։ Ոմանք մեռան ի պատերազմի և ոմանք պատերազմեցան և ոմանք յաղթութիւն գործեցին և գնացին։ Յորժամ սպանին զՍուրեն մարզպան, ի նմին ամի եկն Վարդան Վշնասպ ոմն, և գործ ինչ ոչ գործեաց. եկաց ամ մի և գնաց։ Ապա եկն և Գողոնն Միհրան ի հազարաւ զաւրաց սպառազինաց և փղաւք բազմաւք և ունէր նա ընդ ինքեան սատարս բազումս ի ճամբարէ անթիւ ազգացն, ընդ որ բնակեալն են ընդ լեռնակողմամբ Կովկասու ազգք Հոնաց. և հրաման յարքայէն՝ զի անճետս արասցեն զարս ի յաշխարհէն Հայոց՝ խլել՝ բրել՝ յատակել, անխնայ յերկիր կործանել։

Եւ եկեալ նա, բայց եթէ ուրեք յանմատոյց ամրոցաց ուրեմն մնացեալ ապրեցան մարդիկ։ Եւ կամ թէ՝ ուրեք ի հեռագոյն աշխարհս փա-

խըստական գնացին։ Բայց սակայն ո՛չ կարացին բազումք ճողոպրել. քանզի զորս գտանէին, սուր ի վերայ եդեալ սատակէին։ Սա արար կոիւ մի ի Վիրս, և պարտեցաւ։ Եկն ի Հայս, և առ զԱնկղ սուտ երդմամբ։

Փիլիպպոս, Սիւնեաց տէր, արար կոիւ մի ընդ քաղաք և ընդ Խաղամախիս. և կոիւ մի ի Վանանդ՝ ի յՈւթմսու գեղ, և յերկոսեանն պարտեցաւ. եկաց նա ամս է և գնաց։

Ապա եկն ինքն արքայն (Որմիզդ որդի) Անուշ Ըռուան Խոսրով (ու), որ զՎնդոյն կապեալ եդ ի Գրուանդականի, և Վստամ պրծեալ գնաց փախստական. և ո՛չ սակաւ ինչ պատերազմունս զարթոյց սա յաւուրսն յայնոսիկ շուրջ զիւրեաւ։

Եւ եղև ի ժամանակին յայնոսիկ Վա՛րամ ոմն Մերհեւանդակ, իշխան արևելից կողմանց աշխարհին Պարսից՝ որ հարկանէր քաջութեամբ իւրով զզաւրս Թետալացւոց և բռնութեամբ ունէր զԲահլ և զամենայն երկիրն Քուշանաց՝ մինչև յայնկոյս գետոյն մեծի՝ որ կոչի Վեհռոտ, և մինչև ցտեղին՝ որ կոչի Կազբիոն [1]։ Քանզի զանց արար յայնկոյս նիզակի քաջին Սպանդիատայ, զորմէ ասեն բարբարոսքն եթէ՝ «Հասեալ նա

[1] Թերևս՝ Կազրիոն։ Տե՛ս Journal Asiat. 1869. եր. 173. Ասող. 114. Գասբուն։

պատերազմաւ [1] մինչև ցայս վայր ցցեալ զնիզակ իւր ի գետնի»։

Յայնժամ արարեալ Վահրամայն այնորիկ պատերազմն ընդ մեծի արքային Մազքթաց, որ էր ի կողմանս յայնմիկ՝ յայնկոյս գետոյն մեծի, եհար զբազմութիւն զաւրացն, և սպան զթագաւորն ի պատերազմի. և ըմբռնեալ յափշտակեաց զամենայն զգանձ թագաւորութեանն այնորիկ։

Յայնժամ առաքէ առ արքայն Պարսից ի ձեռն հրեշտակաց իւրոց հրովարտակս աւետաւոր, և սուղ ինչ աւարաւն ի մեծամեծ գանձուցն հասելոց յաւարէ ասպատակին՝ նշանակ թագաւորութեանն ի պատուական իրացն, և զամենայն զգանձն զաւրուն շնորհէ ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան։

Արդ՝ իբրև տեսեալ թագաւորին Որմզդի զհրեշտակսն եկեալս աւետաւորս, և ընթերցեալ զգիրս ողջունի զաւրացն, և ընկալեալ զընծայսն աւարաման ի պատուական արքունական գանձուցն, թէպէտ և խնդացեալ՝ վեր ի վերոյ զմարդկան զմիտս հաճէր, այլ ի ներքուստ ցասմամբն բարբառեալ ասէր. «Ընթրիքն առաւել մեծագոյն և զնշանն ի պատուոյս [2] ճանաչեմ, բայց յայն-

[1] Ի տպ. և ի ձեռ. օրին. էր՝ պատէ բազմաւ։

[2] Ասողիկ, եր. 115. Ի պատառոյս։

չափ սաստիկ գանձուցն ո՛չ էր արժան այնչափ հասանել յարքունիս»։

Յայնժամ փոխանակ աւետաւոր հրովարտակին՝ հրամայէ գրել հրովարտակ առաւել ցասմամբ, և արձակէ ի գնդէն համահարզանց և փուշտիպանացն արքունի, զի երթիցեն առ զաւրն, և զգանձն զամենայն ի միջի արասցեն։ Եւ նոցա երթեալ սկսան պահանջել։

Յայնժամ ընդոստուցեալ զաւրն ամենայն, սպանին զհաւատարիմս արքային, և ի բաց կացեալ ի ծառայութենէ նորա, զՎահրամ նստուցին թագաւոր իւրեանց. երդումն կնքեցին ըստ աւրինի իւրեանց. միաբանեցան և դարձան յարևելից, և դիմեցին յԱսորեստան, զի սպանցեն զթագաւորն իւրեանց զՈրմիզդ, և բարձցեն զտունն Սասանական, և հաստատեսցեն զՎահրամ յաթոռ թագաւորութեանն։

Եւ փութանակի ժողովեալ և առեալ գնացեալ զբազմութիւն քաջ և մարտիկ ազգացն արևելից։ Արդ՝ մինչև ցայս այսպէս շփոթ ամբոխի ի մէջ պարսից աշխարհին լեալ՝ Յովհան Պատրիկ և զաւրք Յունաց պատեալ պաշարեալ պահէին զքաղաքն Դունայ՝ մարտուցեալ ընդ նմա մեքենայիւքն՝ մերձ էին ի կործանել զպարիսպն։

Իբրև եհաս լուրս այս՝ թողին զնա, և գնացին. ճանապարհ կալեալ յԱտրպատական, լաւ-

տեցին զերկիրն ամենայն, հարեալ զամենայն[1] զայր և զկին բերանով սրոյ իւրեանց, առեալ զամենայն առ և զգերի և զաւար դարձան յերկիրն իւրեանց։

Արդ՝ իբրև եհաս լուր աղաղակիս այսորիկ ի դուռն Սասանականին՝ առ Որմզդի Թագաւորն Պարսից, ոչ սակաւ ինչ երկուղք ահի պատեցին զնա։ Եւ կոչեցեալ զնախարարս՝ որ ի դրանն արքունի, և զգունդս համահարզանց և զփուշտիպանացն, և խորհուրդ արարեալ առնուլ զգանձն թագաւորութեան և զամենայն ամբոխ դրանն արքունի, և անցանել յայնկոյս գետոյն մեծի Դգլաթայ ընդ զոմ ի Վեհկաւատ, և հատանել զկարան կամրջացն. և խորհէր իւր ապաւէն առնել զբազմութիւն ամբոխին արքային Տաճկաց։

Իսկ այս ոչ այսպէս պատկանէր. քանզի խորհուրդ արարեալ խորհին արանց և համահարզանց և փուշտիպանաց արքային, զի սպանցեն զՈրմիզդ և նստուսցեն թագաւոր զորդի նորա զԽոսրով. խորհուրդ արարեալ լուծանել զնա[2] և առնել իւրեանց առաջնորդ և գործոյն գլխաւոր։ Եւ գնացեալ ի բերդն Գրուանդականի, լուծին զնա և զամենայն կալանաւորսն ընդ նմա, և արձակեալ զոմն սուրհանդակ հաւատարիմ երա-

---

[1] Այսպէս ի ձեռ. օրինակին. իսկ ի տպ. ոչ գոյր։

[2] Այս ինքն՝ զՎնդոյ, զեղբայր Վստամայ։

գագոյն երիվարաւք, և գրեալ առ Վստամ եղբայր, զի սաստիկ ստիպով վաղ հասցէ ի տեղի գործոյն. և եկեալ նա փութանակի։

Եւ ժողովեցան ամենայն նախարարք և զաւրագլուխք և զաւրք ի դահլիճն արքունի, որ ի ժամուն յայնմիկ հանդիպեցան անդ. և մտեալ ի սենեակ արքայի՝ կալան զԹագաւորն Որմիզդ, և անդէն վաղվաղակի փորեցին զաչս նորա և ապա սպանին։

Եւ նստուցին զորդի նորա Թագաւոր ի վերայ աշխարհին պարսից. և սկսան առնել պատրաստութիւն փախստեան յայնկոյս գետոյն մեծի Դգլաթայ։ Եւ ոչ յետ բազում աւուրց Վահրամն եկն եհաս փութանակի իբրև զխոյանալ արծուոյ։

Եւ քանզի մանուկ տղայ էր Խոսրով ի Թագաւորել իւրում, առին զնա քեռիքն իւր Վնդոյ և Վստամ, և անցին յայնկոյս գետոյն մեծի Դըգլաթայ ընդ զոմ [1], և հատեալ ի բաց զլարսն կամըրջացն։ Եւ եկեալ Վահրամն էառ զամենայն զտունն և զգանձ և զկանայս արքունի, և նստաւ ի գահոյս Թագաւորութեան։ Եւ հրամայեաց կապել զլաստս փայտեղէնս, և անց զգետովն առ ի յըմբռնել զԽոսրով. բայց նորա յերկիւղէն ոչինչ կարաց ունել զտեղի։ Իբրև անցին զնացին փախստական, և խորհեալ ի ճանապարհի,

---

[1] Զոմ է աղաւաղեալ յն. ζεῦγμα կամուրջ։

թէ ո՛ր լաւագոյն իցէ՝ երթալ առ արքայն Տաճկաց, եթէ առ թագաւորն Յունաց։

Ապա լաւ համարեցան առնել իւրեանց ապաւէն զթագաւորն Յունաց։ «Ջի թէպէտ և է, ասեն, թշնամութիւն ի միջի, սակայն քրիստոնեայ են և ողորմած. և յորժամ երդնուն՝ ստել երդման ոչ կարեն»։ Եւ գնացեալ ընդ արևմուտս զուղիղ ճանապարհ երթեալ մտին ի քաղաքն՝ որ կոչի Խաղաբ. և դադարեցին անդ։

Եւ սա թէպէտ անց զգետոփն, ոչ կարաց հասանել. յետս դարձան անդրէն ի Տիսբոն։

Յայնժամ յղէ Խոսրով արքայ առ թագաւորն Մաւրիկ արս ճոխս պատարագաւք, և գրէ այսպէս. «Տուր ինձ զգահ և զտեղի թագաւորութեան հարց [1] և նախնեաց իմոց, և արձակեա ինձ զաւր յաւգնութիւն՝ որով կարացից հարկանել զթըշնամին իմ, և կանգնեա զթագաւորութիւն իմ, և եղէց քոյ որդի։ Եւ տաց քեզ զկողմանս զԱսորւոց՝ զԱրուաստանն ամենայն մինչև ի Մծբին քաղաք։ Եւ յերկրէն Հայոց՝ զաշխարհն Տանուտերական իշխանութեան մինչև ցԱրարատ և ցԴըւին քաղաք, և մինչև ցեզր ծովուն Բզնունեաց և ցԱռեստաւան. և զմեծ մասն Վրաց աշխարհին՝ մինչև ցՏփխիս քաղաք. և կալցուք ուխտ

---

[1] Ի տպ. և ի ձեռագ. էր՝ Հայոց։ Մեք այսպէս եղաք. Տես Թոմ. Արծ. եր. 94։

*խաղաղութեան ի մէջ մեր մինչ ցմահ երկո֊ ցունցս, և անշուշտ լիցի այս երդումն ի միջի մերում և ի մէջ որդւոց մերոց, որ թագաւորե֊ լոց իցեն յետ մեր»։*

*Արդ՝ ժողովեալ թագաւորին զամենայն Սընկ֊ ղիտոսն, հարցանէր ցնոսա խորհուրդ, և ասէր. «Սպանին պարսիկք զՈրմիզդ զթագաւորն իւ֊ րեանց և Նստուցին զորդի նորա թագաւոր։ Եւ զաւրք թագաւորութեանն նստուցին զայլ ոմն թագաւոր յԱրևելս. և եկեալ նա զաւրու մեծաւ յինքն յափշտակեաց զթագաւորութիւնն. և մա֊ նուկ որդի նորա փախըստական գնացեալ եկն առ մեզ, և խնդրէ ի մէնջ զաւրս յաւգնականու֊ թիւն, և խոստանայ առնել այսպէս։ Արդ՝ զի՞նչ արասցուք, ընդունի՞մք. արժա՞ն է ընդունել, թէ ոչ»։ Իսկ նոքա ասեն. «Ոչ է արժան ընդունել, զի ազգ մի անաւրէն են և ամենևին սուտ. ի նեղութեան իւրեանց խոստանան առնել, և յոր֊ ժամ յանդորր ելանեն՝ ստեն. բազում չարիս կրեալ է մեր ի նոցանէ. թո՛ղ սպառեսցեն զմի֊ մեանս, և մեք հանգիցուք»։*

*Անդ թագաւորն Խոսրով կայր ի մեծ վը֊ տանգի, և տեսանէր զմահ առաջի աչաց. զի զերծեալ էր ի բերանոյ առիւծոյ և անկեալ ի բերան թշնամեաց, ուստի փախուստ ոչ գոյր։*

*Իսկ թագաւորն մերժեալ զխորհուրդս Սընկ֊ ղիտոսացն, յինքենէ յղէր զՓիկղիպիկոս զփեսայ*

իւր և տայր տանել պատասխանի ընդունելու-թեանն. առնոյր ի նմանէ երդումն, և տայր նմա զաւր կայսերական յաւգնականութիւն՝ զՅովհանն պատրիկ ի Հայոց կողմանէ, և զներսէս սարա-տելատ յԱսորւոց և զզաւրս նոցա. անցեալք ի հանդիսի, երեք հազար հեծեալ ըստ հարիւրա-ւորաց, ըստ հազարաւորաց, ըստ գնդից, ըստ դրաւշից իւրեանց։

Արդ՝ վասն զի մայր Շապհոյ դուստր Աս-պարապետին այնորիկ, որ էր նախարար տանն Պարթևաց, որք մեռեալ էին, քոյր Վնդոյի և Վստամայ. և ինքն Վնդոյ էր այր իմաստուն և խորհրդական, և սրտիւ արիագոյն՝ որպէս ասա-ցի։ Եւ արար պատերազմ մի մեծ ի Մելիտինէ՝ յորում պարտեցաւ և գնաց։ Ապա եկն Տամ Խոսրով, և արար երկու կռիւս, մի՝ ի Բասեան ի Բոլորապահակի, ուր Մուրց և Երասխ խառ-նին։ Եւ մի՝ ի Բագրևանդ ի Կըթնի։ Եւ յեր-կոսին յաղթութիւն գործեաց մեծամեծ. եկաց երկուս ամս՝ և գնաց։

Ապա եկն Վարազ Վզուրն և արար կռիւ մի ի Վանանդ ի յՈւթմսու գեղ՝ որ և նախ վա-նեցաւ, և ապա յաղթեաց. եկաց ամ մի՝ և գնաց։

Ապա եկն ասպետն մեծ Պարթևն և Պահ-լաւն, և արար կռիւ մի ի Շիրակ աւանին և յաղթեաց. եկաց եւթն ամ՝ և գնաց։

Ապա Հրահատն [1] մարզպան՝ որ գնաց ի Մրծունին իւրայնոցն սատար ի պատերազմ. և անդ նոքա պարտեցան և ապա յաղթութիւն ստացան։ Եւ անտի դարձեալ՝ արար կռիւ մի ի Բրզնունիս ի Ծաղկաջուրն և յաղթեաց. եկաց չորս ամիս՝ և գնաց։

Ապա եկն Հրարտին Դատան մարզպան։ Ապա այնուհետև ոչ կարացին պարսիկք պատերազմաւ զդէմ ունել զաւրացն յունաց։ Առ սովաւ սպանաւ Որմիզդ. և թագաւորեաց որդի նորա Խոսրով։ Եկաց ամս երկու՝ և գնաց։

Ապա եկին սահմանակալք պարսիկք մինչև ցսպառումն խաղաղութեանն՝ որ ի մէջ Պարսից և Յունաց, և ի մէջ թագաւորացն երկոցունց Մաւրկայ և Խոսրովայ։

Եւ ապա Վրնդատականն։ Ապա Խորականն։ Զսա սպանին զաւրք պարսից ի Գառնի. և ինքեանք ապստամբեալք գնացին ի Գեղումս։ Ապա Մերակրուտն։ Ապա Յազդէնն։ Ապա Բուտմահ։ Ապա Հոյիմանն։

---

[1] Է فرهاد անուն պարսից։

# ՄԱՏԵԱՆ ԺԱՄԱՆԱԿԵԱՆ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԱԳԱՒՈՐԱԿԱՆ

Վէպ արիական, վանումն տիեզերական, հէն Սասանական՝ յԱպրուէզն Խոսրովեան՝ որ հրդեհեալ բոցացոյց զառ ի ներքոյ ամենայն՝ դղորդեալ զծով և զցամաք, զարթուցանել զկործանումն ի վերայ ամենայն երկրի։

Եւ արդ՝ ես ճառեցից զեղելոցն յերկրի, զանցից կործանմանն առասպելս վիպասանելով, զ'ի վերուստ զարթուցանել սրտմտութիւն, և զառ ի ներքոյ բորբոքեալ զբարկութիւն. զհրոյն և զարեան հեղեղել և զհինիցն արշաւանս. և զմահաբերն ասպատակ, զգոչիւն դիւաց և զաղաղակ վիշապաց, զազանց քաւդեաց և զարանց հսկայազանց, քաջաց սպառազինաց, հեծելոց յարևելից յարևմուտս, ի հիւսիսոյ ի հարաւ։ Եւ զհարաւայինն զարթուցեալ մեծաւ բորբոքմամբ՝ յարձակեալ ի վերայ միմեանց, և կատարեալ զհրամանն բարկութեան Տեառն ի վերայ ամենայն երկրի. որք իբրև զմրրիկ աւդոյ թռուցեալ, փոթորկեալ, ընթացեալ ապականել զառ ի ներքոյ ամենայն, աւարել զլերինս և զբլուրս, պատառել զդաշտս վայրաց, և խորտակել զվէմս և զքարինս ի ներքոյ գարշապարաց երիվարաց և յառաթուր սմբակաց։ Եւ արդ՝ ասացից զվէպս ի կործանիչն և յապականողն Խոսրով՝ յԱստուծոյ անիծեալն։

---

## ԳԼՈՒԽ Գ.

*Դիմելն Վահրամայ ի վերայ Խոսրովայ և Նամակք երկու առ Մուշեղ. և հաւատարմութիւն Մուշեղի առ Խոսրով. պատերազմ մեծ. պարտիլ ապստամբաց. ապերախտութիւն Խոսրովայ առ Մուշեղ. վասն որոյ խորհուրդ Մուշեղի սպանանել զնա և գրել ամբաստանութիւն ընդ իշխանացն Յունաց առ Կայսրն. այնմ տհաճութիւն Կայսեր, և Թուղթ առ Նոսա և առ Խոսրով. արձակիլ յունական զաւրաց. կոչիլ Մուշեղայ ի կայսերէն առ պալատն։*

Եւ եղև յետ մահուանն Խոսրովայ որդւոյ Կաւատայ, և թագաւորել որդւոյ նորա Որմզդի ի վերայ աշխարհին պարսից՝ որոյ մայր իւր դուստր էր Խաքանայ մեծի արքային Թետալացւոց, կին Խոսրովայ՝ հաւր սորա անուն Կայէն [1], որ թէպէտ ի հայրենեաց մեծագոյն, ևս առաւել մեծագոյն և գազանագոյն ի մայրենեաց կողմանէ։

Քանզի եբարձ սա զամենայն նախարարս և զնախնիս և զտունս բնակագոյնս յաշխարհէն պարսից։ Սպան սա զԱսպարապետն մեծ զպար-

---

[1] Թերևս իցէ պատիւն թագաւորութեան՝ قاآن ։

թեն՝ և զպահլան՝ որ էր ի զաւակէ Անակայ մահապարտի. զոր առեալ դայեկաց ի հինէ անտի Խոսրովայ արքայի Հայոց՝ փախուցին ի դուռն արքունի իւրեանց՝ կողմանս պարսից։ Եւ կատարեաց արքայն ի վերայ նորա զպարգևսն խոստացեալս հաւրն նորա Անակայ. զբուն իսկ զպարթևական զպալհաւն անդրէն փախուցեալ թագ կապեալ մեծարեաց, և արար իւր երկրորդ թագաւորութեանն։

Եւ էին երկու որդիք Սպարապետիս այսորիկ, անուն միոյն Վնդոյ և երկրորդին՝ Վատամ։ Եւ զզաւրս աշխարհին Հայոց ընդունէին՝ գումարել, որք ի ժամուն առ ձեռն գտեալ՝ և անցեալք ի հանդիսի, իբրև հազարք հնգետասանք, իւրաքանչիւր գունդք նախարարաց՝ ըստ հարիւրաւորաց՝ ըստ հազարաւորաց՝ ըստ գնդից՝ ըստ դրաւշուց իւրեանց։ Ամենեքեան սոքա սպառազէնք, ընտիրք պատերազմողք վառեալք քաջութեամբ՝ իբրև զհուր, որ ոչ զանգիտեն և ոչ զթիկունս դարձուցանէին. դէմք առիւծու դէմք նոցա։ Թեթևութիւն ոտից իբրև զթեթևութիւն այծեմանց երագութեամբ ի վերայ դաշտաց. մտադիւրութեամբ և ամենայն հնազանդութեամբ, չու յուղի անկեալ գնացին։

Արդ՝ առեալ ապստամբին միհրացելոյն զզաւրս իւր, զփիղս և զամենայն զգանձս թագաւորական, չու արարեալ գնայ հասանէ յԱտրը-

պատական․ և բանակեցան սակաւ մի հեռագոյն ի միմեանց ի Վարարատ գաւառին։

Արդ՝ գրէ Վահրամն հրովարտակ առ Մուշեղ և առ այլ նախարարս Հայոց, որ ունէր այսպէս։

«Ես այսպէս կարծէի՝ եթէ ես յորժամ ընդ թշնամիս ձեր մարտնչիմ, և դուք ի կողմանէ այտի եկեալ՝ ինձ աւգնական լինիցիք․ զի ես և դուք, միաբանութեամբ բարձցուք ի միջոյ զտիեզերական պատուհասն՝ զտունն Սասանայ։ Իսկ դուք աւադիկ ժողովեալ գայք ի վերայ իմ պատերազմաւ յօգնութիւն դմա. այլ ես ո՛չ երկեայց ի ժողովելոց երիցանցդ Հռովմայեցւոյդ՝ որ եկեալ են ի վերայ իմ։ Բայց դուք Հա՛յք՝ որ տարաժամ ցուցանէք զտիրասիրութիւն․ ո՞չ ապաքէն տունդ Սասանական եբարձ զերկիրդ ձեր և զտէրութիւն։ Եւ կամ ընդէ՞ր ընաւ ապստամբեցին հարքն ձեր և գնացին ի ծառայութենէ նոցա, մինչև ցայսաւր պատերազմեալ ի վերայ աշխարհին ձերոյ։ Եւ արդ՝ դիմեալ գայ ի վերայ իմ կորուսանել զայնչափ վաստակս ձեր․ զի թէ Խոսրով յաղթեալ էր՝ երկոքին դոքա միաբանեալ բարձցեն զձեզ ի միջոյ։ Բայց զի հաճոյ թուեսցի ձեզ ի բա՛ց կալ ի դոցանէ և միաբանել ընդ իս, և ձեռն տալ ինձ յաւգնականութիւն։ Եւ թէ ես յաղթեցից՝ երդուեալ ի մեծ աստուածն Արամազդ, և յԱրեգակն տէր և ի Լուսին, ի Հուր և ի Ջուր, ի Միհր՝ և յամենայն աստուածս՝ եթէ

ձեզ տուեալ լիցի իմ զհայոց թագաւորութիւն։ Զո՞ր և դուք կամիք, արասջիք ձեզ թագաւոր։ Եւ թողում ձեզ զամենայն երկիրն Հայոց մինչև ցԿապկոհ և ցդուռն Աղուանից. և յԱսորւոց կողմանէ՝ զԱրուաստան և զՆոր Շիրական մինչև ցսահմանս Տաճկաց, զի առ նախնեաւքն իսկ ձեզ լեալ է. և ընդ արևմուտս մինչև ցԿեսարիա Կապադովկացւոց։ Եւ ես մի իշխեցից քան զԱրապ անցանել յայնկոյս. և զանձն Արեաց թագաւորութեանս բաւական համարեալ լիցի ինձ և ձեզ։ Եւ այնչափ ձեզ շատ լիցի՝ մինչև ձեր թագաւորութիւնդ հաստատեսցի»։

Եւ ըստ իւրեանց կարգի՝ էր աղ ծրարեալ և կնքեալ ընդ հրովարտակին։

Եւ առեալ նոցա զհրովարտակն և ընթերցեալ՝ ոչ արարին բանիցն պատասխանի. և ոչ իսկ ասացին բազմաց, զի երկնչէին յանմիաբանութենէ իւրեանց։

Եւ արդ՝ գրեն անդրէն դարձեալ թուղթ երկրորդ. «Գրեցի առ ձեզ ի բաց կալ ի նոցանէ, ինձ և ձեզ բաւական համարելով զամենայն աշխարհս և զամենայն գանձս թագաւորութեանս այսորիկ. ուրեմն ոչ կամեցարուք լսել, զի ոչ արարէք բանիցն պատասխանի։ «Ես զձեզ ապաշաւեմ՝ ասէ. այլ փաղիւ, քանզի յինի առ Սա-

սանայ[1], ցուցանեմ ձեզ փիղս վառս, և ի վերայ՝ զաւրս սպառազինեալս քաջաց, որ տեղասցեն ի վերայ ձեր նետս երկաթեղէնս ձեռբաձգութեամբ, և շառաւունս[2] մուխս պողովատիկս՝ սլաքաւք ի հաստաձիգ աղեղանց. արս երիտասարդս հզաւրս սպառազէնս վառնելոց, և երիվարս տաճիկս և երագունս, տապարս և սուսերս մուխս և պողվատիկս և կուփս՝ որչափ Խոսրովայ և ձեզ պիտոյ իցէ»։

Առնէ նմա Մուշեղ պատասխանի։ «Այսքան առ Աստուծոյ մարդասիրութիւնն, և ում կամեցաւ՝ ետ. բայց դու պարտիս յանձն քո ապաշաւել և ոչ ի մեզ։ Եւ ծանեայ զքեզ այր պոռոքաբան[3]. և ոչ խրախուսես յԱստուած, այլ ի քաջութիւն և ի փղաց զաւրութիւն։ Այլ ես ասեմ քեզ՝ եթէ Աստուած կամեսցի, վաղիւ պատելոց է զքև պատերազմ քաջաց, և ճայթեսցեն ի վերայ քո և ի վերայ բազմութեան փղացդ իբրև զամպս երկնից գազանազոյնս քան զամենեսեան։ Եւ ի վերուստ ահագին ճայթէ և փայլատակէ և յարձակին քեզ սպառազէնք ճերմակ երիվարաւք և բռնալիր նիզակաւք, և անցանեն

[1] Թոմ. Արծր. եր. 95. քանզի վաղիւ առաւօտուն։

[2] 'Ի ձեռ. օրին.՝ շաւառունս։ Առ Թոմ. Արծր. եր. 95՝ շուառունս։

[3] Թոմ. Արծր. եր. 96. պոռոտաբան։

ի մէջ բազմութեանն իբրև զփայլատակունս զան-
տառս զգալարս և զգաւսացեալս հրոյ շանթելոյ՝
զի ցաւղանայցեն ի յերկնից ի յերկիր, և այ-
րեսցեն զխոփս դաշտաց։ Քանզի՝ թէ Աստուած
կամեսցի, տանելոց է սաստկութիւն հողմոյ զզաւ-
րութիւնդ քոյ իբրև զփոշի, և զանձ արքունի
յարքունիս գնայ»։

Էին ընդ նմա Վնդոյն այն և Վստամ՝ զոր
վերագոյն ասացի. և զաւրք պարսիկք իբրև ութ
հազար հեծեալ։ Եւ եղև ի վաղուեան առաւաւտուն
մինչդեռ արևն զծայրս հարկանէր, կարգէին ճա-
կատ առ ճակատ, և բաղխէին զմիմեանս պատե-
րազմաւ։ Ուժգին լինէր խումբ և խառնուրդ՝ և
սաստիկ լինէր կոտորածն ի մէջ տարուբերին։
Եւ մարտուցեալ յայգուէ մինչև ցերեկոյ՝ յաւգ-
նեցան երկոքին կողմեանքն ի պատերազմին։

Եւ այնչափ սաստիկ լինէր կոտորածն՝ մինչ
զի խաղացեալ վտակաց սաստկութիւն արեանցն
առոգանէր զերկիրն ամենայն։ Եւ ոչ կարացաւ
զդէմ ունել՝ փախստական լինէր զաւրն ապըս-
տամբական առաջի զաւրացն յունաց։ Իսկ Նոցա
զհետ մտեալ մինչև ցքաջ մթանալ երեկոյին՝
ցիրս դիաթաւալ կացուցանէին զդաշտաւքն և
զճանապարհաւքն. զբազումս սատակէին ի սուր
սուսերի իւրեանց. և զբազումս ձեռբակալ արա-
րին, և կապեալ ձեռս ի վերայ թիկանց՝ բերեալ
կացուցանէին առաջի թագաւորին։

*Եւ բազմութիւն փղացն դիմեալ գնային բռնաբար։ Ապա զհետ արշաւեալ ազատագունդ սպառազինացն, ներքուստ ի վեր ծակոտէին զսպառազէնս հեծելոցն՝ որ կային ի նիւս փղացն. և աներկիւղ անվեհեր կռուէին, և սաստկեալ զբազում փիղս և զհեծեալս և զփղապանս, դարձուցանէին անդրէն բռնաբար, և զբազմութիւն փղացն։ Եւ եկին ածին յանդիման Թագաւորին։*

*Եւ անդրէն դիմեալ ի բանակետղն զաւրացն Վահրամայ. և կայր ի խորանին գանձ արքունի և ամենայն գանձք Թագաւորութեանն անթիւ և անհամար պատուականք. զամենայն աւար հարկանէին. և զբազում գահոյս ոսկիապատս չքնաղ և զանազան կազմութեամբ մանրէին սուսերաւք իւրեանց, և անցանէին ի կողմանս փաղանգ փաղանգ զբեռինս բարձեալ ուղտուց և ջորւոց բազմութեանն։ Եւ լցան ամենեքեան բազում և մեծամեծ աւարաւ։*

*Ժողովեցին ապա և զաւրն պարսից ի ճապաղուածէ գանձուցն ոչ սակաւ իրս, և հասուցին անդրէն յարքունիսն իւրեանց. և զաւրացաւ յաւուր յայնմիկ արքայ Խոսրով ի ձեռն յաղթութեանն այնորիկ քան զամենայն զթշնամիս իւր, և հաստատեցաւ Թագաւորութիւն նորա։*

*Եւ զբազմութիւն ձեռբակալաց ձիահեծելոց և փղահեծելոցն հրամայէր մերկացուցանել և կապել զձեռս ի վերայ ուսոց և արկանել կոխան ի*

ներքոյ ոտից փղացն. և ոչ ուրեք կարացին գտանել զհետ Վահրամայ։ Զի զերծաւ և գնաց այսպէս փախստական, և չոքաւ և անկաւ ի Բահլ Շահաստան, որպէս ի բանէն Խոսրովայ սպանաւ ի նոցունց իսկ։

Եւ եղև ըստ աւուրց ինչ յետ անցանելոյ պատերազմին այնորիկ մեծի, մինչդեռ արքայն Խոսրով նստէր ի մէջ խորանին իւրում, և զաւրն պարսից շուրջ զնովաւ բանակեալ՝ և զաւրն յունաց հեռագոյն ի նոցանէ աւթիւ միով՝ ուրոյն բանակեալ հոծ բազմամբոխ լիութեամբ աւարաւ իւրեանց, և կային զառաջեաւ արքային ամենայն մեծամեծք նախարարք իւր։

Խաւսել սկսաւ արքայն և ասէ. «Իցէ՞ ոք արդեաւք լեալ ի թագաւորաց աշխարհի՝ որ կարող է ըմբռնել զմիւս այլ թագաւոր զթշնամի իւր՝ զաւերիչ թագաւորութեան իւրոյ, և ոչ սպանցէ զնա, և ջնջեսցէ զամենայն արու յաշխարհէ նորա, այլ առնիցէ զնա յորդեգիրս. թագ կապեալ նմա և ծիրանեաւք զարդարեալ մեծարիցէ. վանեալ զթշնամիս նորա և հաստատեսցէ զնա յաթոռ թագաւորութեանն, և տուեալ նմա զանձ արքունական ի գանձուց իւրոց, արձակէ զնա բարեաւ գնալ զճանապարհ իւր։ Այնպիսի պարգևս շնորհեաց ինձ Մաւրիկ թագաւոր հայր իմ, զոր ոչ ոք կարէ ի մարդկանէ շնորհել որդւոյ իւրում սիրելւոյ»։ Այսպէս պատասխանի

ետուն ոմանք ի նոցանէ, և ասեն. «Արքայ յաւիտեան կեա՛ց. մեք ոչ գիտեմք արժա՞ն իցէ շնորհ ունել և թէ ո՞չ։ Զի ամենայն թագաւորութիւն զանձիւք հաստատեալ կայ. և դոքա զամենայն զանձս թագաւորութեան աւար վարեցին»։

Պատասխանի ետ արքայն և ասէ. «Զգանձս թագաւորութեան իմոյ ընդ կողս դոցա այսրէն արտաքս քարշեցից հանդերձ նոցունց աղխեալ գանձիւք։ Քանզի իմ է այն ամենայն. բայց ինձ այս կարի է, զի ապրեցաւ տիրատեացն այն և գնաց։ Այր քաջ է նա և վերստին այլ զաւրս գումարէ ի քաջաց ազգաց արևելից»։

Պատասխանի ետուն նմա և ասեն. «Զտիրատեացն զայն նոքա զերծուցին, քանզի մերով աչաւք իսկ տեսաք, զի կալաւ զնա Մուշեղն այն Մամիկոնեան, և ետ նմա երիվար և զէն, և արձակեաց»։ Զայս ասացին՝ զի կամեցան ի վերայ նորա չարիս։ Քանզի տեսանելով զհաւայս նորա չարաչարս, զարհուրեալ խոտորեցան սիրտք իւրեանց ի նմանէ։ Եւ ոչ ինչ էած զմտաւ արքայն՝ եթէ զի՞նչ իցէ բանն այն. քանզի մանուկ տղայ էր և խակ։ Եւ ոչ ինչ յիշեաց զխռովութիւն այնպիսի զաւրացն. այլ հաստատեաց զմիտս իւր ի վերայ բանիցն ստութեան, և ասէ. «Կոչեսցի այսր Մուշեղ, և կապեսցի ոտիւք և ձեռաւք, մինչև ես վասն նորա ծանուցից կայսեր»։

Ի նմին ժամու հրամայէ գրել նա յետկար,

և արձակէ զմի ի սուրհանդակացն առ Մուշեղ. «Փութով եկ՝ ասէ, գործ հասեալ է կարի կարեւորագոյն»։ Եւ հրաման ետ փուշտիպանացն իւրոց և ասէ. «Պատրաստ լերուք՝ զի յորժամ եկեսցէ նա, և ես ձեռամբ նշանակեցից ձեզ, յանկարծակի զձերս նորա յետս կալարուք և կապեցէք զնա. բայց պատրաստ լիջիք՝ զի այր քաջ է նա, և մի՝ կամ թէ ինքն մեռանի, կամ զիս սպանանէ։ Եւ թէ իսկ ինքն մեռանի, ես պատասխանի տաց կայսեր վասն նորա»։ Սոյնպէս և բարապանացն պատուէր ետ՝ ասէ. «Զգոյշ կացէք, զի յորժամ եկեսցէ Մուշեղ ի դուռն խորանին իմոյ՝ ի բաց լուծէք ի միջոյ նորա զկամարն և զսուսերն՝ ասելով եթէ. «ոչ է աւրէն զինու հանդերձ մտանել յանդիման թագաւորին»։

Արդ՝ մինչդեռ առնէր նա համար հանդիսի ի մէջ զաւրաց իւրոց՝ տեսանել զթիւ կենդանեացն և մեռելոց՝ որք անկան ի պատերազմին, եկն եկաց առաջի նորա սուրհանդակն և ասաց նմա ողջոյն, և մատոյց նմա զթուղթն։ Իսկ Մուշեղայ առեալ զթուղթն՝ ասէ ցնա, եթէ «ողջո՞յն իցէ և խաղաղութի՞ւն»։ Պատասխանի ետ սուրհանդակն՝ և ասէ. «Ողջոյն է և խաղաղութիւն, և զայլազգ ինչ ես ոչ գիտեմ, բայց միայն զի հրամայեցաւ ինձ փութանակի կոչել զքեզ»։ Եւ անդէն վաղվաղակի պատրաստեցաւ նա որպէս ի պատերազմ, քանզի արկ ի միտս իւր՝ եթէ գուցէ

հասեալ ինչ իցէ գործ պատերազմի, կամ շնորհ ինչ իցէ պարգեւս փոխանակ վաստակոցն։ Եւ առնու ընդ իւր արս երկու հազարս ի սպառազինաց՝ յազատաց և յանազատաց, զորս գիտէր արժանիս պատւոյ, և վստահ էր հեծելութեամբ։

Էր գրեալ վասն նորա և առ պատրիկն Յովհան՝ զի արձակեսցէ զնա, և նորա դարձեալ հրաման տուեալ նմա երթալ այնպէս պատրաստութեամբ, և հրամայեաց ամենեցուն նոցա արկանել զանձամբ իւրաքանչիւր զսպառազինութիւն իւր. վառեցան և գնացին։

Եւ եղև իբրև մտին ի մէջ բանակին, և մերձ եղեն մաւտ ի Մաշկապերճանն արքունի։ Եւ հրաման հասանէր ընդդէմ, մի՛ երթալ այնքան բազմութեամբ, այլ բացագոյն նստուցանել զնոսա, և նմա սակաւ արամբք յանդիման լինել արքայի։

Եւ նորա ոչ առեալ յանձին առնել այնպէս, այլ գնաց զաւրութեամբք մաւտ ի դուռն խորանին արքունի, և զաւրն պարսից կացին շուրջ զխորանաւն սպառազինեալք. և իջեալ յերիվարէն՝ գնաց ի դուռն խորանին ծ արամբք։ Եւ զաւրն կային այնպէս զինեալ իւրաքանչիւր երիվարաւք։ Զարհուրեցաւ արքայն, և ամենայն զաւրք նորա. և սկսան ծածկել զնենգութիւնն. և եղև իբրև եհաս ի դուռն խորանին՝ մատեան բարապանք դրանն և ասեն. «Լո՛յծ զկամարդ և զսուսերդ ի միջոյ քումմէ, և մերկեա՛ ի քէն

զսպառազինութիւն քո. զի ոչ է աւրէն մտանել առաջի թագաւորին»: Անկաւ կասկած ի սիրտ նորա, սկսաւ պատրաստել և կազմել զինքն յարձակումն: Պատասխանի ետ բարապանացն և ասէ. «Ի մանկութենէ իմմէ սննդակից եղեալ եմ թագաւորաց ի նախնեաց իմոց և հաւուց, և այժմ հասեալ կամ ի դուռն արքունի, ի տեղի հանդիսի: Ես զսպառազինութիւնն իմ յանձնէ իմմէ ի բա՞ց մերկացայց, և լուծի՞ց զկամարս և զգաւտիս յանձնէ իմմէ. զոր ո՛չ երբէք լուծանեմ ի տան իմում յուրախութեան: Եւ կամ ի՞նձ արժան իցէ գիտել զչարութիւնդ պարսից»: Եւ հրաման ետ միում ընթանալ մանկանցն, զի յառաջ մատուսցէ զզաւրն յաւգնութիւն. և ինքն դարձաւ անդրէն ի գնալ:

Ազդ եղև արքայի՝ եթէ ոչ կամեցաւ այնպէս մտանել, այլ դարձաւ անդրէն և գնաց: Եւ սկսաւ թագաւորն ծածկել զչարութիւն և ասէ. «Թողցի արդ ի բաց խորհուրդն այն, թող եկեսցէ, որպէս և կամեսցի»: Քանզի ինքն մանուկ էր, և զաւրութիւն զաւրացն սուղ ինչ և սակաւ: Կոչեն անդրէն և ասեն. «Հրաման ետ մտանել որպէս և կամիս»: Նա դարձաւ և ասէ. «Թող տեսից՝ եթէ զի՞նչ բարի խորհեսցի տալ ինձ արքայից արքայ»:

Եւ եմուտ ի խորանն՝ զառաջեաւ արքայի եւթն արամբք, և խոնարհեցաւ ի վերայ երեսաց

իւրոց՝ երկիր եպագ արքայի, և կանգնեցաւ։ Եւ արքայ ոչ ձգեաց զձեռն իւր՝ որպէս երեկն և եռանդն՝ ընդունել զնա և ողջունել, այլ կայր այնպէս յամառացեալ. և անդ կացին այսպէս յամառացեալք։

Երկեաւ արքայ և զանգիտեաց, և ոչ կարաց տալ հրաման՝ որպէս խորհեալ էր, և ասել կամ մեծ կամ փոքր՝ յերկիւղէն։ Եւ նա դարձեալ ել փութանակի ի խորանէն. մատուցին նմա զերիվարն, հեծաւ և գնաց։ Եւ եղև իբրև ետես զայն արքայ՝ յոյժ երկեաւ, և կամեցաւ ծածկել զխաս իւր՝ յոտն եկաց ի գահոյիցն և ընթացաւ ի դուռն խորանին, ել արտաքս և արձակեաց զհետ նորա զոմն գլխաւոր նախարար։ Ետ տանել ադ կնքեալ՝ երդումն, և կոչել անդրէն, «զի պատուով և մեծարանաւք գնասցես, ասէ, աստի, և մի՛ համարիր ի միտս քո խորհել վասն քո [1] այլազգ ինչ»։

Եւ նորա ո՛չ կամեցեալ, այլ գնաց ճանապարհ իւր։ Արդ՝ նա խորհեալ նոցա զայս՝ յերրորդ ժամու դիմել ի վերայ խորանին և սպանանել զնա։ Եւ հրաման տուեալ զաւրացն՝ որք սպառազինեալ շուրջ զխորանաւն Խոսրովու կային։ Վասն զի եկեալ ի զգացումն և զաւրաց նորա զխռովութիւն դադարեցին ի խորհրդոյն և գնացին։

---

[1] Ի տպ. ոչ գոյր՝ խորհել վասն քո։

Եւ եղև մինչդեռ երթային նոքա, ի դիմի հարաւ սոցա մի ոմն ի փուշտիպանաց արքայի, և ըմբռնեալ զնա՝ առին գնացին ընդ իւրեանս. և սպառնացաւ նմա Մուշեղ երդմամբ, զի եթէ ոչ պատմեսցէ նմա զեղեալն վասն նորա խորհուրդ՝ մեռցի։

Իսկ նորա երդմնեցուցեալ զնա, զի մի տացէ զնա ի ձեռն արքայի. և պատմեաց զամենայն։ Ապա ի միում աւուրն ընդ առաւաւտնն գնացեալ ի դուռն պատրկին Յովհաննու, ետես զնա և խաւսեցաւ զամենայն չարիսն, ունելով զառաջի զոստիկան փուշտիպանն, որ և նա եկաց և խաւսեցաւ զամենայն եղեալ բանս։ Խռովեցան իշխանքն և ամենայն զաւրն. բայց և նոցա յիշելով զերդումն և զխռովութիւնն կայսերն, ոչ ինչ ի վեր հանին զբանսն։ Ասացին գրել առ Թագաւորն և ծանուցանել նմա զամենայն չարիսն։ Բայց ասաց Մուշեղ յանդիման ամենեցուն. «Եթէ ոչ մեռցի այրն այն, ի նորա ձեռն կորնչելոց է ամենայն երկիր Հռովմայեցւոց տէրութեանդ»։

Յայնմ ժամանակի գործեցին ընծայս մեծ, աւարամասն Թագաւորին իւրեանց՝ պսակս և խոյր մի ի զմրուխտս և ի մարգարիտս յաւրինեալս, ոսկի և արծաթ բազում յոյժ, և ականս պատուականս չքնաղագիւտ և հանդերձս պճնեալս ի զգեստուց՝ որ ի զարդ իւրեանց յաւրինեալ Թագաւորացն պարսից, երիվարս արքունականս հան-

դերձ իսկ արքունական կազմուածովքն. և գործեալ ընծայս։

Եւ առաքէն հանդերձ աւետաւոր հրովարտակաւ գրեալ և ամբաստանութիւն զարքայէն Խոսրովայ, և գումարեն զհետ ընծային հեծեալս չորեք հարիւր։ Ա՛զդ լինի Խոսրովայ՝ եթէ ետուն տանել ի գանձուց քոց՝ զանձ աւարամասն թագաւորին իւրեանց, և գրեցին զքէն ամբաստանութիւն։ Եւ ընդոստուցեալ դառնութեամբ Խոսրով, արձակէ զկնի նոցա զաւր, զի հասցեն ի ճանապարհի և կորուսցեն զՄուշեղն յանկարծաւրէն գաղտաբար. և առեալ զգանձն արքունի՝ հասուսցեն առ նա այնպէս իմն փութանակի։ Գիտացեալ և վասն իրացն և իշխանքն յունականք. և նոցա առաքեալ զկնի նոցա զաւր բռնագոյն. և հասեալ անդէն ի մաւտոյ, ոչ ապրեցուցին ի նոցանէ և ոչ մի։ Եւ բանն ի վեր ոչ ել. և զզաւրն տարեալ հասուցին ի պաղատն մեծաւ խնդութեամբ։

Ընկալաւ թագաւորն զընծայսն, և առաքէ հրովարտակ մեծաւ շնորհակալութեամբ ի ձեռն իւրոյ հրեշտակի, և գրէ առ նոսա ի բաց կալ ի խորհրդոյն յայնմանէ, զոր ամբաստանեալ զթագաւորէն։ «Եթէ ոչ զգուշանայցէք անձին դորա՝ ի ձեռաց ձերոց խնդրեցից զդա»։ Գրէ և առ արքայն՝ գոհութեամբ արձակել զամենեսեան։

Յայնժամ արքայն Խոսրով ետ ամենեցուն ըստ

իւրաքանչիւր չափուց՝ պարգևս, և արձակեաց յիւրմէ։ Եւ իւր չու արարեալ յԱտրպատականէ՝ գնաց յԱսորեստան՝ ի բնիկ Թագաւորական կայանս իւր։ Եւ հաստատեցաւ յաթոռ թագաւորութեան. և զխոստացեալ պարգևսն կայսերն կատարեաց. ետ նոցա զԱրուաստան զամենայն մինչև ցՄծբին, և զերկիրն Հայոց՝ որ ընդ իւրով իշխանութեամբ էր, զտուն Տանուտերական մինչև ցգետն Հուրազդան, և զգաւառն Կոտէից մինչև ցաւանն Գառնի և ցեզր ծովուն Բզնունեաց, և զԱռեստաւան և ցԳոգովիտ գաւառ մինչև ցՀացիւն և ցՄակու։ Եւ կողմն վասպուրական գնդին էր ի ծառայութիւն պարսից արքային։ Եւ ի նախարարացն Հայոց բազումք ի յունաց կողմանէ և սակաւք՝ ի պարսից։ Ետ և զմեծ մասն Վրաց աշխարհին մինչև ցՏփխիս քաղաք։ Բայց զՄուշեղն զայն կոչեաց Թագաւորն ի պաղատն. և այլ ոչ ետես զերկիրն։

## ԳԼՈՒԽ Դ.

*Բարեպաշտութիւն Շիրին թագուհւոյ՝ որ էր քրիստոնեայ կին Խոսրովայ արքայի. և հրովարտակ Խոսրովայ։*

Էին սորա կանայք բազում ըստ աւրինի մոգութեան իւրեանց, բայց առ սա կանայս քրիստոնեայս, և սորա կին քրիստոնեայ յոյժ գեղե-

ցիկ ի Խուժաստան աշխարհէ՝ անունն Շիրին։ Սա է Բամբիշն տիկնաց տիկին։ Շինեաց վանս և եկեղեցի մերձակայ արքունական կայենիցն, և բնակեցոյց ի նմա քահանայս և պաշտաւնեայս. կարգեաց ռոճիկս և հանդերձագինս յարքունուստ, զարդարեաց ոսկւով և արծաթով։ Եւ բարձրիգլուխ համարձակութեամբ քարոզէր զաւետարանն Արքայութեան ի դրանն արքունի. և ոչ ոք իշխէր ի մեծամեծաց քաւդէիցն բանալ զբերան իւր և ասել բան մի մեծ կամ փոքր ընդ քրիստոնէի։

Բայց ապա յորժամ լցան աւուրք, և եհաս ի կատարեալ ժամանակի, զբազումս ի մոգուց՝ որ դարձան ի քրիստոնէութիւն, սպանմամբ կատարեալ մարտիրոսութեամբ ի տեղիս տեղիս։

Եւ հրաման ետ՝ ասէ. «Մի՛ ոք յանաւրինաց իշխեսցէ դառնալ ի քրիստոնէութիւն, և մի՛ ոք ի քրիստոնէից դարձցի յանաւրինութիւն, այլ իւրաքանչիւր ոք յիւր հայրենի յաւրէնս պինդ կացցէ։ Եւ որ ոչն կամիցի ունել զհայրենի դէն, այլ ապստամբեալ ի բաց կացցէ յիւր հայրենի աւրինացն, մեռցի»։ Բայց ի մեծ տաւնի Ողոգոմեանն՝ երթային ի վանաց Շիրինայ, և որ այլ քրիստոնեայք ի դուռն սեննեկին արքայի՝ պաշտամամբ ընթեռնուին զաւետարան, և առնուին պարգևս ի Թագաւորէն, և գնային։ Եւ ոչ ոք իշխէր խաւսել ինչ ընդ նոսա։

# ԳԼՈՒԽ Է.

*Խնդրել կայսերն Մաւրկայ զմարմին Դանիէլի ի թագաւորէն Խոսրովայ։*

*Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ խնդրեաց թագաւորն յունաց ի թագաւորէն պարսից զմարմին մեռելոյ առն այնորիկ՝ որ կայր ի Շաւշ քաղաքի, ի գանձու արքային՝ եդեալ ի պղնձի աւազանի՝ զոր պարսիկն անուանէ Կաւ Խոսրով, և քրիստոնեայքն ասեն զԴանիէլի մարգարէի։ Եւ արքայն Խոսրով հրամայէ տալ նմա զխնդիրն։ Իսկ տիկինն Շիրին յոյժ խռովեալ էր ի վերայ իրացն. իբրև ոչինչ կարաց առնել զկամս թագաւորին դարձուցանել, հրաման ետ ամենայն քրիստոնէից աշխարհին՝ զի պահաւք և աղաւթիւք խնդրեսցեն ի Քրիստոսէ, զի մի՛ շարժեալ գնասցէ յաշխարհէն շնորհն այն։*

*Եւ ժողովեալ ամենայն երկիրն ի տեղին յայն, ուժգին խնդրուածովք և արտասուագոչ ողբովք խնդրէին ի Քրիստոսէ արգելուլ։ Եւ ածեալ նմա ջորիս, և բերեալ նմա դեսպակ արքունի, և առին գնացին։ Իսկ իբրև ելին ընդ դուռն քաղաքին, յանկարծաւրէն ցամաքեցան*

աղբիւրքն՝ որ ելանէին ի մէջ քաղաքին և հո-
սէին արտաքս. և ամենայն երկիրն վայիւ և ա-
ղաղակաւ գնային զհետ նորա։

Եւ եղև իբրև մեկնեցաւ ի քաղաքէն ասպա-
րէզս երիս՝ յանկարծակի զտեղի առին ջորիքն՝
որ ի դեսպակին. և ոչ ոք կարաց զնոսա շարժել
ի տեղւոջէն։ Եւ դարձեալ անդրէն յանկարծակի
բռնաբար սուր սուր հարկանելով զամբոխն պա-
տառեցին և զգունդն բռնութեամբ, և ընթացան
անդրէն ի քաղաքն. և եղև իբրև մտին ընդ դուռն
քաղաքին՝ անդրէն արձակեալ բղխեցին ջուրք
գետոյն, և հոսէին ջուրքն արտաքս լի յորձա-
նաւք ջուրց իբրև զառաջինն։

Գիտութիւն արարին կայսերն վասն Նորա
փութանակի։ Եւ Նորա տուեալ տանել Նմա պա-
տարագս, հրամայեաց առնել որպէս և Նայն կա-
մեցաւ. թողին զնա և գնացին ի բաց։

---

## ԳԼՈՒԽ Ջ.

*Գիր ապստամբութեան Մաւրկայ առ Խոսրով վասն իշխանացն և զօրացն Հայաստանի· և առաջարկութիւն գիւր մասինն հեռացուցանել ի Թրակէ· և նա զՊարսից մասինն՝ յԱրևելս· փախուստ յունական մասին իշխանաց առ Պարսս· առաքել Խոսրովայ զՀամարակարն գանձու բազմաւ ի մասն Յունաց զբազումս յանկուցանել յինքն· յափշտակել իշխանաց զգանձն· պատրաստութիւն պատերազմի· պարտգամ· քակտումն իշխանաց ի միմեանց· երթալ ոմանց առ Յոյնս և ոմանց՝ առ Պարսիկն։*

Յայնմ ժամանակի թագաւորն յունաց Մաւրիկ հրամայէ գրել առ թագաւորն պարսից գիր ամբաստան վասն իշխանացն ամենայն Հայաստանեաց և զաւրաց նոցա։ «Ազգ մի խոտոր և անհնազանդ են, ասէ, կան ի միջի մերում և պղտորեն։ Բայց եկ՝ ասէ, ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ· և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրևելս տանել։ Զի եթէ մեռանին թշնամիք մեռանին· և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն· և մեք կեցցուք խաղաղութեամբ։ Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին, մեզ հանգչել ոչ լինի»։

Միաբանեցան երկոքին· և սկսաւ կայսրն

հրաման տալ, զի ժողովեսցեն զամենեսեանսն և ի Թրակէ գումարեսցեն. և սաստիկ տագնապէր՝ հրամանն կատարէր։ Եւ սկսան փախչել ի կողմանէն յայնմանէ, և գալ ի ծառայութիւն պարսից, մանաւանդ՝ որոց երկիրն ընդ նորա իշխանութեամբ էր։ Իսկ նա զամենեսեան ընդունէր մեծարանաւք և մեծամեծ պարգևս քան զկայսր պարգևէր նոցա. մանաւանդ իբրև տեսանէր զփախուստ նոցա ի կայսերէն՝ ևս առաւել մեծապէս սիրով կամէր կորզել առ ինքն։

Արդ՝ իբրև տեսանէր Թագաւորն պարսից զմարդկան փախուստ ի կայսերէն՝ արձակոյր ի Հայս զՎասպուրականն Համարակարն հանդերձ գանձու բազմաւ և մեծամեծ պատուովք. զի այնպէս նուաճեալ ածցէ զնոսա ի ծառայութիւն իւր. և գնայր Համարակարն ի Հայս՝ և ընդ նմա գանձ ուղտաւք բազմաւք։

Եւ մինչ Սամուէլ Վահևունի հանդերձ այլովք ընկերովք իւրեանց գնացին ընդդէմ նորա և պատահեալ ի սահմանս Ատրպատական աշխարհին, հանին զգանձն, և համարակարին զաւեն պարգև շնորհեցին։ Եւ էին այսոքիկ. Ատատ Խոռխոռունի, Սամուէլ Վահևունի և Մամակ Մամիկոնեան, Ստեփաննոս Սիւնի և Կոտիտ[1] Ամա-

---

[1] Ի ձեռ. օրին. էր՝ Կատից։

տունեաց ամէր և Թէոդոս Տրպատունի, և հեծեալք
իբրև երկու հազարք։ Եւ զայս եդեալ ի մտի՝
եթէ զանձուդ այդորիկ զՀայաստան մեր արաս-
ցուք. և առեալ ի նոցանէ աւգնութիւն՝ պատե-
րազմեսցուք ընդ երկոսին Թագաւորսդ, և բռ-
նութեամբ զերկիրդ մեր ի մեզ դարձուսցուք։ Եւ
հասեալ ի Նախճաւան քաղաք, քակտեցան խոր-
հուրդք միաբանութեան. ոչ հաւատալով միմեանց
ի բաց բաժանեցին զգանձ և բանակեցան, և
նստան ի շամբին՝ որ կոչի Ճահուկ։ Նա աւանիկ
համարակարն երթեալ ի դուռն՝ պատմեաց Թա-
գաւորին զամենայն եղեալսն, և բանք կայսերն
արդարացան։

Յայնժամ հրամայէ գրել Խոսրով արքայ
հրովարտակ առ կայսր, և խնդրէ զաւր յաւգնա-
կանութիւն։ Եւ արձակէ անդրէն զվասպուրական
համարակարն ի Հայս։ Յայնժամ հրամայէ Հերակ-
ղի զաւրավարի, որ նստէր ի Հայաստան երկրի,
առնուլ զզաւրս իւր, և գնալ ի վերայ նոցա ի
պատերազմ։ Եւ արդ՝ երթեալ միացան երկուց
Թագաւորացն զաւր ի Նախճաւանն քաղաքի, և
եղև ի գումարել ի վերայ նոցա զաւրացս այսո-
ցիկ, սկսան արձակել առ նոսա պատգամս, զի
մի լիցի պատերազմ և արիւնհեղութիւն ի մէջ
քրիստոնէից, այլ ի բաց կացցեն ի յամառու-
թենէն յայնմանէ, և նուաճեսցին անդրէն ի ծա-
ռայութիւն Թագաւորին, և երդմամբ հաստա-

տեալ առ նոսա՝ եթէ ոչ երկիւղ է ձեզ ի Թագաւորէն։ Ասէր և համարակարն՝ «եթէ զխս արքայից արքայ առ ձեզ արձակեաց, և ես ձեզ խսկ բերի զգանձն, և չիք ինչ ձեզ երկիւղ յարքայից արքայէ» և ցուցանէր նոցա երդումն ըստ աւրինի իւրեանց։

Սկսան նոքա քակտել և բաժանել ի միմեանց. ի բաց եկաց ի սոցանէ Մամակն Մամիկոնեան և Կոտիտն Ամատունեաց տէրն և Ստեփաննոս և այլք ևս ընդ նոսա՝ զանձինս անփյաս ցուցանելով համարակարին, նուաճեցին զզաւրս իւրեանց ի ծառայութիւն արքային պարսից։ Իսկ Ատատն Խորխոռունի և Սամուէլն Վահեւունի զաւրաւքն իւրեանց փախստական գնացին ընդ քաղաքագեւղն կոչեցեալ Սաւդայ, հասանէին յաշխարհն Աղուանից ի Հոնս դէմս արարեալ, և անցեալ ընդ գետոյն՝ որ կոչի Կուր, բանակէին առ գետեզերբն։

Հասեալ և սոքա յափն գետոյն՝ բանակէին աստի կողմանէ։ Եւ իբրև ոչ կարացին նոքա վստահանալ ի ճամբարսն Հոնաց, յայնժամ ապա երդումն խնդրեալ ի Թագաւորէն յունաց, և գնացին ի ծառայութիւն նորա։ Գնացին ոմանք առ համարակարն, և դարձան անդրէն յերկիրն իւրեանց։ Եւ ժողովեալ համարակարին զամենայն իշխանս և զզաւրս Հայոց, որ ի պարսից կողմանէ ողոքաւ և ևս քաղցր բանիւք յորդորեալ

զամենեսեանսն միաբանեաց, արար գունդս գունդըս։ Եթող անդրէն յաշխարհին սակաւուք՝ և գնաց. «մինչև ես ծանուցից՝ ասէ, վասն ձեր, և հասցէ անտի հրաման դադարել անդ»։ Զի զմտաւ խոկ ածեալ է նորա և զայլոց զայն առ նոսա, և զբազմանալն։

Իսկ զԱտատն Խորխոռունի փութանակի հանդերձ զաւրուն իւրոյ կոչէ Թագաւորն ի պալատն, և մեծարէ շքով և պատուով, և տայ ինչս բազումս, և գումարէ ի Թրակացիս։

## ԳԼՈՒԽ Է.

*Իշխանք հայոց Յունական մասին ապստամբեն. պատերազմ. մահ ոմանց ի պատերազմի, և երկուցն գըլխատիլ։*

Ապստամբէին դարձեալ ի կողմանց յունաց սեպուհքն Վահևունիք՝ Սամուէլն զոր ասացի և Սարգիս և Վարազ Ներսէհ և Ներսէս և Վստամ և Թէոդորոս Տրպատունի։ Եւ խորհէին սպանանել զկորատորն՝ մինչդեռ նա նստէր ի ջերմի՝ բժշկել ի հիւանդութենէ՝ մերձ ի քաղաքն Կարնոյ։ Իսկ նա ուստեմն իրազեկ եղեալ՝ փախստական ի քաղաքն անկանէր. և նոցա արշաւեալ ի ջերմուկն՝ ոչ դիպան նմա։ Ապա աւարեալ զոր ինչ ի դիմի հարկանէր, առին աւար բազում, և

գնացին յերկիրն ամուր Կորդուաց. և կամեցեալ զամուրսն զայն ունել։

Ապա զհետ նոցա լինէին զաւրն յունաց՝ Հերակղ զաւրավար և Համազասպ Մամիկոնեան. և նոցա հասեալ մերձ յամուրն, անցին զգետովն՝ որ կոչի Ջերմայ ընդ կամուրջն՝ որ անուանեալ կոչի Դանիէլի կամուրջ[1], և ի բաց ընկեցին զկամուրջն և ամրացեալք յանձուկն պահէին զտեղի կամրջին. կային առ գետեզերբն, և խորհէին՝ թէ զի՞նչ արժան է առնել։ Եւ իբրև ոչ գտին հուն, և կամեցան դառնալ ի բաց. յանկարծակի ի դիմի հարկանէր նոցա երէց մի ուղևոր. և կալեալ նոցա զերէցն՝ ասեն նմա. «Ցո՛յց մեզ զհուն գետոյս, ապա թէ ոչ՝ սպանցուք զքեզ»։ Եւ նորա առեալ զզաւրն՝ եցոյց զհունն ի ներքոյ անդ։ Եւ անցեալ զաւրն ամենայն զգետովն. ոմանք ի թիկանց զամուրն պահէին, և ոմանք զկամրջախելն և զձորաբերանս ունէին, և այլք մտեալ յամուրն ընդ նոսա մարտնչէին, և չարաչար լինէր կոտորածն. բայց սակայն սպառէին զնոսա։

Արդ՝ զՆերսէհ և զՎստամ և զՍամուէլ սպանին ի պատերազմին՝ որք ոչ սակաւ արարին շուրջ զնովաւ զկոտորածն. բայց զՍարգիս և զՎարազ Ներսէհ ձերբակալ արարին հանդերձ այլովք ոմամբք. և տարեալ ի Կարնոյ քաղաք, և

---

[1] Ի ձեռ. օրին. էր՝ կարմունջ։

ապա գլխատեցին։ Որ ի ժամ գլխատելոյն ասէր Վարազ Ներսեհ ցՍարգիս. «Վիճակ արկցուք թէ՝ զո՞ առաջի սպանցեն»։ Իսկ Սարգիս ասէր. «Ես այր ծեր եմ և մեղաւոր, աղաչեմ զձեզ՝ զպագնոյդ այդ ինձ շնորհեցէք. թո՛ղ զի փոքր մի հանգեայց, և ոչ իսկ տեսից զմահն ձեր»։ Ապա զնա յառաջ գլխատեցին։ Բայց Թէոդորոսն Տրպատունի փըր-ծեալ փախստական գնաց ի դուռն արքային պար-սից։ Եւ նորա կապել հրամայեաց և տալ ի ձեռս թշնամեացն, զի մեռցի. և սաստիկ աղետիւք վտանգեցոյց։

Եւ թշնամիքն՝ որ էին ի Թրակացւոց կողմա-նէն, աւար առին զթագաւորութեան, անհուն զաւրացն բազմութեամբ ի ձեռն հապճեպ պա-տերազմացն՝ զթագաւորութիւնն և զազգս Հռով-մայեցւոց տէրութեանն կամեցեալ բառնալ, և թագաւորութեան տիրել անձամբ ի վերայ Թա-գաւորանիստ քաղաքին։

---

## ԳԼՈՒԽ Ը.

*Հրաման ի կայսերէն ժողովել արեւելեան զօրաց իւրոց և Հայաստանեաց, անցանել ընդ ծով և գումարիլ ի Թրակիա ընդդէմ Թշնամւոյն. ընտրիլ Մուշեղայ նոցա զօրագլուխ. յաղթել, ապա յաղթիլ, և ըմբռնիլ Մուշեղայ և սպանանիլ։*

Յայնժամ Թագաւորն յունաց հրաման տայր ժողովել զաւրաց իւրոց զամենայն՝ որ յարեւելից կողմանէ, վասն զի խաղաղութիւն էր, և բանք ինչ ոչ գոյին նորա ընդ Ասորիսն ի պարսից տէրութենէն։ Հրաման ետ անցուցանել զամենեսեան ընդ ծով, և գումարել ի կողմանս Թրակացւոց ընդ դէմ Թշնամւոյն։ Հրաման ետ ժողովել դարձեալ զամենայն այր և ձի ի Հայաստանեայց և զիշխանս նախարարացն, որք հմուտ էին և կարող զդէմ ունել՝ կռուել ռազմի նիզակամուխ ճակատի։ Եւ հրաման ետ դարձեալ վերըստին զաւր հանել յաշխարհէն Հայոց բազում յոյժ, զամենեսեան կամով և ընտրով հասակի. կազմել գունդս զարդս, և զինու վառեալ և անցուցանել զամենեսեանսն յաշխարհն Թրակացւոց ընդդէմ Թշնամւոյն. և Մուշեղ Մամիկոնեան զաւրագլուխ նոցա։

Արդ՝ երթեալ նոցա ի վերայ ազգացն՝ որ ունէին զկողմանս արեւմտից ի յեզր մեծի գետոյն Դանուբայ։ Եւ եղև պատերազմ սաստիկ ի վերայ երեսաց երկրին այնորիկ. խորտակեցաւ զաւրութիւն թշնամւոյն այնորիկ առաջի երեսաց զաւրացն յունաց, և փախստական արարեալ յայնկոյս գետոյն Դանուբայ։ Եւ ինքեանք մեծաւ յաղթութեամբ հրեշտակ աւետաւոր կայսերն և ամենայն պաղատային փութանակի առաքէին։

Եւ գնացեալ ինքեանք ի ներքին կողմն աշխարհաց, և անցին ի նեղ ինչ տեղիս, աւերէին զերկիրն ամենայն, և հասեալ ի դիմին՝ եղև պատերազմ մեծ, հարին զյոյնն և խորտակեցին կործանմամբ մեծաւ, և փախստական վարեցին առաջի իւրեանց։ Եւ կալեալ զնեղ վայրն առաջի նոցա թշնամւոյն՝ վանեցին զնոսա սրով սուսերի, և ճողոպրեալ հազիւ հազ զերծանէին յամուրս աշխարհին Թրակացւոց։ Եւ ձերբակալ արարին զՄուշեղն Մամիկոնեան, կապեցին զբարձրաբերձ տնկոյ անտառին, և սպանին։ Եւ բազմութիւն նախարարացն և զաւրացն Հայաստանեայց յաւուր յայնմիկ կործանեալ սատակեցան։

Ապա վերստին դարձեալ այլ զաւրս գումարեալ, հրամայեաց թագաւորն միայն զգուշանալ անձանց։

## ԳԼՈՒԽ Թ.

Հրաման կայսերն Մօրկայ քարոզել զժողովն Քաղկեդոնի ի Հայս. բաժանումն Աթոռոյ Հայրապետութեանն։

Հրաման ելանէ դարձեալ ի կայսերէն վերստին այլ՝ քարոզել զժողովն Քաղկեդոնի յամենայն եկեղեցիս Հայաստան երկրի, և միաւորել հաղորդութեամբ ընդ զաւր իւր։ Իսկ մանկունք ուխտի եկեղեցեացն Հայոց փախստական գնացեալ յաւտար երկիր վարէին։ Եւ բազմաց առ ոչինչ համարեալ զհրամանն՝ զտեղի կալան և անշարժ մնացին։ Եւ բազումք հաւանեալ փառասիրութեամբ հաղորդեալ միաւորեցան աւրինաւորք։ Բաժանեցաւ ապա և Աթոռ կաթողիկոսութեանն յերկուս. անուն միոյն Մովսէս. և միւսոյն՝ Յոհան։ Մովսէս ի պարսից կողմանէ. և Յովհան՝ յունաց։

Եւ Յովհան ընդ նոսա հաղորդեալ միաւորեցաւ, բայց Մովսէս ամենևին ոչ լինէր ի նոսա հուպ. և սպասք ամենայն եկեղեցւոյն՝ որ ի Դրւնի սրբոյն Գրիգորի, զոր տարան եդեալ ի պահեստի ի Կարնոյ քաղաքի։ Ուստի վարեցաւ ինքն այսուհետև ի գերութիւն յերկիրն պարսից՝ յԱհմատան Շահաստան։

# ԳԼՈՒԽ Ժ.

*Հրաման դարձեալ ի կայսերէն ժողովել զայրեւձի ի Հայոց. տանելն զզօրս Մամիկոնեան Սահակայ և Սմբատայ Բագրատունւոյ. դառնալն Սմբատայ ի Հայս. խորհուրդ նախարարացն Հայոց. երթալ Սմբատայ առ կայսրն եօթն արամբք. ընկենուլ ի կրկէսն. քաջութիւն Սմբատայ անդ. ազատիլ և ապա աքսորիլն յԱփրիկէ։*

*Յայնմ ժամանակի դարձեալ հրաման ելանէր ի կայսերէն՝ վերստին քննել և խնդրել յաշխարհէն Հայոց զայր և զձի արս ընտիրս սպառազէնս բռ հեծելոց, և տալ յերկուս արս հաւատարիմս և արձակել մեծաւստիպով։*

*Յայնժամ ի խնդիր ելեալ ընտրեցին արս բռ սպառազէնս և ետուն յերկուս արս հաւատարիմս։ Մի հազար ցՍահակ Մամիկոնեան. և մի հազար ի ձեռն Սմբատայ Բագրատունւոյ որդւոյ Մանուէլի։ Եւ ոչ ընդ մի ճանապարհ արարեալ նոցա զչուն, այլ Սահակ Մամիկոնեան արձակեն միով հազարաւ ընդ Սեբաստիա, և զՍմբատ Բագրատունի միւսովն ընդ կողմանս Խաղտեաց։ Եւ Սահակ գնացեալ տանի հասուցանել զգաւրն ի պաղատն, և յանդիման լինի թագաւորին։*

*Իսկ Սմբատ հասեալ ի Խաղտիս՝ բռնանայ.*

քանզի երկեաւ զաւրն ի ճանապարհի, ոչ կամեցեալ երթալ ի տեղին յայն զհետ Թագաւորին խնդրոյ։ Ազդ լինի Թագաւորին եղեալ իրքն. ապա ի ձեռն հրովարտակաց և հաւատարիմ հրեշտակաց երդմամբ խոստանայ մեծաւ պատուով փութանակի արձակել յերկիրն իւր։ Եւ զաւրուն խոստանայր պատիւս մեծամեծս և ինչս, և այնպէս ողոքեալ ածէ ի հաշտութիւն. և գնացեալ միաբանութեամբ յանդիման լինէին Թագաւորին։ Եւ Թագաւորն սպառազինէ զզաւրն, և զարդարէ և գումարէ ի սահմանս Թրակացւոց, և զՍմբատ մեծաւ պատուով յուղարկէ անդրէն հասանել յերկիրն իւրեանց բազում ստացուածովք։

Ապա դարձեալ սկսան միաբանել մնացեալ նախարարքն Հայոց, և խնդրէին ի բաց կալ ի ծառայութենէն յունաց Թագաւորին. և նստուցանել իւրեանց Թագաւոր, զի մի՛ և նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ և մեռանիլ ի վերայ աշխարհին իւրեանց։ Եւ բանք խորհրդոց նոցա ոչ ունէր զմիաբանութիւն իրին յինքեանս հաստատեալ, այլ ոմանք ի նոցանէ շոգմոգութեամբ հասուցին զբանս խորհրդեանն յունկն Թագաւորին, և ինքեանք այսր և անդր սորսորեալ խուսափէին։

Յայնմ ժամանակի հասանէին դեսպանք արքունականք հրովարտակաւք, և կալեալ զՍմբատ հանդերձ այլովք ոմամբք եւթն արամբք և

տարան յանդիման Թագաւորին։ Եւ քննեալ զնոսա ի մէջ բազմամբոխ հրապարակին, հաստատաւ վճիռ ի վերայ նորա՝ մերկացուցանել և ընկենուլ ի կրկէսն[1]։ Եւ էր սա այր անհեթեթ անձամբ և գեղեցիկ տեսլեամբ, և բարձր և լայն հասակաւ, և բուռն և ցամաք մարմնով։ Յանժամ հզաւր և պատերազմող՝ որ ի բազում պատերազմունս ցուցեալ էր զիւր քաջութիւնն և զքոնութիւն։ Այս է զաւրութիւն նորա. քանզի անցեալ սա ի ներքոյ անտառախիտ մայրեաց և զաւրաւոր ծառոց՝ ի վերայ յաղթանդամ և հզաւր երիվարին, և յարձակեալ զոստով ծառոյն բուռն հարկանէր, և կծկեալ[2] ուժգին երանաւքն և ոտիւք զմէջ երիվարին վերացուցանէր երանաւքն ի գետնոյն. մինչ զի ամենայն զաւրացն տեսեալ ահաբեկ լինէին ի զարմացմանէ։

Եւ արդ՝ մերկացուցեալ զնա և ագուցեալ անդրավարտիս և ընկեցեալ ի կրկէսն, զի կուր լիցի գազանաց։ Եւ արձակեալ ի վերայ նորա արջ. և եղև՝ իբրև դիմեաց ի վերայ նորա արջն՝ նա աղաղակեաց մեծաձայն և ընթացաւ ի վերայ արջոյն, և զարկեալ բռամբ իւրով զճակատն, և անդրէն սատակէր զնա ի տեղւոջն։ Երկրորդ անգամ արձակեցին ի վերայ նորա ցուլ.

---

[1] Է κυνήγιον յոյն պատմագրաց։

[2] 'Ի տպ. էր՝ կծեալ։

իսկ նորա բուռն հարեալ զեղջերացն ցլուն, և զաղաղակ հզաւրին և յաւգնեալ ցուլն ի մարտին՝ գելոյր զպարանոցն և խորտակէր զերկուսին եղջիւրսն ի վերայ գլխոյն. Թուլանայր ցուլն և յետս գնալով ի փախուստ դառնայր։ Իսկ նորա զհետ ընթացեալ բուռն հարկանէր յագին, և ի կճղակն ազդեր միոյ ոտին նորա։ Եւ Թափեալ զկճղակսն Թնայր ի ձեռին նորա։ Եւ ցուլն գնայր ի նմանէ փախստական միով ոտամբն բոկ։ Դարձեալ երրորդ անգամ արձակեցին ի վերայ նորա առիւծ. և եղև՝ ի վերայ նորա յարձակել առիւծուն՝ այնպէս իմն յաջողեալ նմա ի տեառնէ, բուռն հարեալ յականջ առիւծուն՝ հեծաւ ի վերայ նորա։ Եւ անդէն բուռն հարեալ զխռչափողիցն՝ խեղդէր զառիւծն և սպանանէր։ Անդ աղաղակ բազում ամբոխին զերկիրն լնուին, և խնդրէին ի վերայ նորա ողորմուԹիւն ի Թագաւորէն։

Եւ նա վաստակեալ ի մարտին՝ նստէր ի վերայ առիւծուն մեռելոյ՝ զի փոքր մի հանգիցէ։ Անդ և կին Թագաւորին անկեալ առ ոտս նորա՝ խնդրէր ի վերայ նորա առնել ողորմուԹիւն. վասն զի սիրելի էր յառաջն այրն այն Թագաւորին և կնոջ նորա, և անուանեալ էր զնա իւր յորդեգիրս։ Եւ նա զարմացեալ ընդ զաւրուԹիւն և ընդ պնդուԹիւն առնն և լուեալ պաղատանաց կնոջն և ամենայն պազատոյն՝ հրամայեաց առնել ի վերայ նորա ողորմուԹիւն։

Յայնժամ տարան զնա ի լուացումն ի բաղանիս՝ լուացին զնա և զգեցուցին, և կոչեցին զնա յընթրիս արքունի, դարմանեցին զնա կերակրովք։ Եւ զկնի սուղ ինչ անցելոյ, մանաւանդ եթէ՝ ոչ ի չար ինչ կամաց թագաւորին, այլ ի նախանձորդաց չարախօսութենէ, հրամայէ հանել զնոսա ի նաւ և աքսորել ի կղզիս հեռաւորս. և ապա անտի հրամայէ անցուցանել յԱփրիկէ, և առնել նոցա անդ ի մէջ նոցա, և առնել զնա անդ ի մէջ զաւրացն՝ որ էին անդ ի բուն։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

*Կոչել յԱսորեստան և պատուել յարքայէն Խոսրովայ այնց նախարարաց, զոր Համարակարն եթող, և զօրաց նոցա նստել յԱսպահան։*

Իսկ որ ի պարսից կողմանէ էին նախարարքն և զաւրք, զորմէ վերագոյն ասացի՝ եթէ եթող համարակարն և գնաց. թէ մինչև հասցէ հրամանն արքունի։

Յայնժամ եկին հասին պէշասպիք հրովարտակաւք կոչել զնոսա միաբանութեամբ ի դուռն արքունի։ Եւ այսոքիկ են նախարարք և զաւրք՝ որ գնացին միաբանութեամբ հանդերձ իւրաքանչիւր գնդովք և դրաւշու ի դուռն թագաւորին պարսից Խոսրովու՝ յամի վեցերորդի թագաւո-

րութեան նորա։ Առաջին՝ Գագիկ Մամիկոնեան որդի Մանուէլի։ Երկրորդն՝ Պապ Բագրատունի որդի Աշոտայ ասպետի։ Երրորդն՝ Խոսրով Վահեւունեաց տէր։ Չորրորդն՝ Վարդան Արծրունի։ Հինգերորդն՝ Մամակ Մամիկոնեան։ Վեցերորդն՝ Ստեփաննոս Սիւնի։ Եւթներորդն՝ Կոտիտ Ամատունեաց տէր։ Եւ այլք ընդ նոսա ի նախարարաց։ Եւ հասեալ նոցա յԱսորեստան ի տեղի արքունական տանն և յանդիման եղեն թագաւորին։ Իսկ նա խնդութեամբ ընկալաւ զնոսա, և երևելի շքեղութեամբ մեծացոյց պատուովք․ և զմեծամեծ իշխանսն հրամայէ պահել ի դրանն արքունի, կարգել նոցա ռոճիկս յարքունուստ՝ տալ ի տունս իւրաքանչիւր, և կոչել յամենայն աւուր յընթրիս արքունի։ Եւ զաւրաց նոցա հրաման տայր նստել ի Սպահան աշխարհի, և դարմանել զնոսա սիրով և ամենայն կամակարութեամբ։

## ԳԼՈՒԽ ԺԲ․

*Դատել Խոսրովայ զքեռիս, սպանումն Վնդոյի, և Վըստամայ փախուցեալ պատերազմիլ ընդ Խոսրովայ, և իշխել ի կողմանս Պարթևաց։*

Յայնմ ժամանակի արկ ի միտս իւր Խոսրով արքայն՝ խնդրել զքէն վրիժուց մահուան հաւր իւրոյ ի ձեռաց նախարարացն այնոցիկ՝ որք սպանին զնա։ Եւ նախ կամի դատել զքեռիս

իւր։ Հրաման տայ ունել զՎնդոյ՝ զայն որ վերագոյն ասացի, կապել և սպանանել։ Իսկ եղբայր նորա Վստամ ոչ հանդիպեցաւ ի ժամուն յայնմիկ ի դրանն արքունի։ Եւ թէպէտ կոչեալ պատրանաւք և բազում ողոքանաւք, իբր թէ ոչ գիտիցէ նա զմահ եղբաւրն իւրոյ, սակայն նա ուստեմն իրազեկ եղեալ՝ ոչ անկանէր ի պատրանս խաբէութեան նորա, այլ ապստամբեալ անկանէր յամուր երկիրն Գեղմայ [1], և գումարեալ նուաճէր ընդ ինքեան զամենայն զաւրս նոցա։

Եւ ելեալ ի կողմն Ռէոյ ասպատակաւ, և աւար հարկանէր զամենայն զբազում աշխարհս թագաւորութեան պարսից։ Յայնժամ արքայն Խոսրով առնոյր զզաւրս իւր գնայր ի վերայ նորա. և զաւր կայսերն էր ընդ նմա։ Եւ մարտ եդեալ կռուով ընդ միմեանս յՌեհ աշխարհին։ Եւ յայնմ պատերազմի ոչ փոքր լինչ քաջութիւն գործեալ հայակոյտ զաւրացն. զոր տեսեալ թագաւորն՝ առաւել զարմանայր։

Իսկ իբրև ոչ կարաց ընդդէմ ժուժկալել ապստամբն՝ ի լեռնակողմն ապաւինեալ ամրանայր։ Եւ այնպէս ոչ յաղթահարեալք ի միմեանց՝

---

[1] Գեղում-Գեղմայ, Գեղումն-Գեղման, և Գեղմանց լեառն Խորենացւոյն Բ, 53, է արդի گیلان Գիլան գաւառն պարսից։ Գրի նոյնպէս՝ Գիլան, Գեղան, Գելմն, Գեաղմն և այլն։

ի բաց դառնային յիւրաքանչիւր տեղի։ Գնայր և ապստամբն Վստամ յամուր երկիրն Գեղմայ, որ և ապա անտի չու արարեալ երթայր ի կողմանս Պարթևաց, ի բուն երկիրն իւրոյ իշխանութեան, զի նուաճեցուսցէ ընդ ինքեան զզաւրս կողմանն այնորիկ և դարձցի նոյնպէս։

Եւ Թագաւորին չու արարեալ յԱսորեստան՝ հասանէր ի բուն կայանս իւրոյ արքունականս, և իշխանք նախարարացն Հայոց ընդ նմա։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

*Մահ իշխանացն Հայոց և ապստամբութիւն զօրացն նոցա որ ի Սպահան, և աւերել զերկիրն և յափշտակել զգանձն և երթալ առ Վստամ։*

Յայնժամ հասեալ մահ իշխանացն Հայոց, մեռան ի դրանն արքունի մահուամբ իւրեանց՝ Գագիկ Մամիկոնեան և Խոսրով Վահևունեաց տէր։ Իսկ Մամակ Մամիկոնեան արձակեալ ի Հայս վասն զաւրուն. և նորա իսկ և իսկ հասեալ ի Դրւին քաղաք, կեցեալ սակաւ ինչ աւուրս՝ մեռանէր։ Իսկ Ստեփաննոս Սիւնոյ պայքարեալ վասն տանուտէրութեան լեալ ընդ հաւրեղբաւրն իւրում Սահակայ։ Իսկ Սահակ գրէր ի վերայ նորա գիր մահապարտութեան, և կնքէր մատանեաւ իւրով և տանն եպիսկոպոսի, և մատանեաւք այլ ևս իշխանաց Սիւնեաց, յիշեցուցա-

նել Թագաւորին զվնաս նոցա ապստամբութեանն։

Յայնժամ հրաման ետ արքայն կապել զՍտեփաննոս և դնել ի բանտ. և գլխատեցին զնա ի բուն աղուհացն ի Զատկին շաբաթուն։ Եւ զհոտին արձակեալ ի Մրծուին դեսպան, հրաման ետ հեծելոցն դարանամուտ լինել ի դաշտի և աւազակաբար յարձակեալ ի վերայ՝ սպանին զնա ի ճանապարհին։ Իսկ զաւրն նոցա որ նստէին ի Սպահան աշխարհին, իբրև լուան զեղեալսն՝ ապստակեալ աւերեցին զերկիրն. առին զգանձն արքունի՝ որ ի տանն համարակարին՝ որ ի հարկաց ժողովեալ աշխարհին այնորիկ. և ճանապարհ կալեալ գնացին յամուրն ի յերկրին Գեղմայ։ Եւ զհետ սոցա հասանէին զաւրն պերոզական. զոմանս ի նոցանէ սրով սատակէին, և ոմանք ընդ իւրեանս իսկ սուր ելեալ՝ զի մի՛ լիցին ձերբակալեալ. և ոմանք մազապուր պրծեալ անկանէին յամուր երկրին Գեղմայ։ Եւ իբրև անդ ոչ դիպէին Վստամայ՝ ճանապարհ կալեալ գնացին յերկիրն Պարթևաց, և երթեալ կային առաջի նորա։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

*Տայ Խոսրով Սմբատայ Բագրատունւոյ զմարզպանութիւն Վրկանայ և մեծացուցանէ յոյժ. բարեկարգէ Սըմբատ զՎրկան աշխարհն հոգևոր և քաղաքական կըրթութեամբ։*

Եւ եղև ի ժամանակին յայնմիկ հաճոյանալ Սմբատայ Բագրատունւոյ յաչս Խոսրովու արքային. տայ ի նա զմարզպանութիւն երկրին Վրկանայ, առնէ զնա իշխան և ի վերայ ամենայն կողմանն այնորիկ, առաւել մեծացուցանէ պատուովք և իշխանութեամբ. ընու զնա ոսկւով և արծաթով, զարդարէ ի հանդերձս պատուականս և յերևելիս։ Տայ նմա զկամարն և զսուսերն լեալ հաւր իւրոյ Որմզդի. գումարէ ի ձեռս նորա զաւրս պարսիկս և զհայաստանեայս, հրամայէ գնալ յերկիր իշխանութեանն իւրոյ։

Էին ապստամբ ի ժամանակին յայնմիկ յարքայէն պարսից երկիրքն՝ որ անուանեալ կոչին Ամաղ, Ռոյեան, Ջրէճան [1] և Տապարստան. զորս

---

[1] Ի տպ. և ի ձեռ. օրին. էր՝ Ամազռոյեան կամ ամազռոյեան, Ջրէճան։ Մեք այսպէս եդաք, քանզի աստ իմանին գաւառք պարսից՝ آمل ، رویان ، جرجان (گرگان) և طبرستان (ورگان)։

վանեալ նորա պատերազմաւ՝ հարկանէր սրով սուսերի և ի ծառայութիւն արքային պարսից կացուցանէր, և շինեալ հաստատէր զամենայն երկիր իւրոյ մարզպանութեանն, քանզի էր երկիրն աւերակ։ Կային յաշխարհին յայնմիկ ազգն գերեալք ի Հայաստան երկրէ, և նստուցեալ առ ստորոտով անապատին մեծի՝ որ ի Թուրքաստանի և ի Դեյհաստան կողմանէ. զլեզու իւրեանց մոռացան և դպրութիւն նուազեալք և կարգ քահանայութեանն պակասեալք։ Կային անդ և ազգ Կոդրեացն՝ որք գերեցան մերովքն արամբք։ Կային անդ և յիշխանութենէն յունաց և յԱսորւոց կողմանէ ոչ սակաւք։

Էին ազգ Կոդրեացն անհաւատք, բայց ի վերայ քրիստոնէիցն ծագէր լոյս մեծ, հաստատէին ի հաւատս և ուսանէին դպրութիւն և լեզու, և հաստատէին ի կարգ քահանայութեան յաշխարհի անդ երէց ումն ի նոցանէ, որ անուանեալ կոչէր Աբել։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

*Գալ Վստամայ յԱսորեստան առ ի սպանանել զԽոսրով և առնուլ զթագաւորութիւնն. մեռանիլ ի Պարհովկայ արքայէն Քուշանաց խաբէութեամբ. պատերազմ փոքր ի Վրկան աշխարհի։*

Եւ եղև ի ժամանակին յայնմիկ նուաճեալ ընդ ինքեան Վստամայ զերկոսին թագաւորսն Քուշանաց՝ զՇաւղն [1] և զՊարհովկն. և գումարեալ զամենայն զաւրսն կողմանց Արևելից, դիմեաց գնաց յԱսորեստան զաւրու մեծաւ և հզաւր յոյժ՝ զի սպանցէ զԽոսրով և առցէ յինքն զթագաւորութիւն նորա։ Եւ զաւրք նորա կային յաջմէ և յահեկէ բացագոյն ի նմանէ. և արքայն Քուշանաց Պարհովկն ի թիկունս նորա զկնի նորա։ Յայնժամ արկեալ ի միտս իւր նենգաւոր արքային Քուշանաց՝ երթեալ անցանէր զառաջեաւ նորա սակաւ արամբք, և իջեալ յերիվարէն երկիրպագանէր ի վերայ երեսաց իւրոց եւթն անգամ։ Եւ մատուցեալ սա յառաջ, հրամայեաց հեծանել անդրէն յերիվարն իւր. և դարան գործեալ էր նմա ի ճանապարհի։ Ասէ Պարհովկն.

[1] Ի ձեռ. օր. էր Շօկն։

«Հրամայեա՛ արձակել ի քէն զամբոխդ, զի խաւսեցայց ինչ ընդ արքայի բանս ինչ խորհրդեան»։ Որոյ ո՛չ զգացեալ զնենգութիւն նորա՝ հրամայեաց մարդկանն երթալ յինքենէ։ Եւ եղև մինչդեռ երթային նոքա զճանապարհն և խաւսէին, եղին յանկարծակի դարանակալք ի տեղւոջէն իւրեանց, և հարեալ սպանին զՎստամ. և ժամադիր լեալ զաւրացն իւրոց Պարիովկն, ազդ առնէր նոցա փութանակի, և նոցա զհետ արշաւեալ հասանէին և կալեալ զկին Վստամայ և զամենայն աղխ և զկարասի նորա՝ դարձան փութանակի և գնացին։

Անագան ուրեմն և ապա յետ աւուրց ինչ անցելոց ազդ լինէր ամենայն զաւրացն. և նոքա լքեալք քակտեցան ի միմեանց, և մեկնեալ գնացին յիւրաքանչիւր ի տեղիս։ Գնացին նոյնպէս և զաւրն Գեղումն՝ որ ընդ նմա, եկեալ հասեալ փութանակի յամուրս աշխարհին իւրեանց։ Եւ արքն այնք հայաստանեայք՝ որ ապստամբեալ էին ի Սմբատայ և գնացեալք առ Վստամ ընդ նոսա։ Իբրև գնացին նոքա յերկիրն՝ որ կոչի Կոմշ [1] որ կայ անդրէն ի Թիկանց Վրկանի՝ յայնմ կողմանէ սարոյն՝ որ անցանէ ընդ մէջ նոցա, և հասին ի գեւղն՝ որ կոչին Խեկևանդ։

---

[1] Կոմշ կամ Կոշմ է قومش գաւառ Խորասան նահանգին պարսից։

Ընդդէմ ելանէր նոցա Շահր Վահրիճ, և Սմբատ Գուրկան մարզպան հանդերձ բազմաւ. և զաւրք Գեղումք ոչ աւելի քան զերկուս հազարս. և եղև պատերազմ ի վերայ երկրին այնորիկ, հարին զզաւրն պարսից, և փախստական արարեալ հալածական տանէին, զբազումս սպանեալ և զբազումս ձերբակալ արարեալ դարձան անդրէն, և բանակեցան մաւտ ի տեղի պատերազմին։ Եւ արքն այնք հայաստանեայք ընդ նոսա։ Մեռան բազումք և ի զաւրացն և ի հայաստանեայցն՝ որ ընդ մարզպանին Սմբատայ։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Գտանել մասն ի Խաչափայտէն։

Արդ՝ անկեալ ի միտ առն միոջ երազ իւր երեք ամսաւք յառաջ քան զլինիլն պատերազմին այնորիկ. և անուն առն Յովսէփ։ «Այր մի՝ասէ, սքանչելատեսիլ, եկեալ ասէր ցիս՝ պատերազմ լինի զկնի երից ամսոց, և անկանին բազումք ի պատերազմին, բայց դու երթիջի՛ր ի պատերազմին տեղի. և նշան լիցի քեզ այս՝ զի տեսանիցես այր մի անկեալ ի վերայ երեսաց երկրի, և մարմին նորա պաղպաջէ ի մէջ ամենայն դիականցն, և դու երթեալ որ ինչ գտանիցես առ նմա՝ առցես ի քեզ։ Եւ զգոյշ լեր, ասէ, մի՛ մոռանայցես. զի նա է սքանչելի»։ Եւ յայտուցեալ

գնաց. և իբրև հասեալ ի տեղին՝ գտանէ նոյնպէս, որպէս ի տեսլեանն ասացեալ էր, զի մերկացուցեալ էր զնա և զամենայն դիակունսն։ Եւ ունէր ընդ անձն շագոյր մաշկեղէն ընդ ուս իւր [1]։ Ապա կայր մարմին նորա ի մէջ դիականցն. և մատուցեալ՝ առ յինքն զշագոյրն. և տեսանէր զի կայր ի նմա տուփ մի արծաթեղէն և խաչ մի ի մէջ նորա՝ յորում կայր մասն մեծ ի տէրունեան խաչէն։ Կնքէր զինքն նովաւ, և առեալ գնայր զհետ ընկերաց իւրոց։

Չուեցին ամենայն զաւրքն ի տեղւոջէն յայնմանէ, և երթեալ հասանէին յամուրս աշխարհին իւրեանց։ Յայնժամ զՎահրիճն խնդրէր Թագաւորն ի տուն, և առ Սմբատ առաքէր շնորհակալութիւն մեծ, զի միամտութեամբ մարտուցեալ վանեցաւ, և ոչ եթող զտեղին. և ապա յետոյ ամենեցուն գնայր և նա փախստական։

---

[1] Ի ձեռ. օրին. էր՝ ուս ընդութիւր։

## ԳԼՈՒԽ ԺԷ.

*Պատերազմ Սմբատայ ընդ թշնամիսն և յաղթել. մեծանալ ի պատիւ և ի պարգևս պատուական՝ քան զամենայն մարզպանս. կարգել ի մատռուակութիւն արքայի՝ որդւոյ Սմբատայ Վարազտիրոց անուն. շինումն եկեղեցւոյ սրբոյն Գրիգորի. և նստել կաթուղիկոսի։*

Եւ եղև ի գալ միւս ամի՝ ժողովէին ամենայն գունդք թշնամեացն, և երթեալ բնակէին ի Տապարաստան գաւառի. գումարէ և Սմբատ զամենայն զաւրսն իւր և ի դիմի հարկանի նոցա պատերազմաւ։ Եւ մատնեաց տէր Աստուած զզաւրս թշնամեացն ի ձեռն Սմբատայ, և սատակեաց զամենայն սրով սուսերի. և ապրեալքն գնացին փախստական ի տեղիս իւրեանց։ Իսկ այնք՝ որ էին ընդ նոսա, խնդրեցին երդումն և պայման և եկին կացին առաջի Սմբատայ, և Յովսէփն այն ընդ նոսա։ Ապա ունէր Յովսէփ զգիւտն իւր առաջի նորա և պատմէ զտեսիլն, և բազում նշանս՝ զոր արարեալ էր ի մէջ բարբարոսացն, պատմէր։ Յայնժամ յարուցեալ Սմբատ ծունր կրկնէր առաջի նորա, և առեալ յինքն՝ կնքէր զինքն նովաւ. և տայր ի ձեռն Միհրուի ուրումն առն երանելւոյ՝ զոր և կարգեալ էր ի

վերայ տանն իւրոյ՝ հաւատարիմ և կամակատար. որ ի տանէ Դիմաքսենից, և տայր յեկեղեցին զոր ունէին երիցունք դրան նորա։

Յայնժամ առաքէ առ նա թագաւորն հրովարտակ մեծապէս գոհութեամբ, պատուով մեծացուցանէ ի վեր քան զամենայն մարզպանս իւրոյ տէրութեան առնելով, և զամենայն անաւթս մատռուակացն առաքէ նմա ոսկի, և հանդերձս թագաւորականս, արտախուրակս ոսկեզաւծս և զանգապանակ ակամբք և մարգարտովք կարգեալ. և զորդի նորա՝ որոյ անունն էր Վարազտիրոց՝ զոր էր սնուցեալ նորա իբրև զմի յորդւոց իւրոց և էր մեծարու ամենայն դրանն արքունի, կարգէր ի մատռուակութեան պաշտել զգինի անձին արքայի։

Եւ կալաւ Սմբատ մարզպանութիւն աշխարհին այնորիկ՝ ամս ը։ Յետ այսորիկ հրաման հասանէ կոչել զնա բազում մեծարանաւք ի դուռն արքունի, և հրամայէ երթալ տեսանել զերկիր իւր՝ յամի ութ և տասներորդի իւրոյ թագաւորութեան։

Արդ՝ խնդրէ նա հրաման յարքայէն շինել զեկեղեցի սրբոյն Գրիգորի՝ որ էր ի Դուին քաղաքի։ Եւ վասն զի վախճանեալ էր Մովսէս կաթուղիկոսն երանելի, և ո՛չ գոյր վարդապետ ի տեղւոջն յայնոսիկ. և նա փութացաւ խնդրել յարքայէն հրաման. և հասեալ հրաման յերկիր իւր,

առնէ խնդիր վասն Աթոռոյն մեծի, զի կարգեսցեն ի վերայ նորա տեսուչ խնամող եկեղեցւոյն և՝ առաջնորդ փրկութեան իւրոյ։ Եւ նստուցին զԱբրահամ զՄշտունեաց եպիսկոպոսն յաթոռ հայրապետութեան. ապա սկսան արկանել հիմն եկեղեցւոյն. ժողովեաց ճարտարապետս քարի, և կացոյց ի վե՛րայ նոցա հաւատարիմ գործակալս, և հրաման ետ փութանակի հաստուցանել ի կատարումն։ Եւ գրեաց գիր ամբաստանութեան բերդակալին և մարզպանին առ արքայ՝ եթէ. «կարի մե՛րձ է առ բերդն, և վնասակար է թշնամւոյ»։

Հրաման հասեալ յարքայէ՝ եթէ «բերդն քակեսցի, և եկեղեցին անդրէն ի նմին տեղւոջն շինեսցի», ամէն։

## ԳԼՈՒԽ ԺԸ.

*Կոչի Սմբատ ի դուռն Պարսից, և առնու զպատիւ տանուտէրութեան՝ որ կոչի Խոսրով Շնում. հալածէ զՔուշանս. սպանումն Դատոյեանայ. դարձեալ ելանէ Սմբատ ընդ նախարարս Հայոց ընդդէմ ազգին Քուշանաց և Հեփթաղեայ. ըմբշամարտութիւն ինչ. յաղթէ Սմբատ և երթայ մեծաւ շքով ի դուռն։*

Եւ եղև՝ յանցանել ձմերայնւոյն, ի գալ գարնայնւոյն ժամանակի, հասանէին սուրհանդակքն հրովարտակաւք, և կոչեն զնա մեծաւ շքեղութեամբ ի դուռն արքունի։ Եւ երթեալ յանդիման

լինել Թագաւորին ի մեծ անուանեալ դաստակերտին. և ելեալ արտաքս ի դահլիճն, նստի ի Բոք և ի Բահղակ [1]։

Յայնժամ տայ նմա արքայ պտանուտէրութիւն՝ որ անուանեալ կոչէր Խոսրով Շում [2]. զարդարէ ի չքնաղս, ի գոտի և ի պատմուճանս բեհեզեայս յոսկւոյ ածեալ, մեծացուցանէ ահագին պատուաւք ի ճամբար ականակապ և ի գումարտակ, և ի գահս արծաթիս, արձակու ի նա զվաճառն փոքր՝ զդիւան աշխարհին։ Տայ նմա զփողն չորեքձայնեանս և պահապանս դրանն նորա ի հետևակաց արքունի, գումարէ նմա զաւր մեծաւ ահեղութեամբ յարևելս յերկիրն Քուշանաց. և հրամայէ նմա առնել մարզպան՝ զոր ինքն կամեսցի։

Իսկ սորա գնացեալ անտի եկն եհաս [3] ի մերձակայ երկիրն առաջին իւրոյ իշխանութեան՝ Կոմշ, և կոչէ առ ինքն ի Վրկանէ զբուն ձեռական զաւրսն իւր զհամաշխարհիկ և գնայ ուղղորդ յԱրևելս։

Եւ այս են իշխանք նախարարացն Հայոց,

---

[1] Ի ձեռ. օրին. Պահղակ։

[2] Յօրին. մեր խառն էր գրեալ այս մականունն՝ մերթ Շնումն, և մերթ՝ Շում։

[3] 'Ի տպ. և 'ի ձեռ. օրին. էր՝ ի Հայս. մեք այսպէս պատշաճ վարկաք ուղղել։

որ ընդ նմա իւրաքանչիւր գնդաւ և դրաւշու. Վարազշապուհ Արծրունի, Սարգիս Տայեցի, Արտաւազդ և Վստամ և Հմայեակ Ապահունի, Մանուէլ Ապահունեաց տէր, Վռամ Գողթնեաց տէր, Սարգիս Դիմաքսեան, Սարգիս Տրպատունի, և այլք ի նախարարացն։ Եւ զաւրք նորա իբրև երկու հազար հեծեալ՝ յաշխարհէն։ Ետես զի զաւրքն Քուշանաց ասպատակեալ սփռեալ էին ի վերայ երեսաց ամենայն երկրին. և իբրև լուան զլուր համբաւոյ նորա՝ ժողովեցան և գնացին. և սա պնդեալ զհետ նոցա՝ փութանակի հասանէր։ Իսկ նոքա իբրև տեսին զնա զհետ նոցա հասեալ՝ դարձան ընդդէմ ճակատեցան, և բաղխեցին զմիմեանս պատերազմաւ. անտի ի փախուստ դարձան զաւրքն Քուշանաց, և վանեցան առաջի զաւրացն Խորով Շմոյ, բազումք ի նոցանէ մեռան և բազումք փախստական գնացին։ Եւ նա դարձեալ բանակեցաւ յԱպր Շահր և ի Տոս [1] գաւառի. և ինքն նստէր երեք հարիւր արամբք ի քաղաքագիւղն՝ որ կոչի Խռոխտ [2]։

Յայնժամ թագաւորքն Քուշանաց խնդրեցին իւրեանց օգնական ի մեծէն Խաքանայ՝ արքայէ

---

[1] Ի ձեռ. օրին. էր՝ յապր շահրտոս. ի տպ. յԱպր Շահրտոս. մեք այսպէս եդաք, զերկուս գաւառս որոշելով՝ զՏոս և զԱպրշահր, այսինքն طوس և ابرشهر։

[2] Ի ձեռ. օրին. Խրոխտ։

կողմանցն հիւսիսոյ։ Եւ եկն եւ ամբոխ լ բիւրոյ ի Թիկունս աւգնականութեան նոցա, անց զգետովն՝ որ կոչի Վեհռոտ, որ ելանէ ի Թուրքաստանէ յերկրէն Եւիղատայ, զԴիոնոս եփեստեայս, զՇամին և զԲրամին, և հոսի ի Հնդիկս [1]։ Եւ բնակեալ ի վերայ գետեզրն՝ ասպատակս սփռեցաւ ընդ արևմուտս, և հասեալ յանկարծակէն պատեցին պաշարեցին զգիւղաքաղաքն՝ զի ունէր գիւղն պատուար ամրութեան շուրջ զիւրեաւ շուրջանակի։

Յայնժամ հրաման տայ Սմբատ երեք հարիւրոցն անկանել ի բերդակն, որ ի մէջ գիւղաքաղաքին. և ինքն հեծեալ յերիվար երիւք արամբք՝ որոց էին անուանք այսոքիկ՝ Սարգիս Դիմաքսեան և Սարգիս Տրպատունին և ոմն մի ի զինակրացն գեղջու հեծեալ՝ անուն Սմբատիկ. և դիմեալ յանկարծակէն ի դուռն հասին՝ հատին զամբոխին զաւրութիւն և գնացին։ Եւ երեք հարիւրքն անկեալ ընդ բերդակն որ ի մէջ գիւղաքաղաքի՛ն՝ դիմեցին ի վերայ զաւրաց նորա։ Եւ էր հրամանատար զաւրուն նորա պարսիկ ոմն իշխան՝ անուն Դատոյեան՝ հրամանաւ արքունի։

Արդ՝ Թէպէտ և արձակէ առ նա Սմբատ՝ որ է Խոսրով Շումն, խոյս տալ ի նոցանէ, նորա ոչ

[1] Ի ձեռ. օրին. էր՝ որ ելանէ ի Թուրքաստան երկրէն և ի ղատայ. զդիոնոս, եփեստեայս, զշամբնն, զբրամբնն և հոսի ի հնդիկս։ Յայլում օրին. Բրահմին։

կամեցեալ լսել՝ ել ընդդէմ նոցա պատերազմաւ. և հարեալ նոցա զզաւրս պարսից՝ փախստական արարին զԴատոյեան, և ինքեանք ասպատակ սփռեալ՝ արշաւեցին մինչև ի սահմանս Ռէոյ և Ասպահան գաւառի, և աւերեալ զերկիրն ամենայն՝ դարձան անդրէն ի բանակն իւրեանց։ Եւ հրաման հասեալ ի մեծէն Խաքանայ առ Ճեմբուխ՝ անցին զգետովն և դարձան անդրէն ի տեղի իւրեանց։ Ապա հասեալ քննող յարքունուստ՝ Սմբատայ Դատոյենայ, այր ոմն գլխաւոր նախարար՝ որում անունն էր Շահրապան Բանդական։ Իսկ արդարացուցին զաւրն ամենայն մնացեալն զՍմբատ. և Դատոյեան տարեալ ի դուռն կապանաւք՝ սպանաւ յարքայէ։ Յայնժամ Սմբատ ժողովէ զզաւրն՝ և վերստին սպառազինէ, գումարէ և այլ զաւրս բազումս յաւգնութիւն իւր, և դիմեալ գնայր ի վերայ ազգին Քուշանաց և արքային Հեփթաղեայ։ Եւ նա անտի մեծաւ կազմութեամբ ընդդէմ ելանէ նորա. եկին հասին ի տեղի մարտին. և ճակատեցան դէմ յանդիման միմեանց։ Արդ՝ պատգամ յղէ առ Սմբատ արքայն Քուշանաց և ասէ. «Զի՞նչ աւգուտ է այսպէս խառնամբոխ մտանել ի պատերազմ՝ սպառել զաւրս մեր։ Եւ կամ ի՞ւ ծանիցի իմ և քո քաջութիւնդ։ Բայց ե՛կ ես և դու միայն մարտիցուք, ելեալ ես աստի ախոյեան, և դու՝ այտի. զի այսաւր ծանիցի քեզ քաջութիւն իմ»։ Իսկ նորա

ձեռն յանձին հարեալ՝ ասէ. «Անաւասիկ պատրաստ եմ ի մեռանիլ»։ Եւ յարձակեալք աստի և անտի մեծաւ տագնապաւ ի միմեանս հասանէին. և ի մէջ երկուց ճակատուցն մարտ եղեալ ընդ միմեանս կռուէին, և ոչ կարէին վաղվաղակի զմիմեանս յաղթահարել, զի արք սակաւազաւրք էին երկոքինն և կուռ սպառազինեալք։ Ապա ի վերուստ իմն հասեալ աւգնութիւն՝ պատառի վերտևամուտ բահլիկ [1] և կուռ զրահին ամրութիւն արքային Քուշանաց ի նիզակէն Սմբատայ. զի հարեալ զնա զաւրութեամբ դիաթաւալ յերկիր կործանէր։ Եւ զաւրքն նորա իբրև տեսին զարքայն իւրեանց՝ զարհուրեցան և դարձան և գնացին փախստական. և սոքա զհետ արշաւեալ հասին ասպատակաւ մինչև ի Բահլ շահաստան Քուշանաց՝ և աւար հարեալ զերկիրն ամենայն, զՀար և զՎատագէս, զՏոխորստայն [2] ամենայն և զՏաղական, առնոյր և զբերդս բազումս, և զնոյնս քանդեալ աւերէր և դառնայր յաղթութեամբ մեծաւ և բազում աւարաւ, և երթեալ բնակէր ի Մարգ և ի Մարգռոտ [3] գաւառի։

Յայնժամ հրեշտակք աւետաւորք փութով

[1] Թերևս 'ի վերտ բառէն բարդեալ, բահլիկ տարազ զրահագործութեան. տես և Խոր. Բ. 85։

[2] Ի տպ. էր՝ Տոխոտոստայն. իսկ ի ձեռ. օրին. այսպէս, ուղղագոյն طخارستان ։

[3] Այսինքն مرو և مرورود ի Խորասան նահանգի։

համանէին առ արքայն Խոսրով, լիով զեղեալսն պատմէին քաջութիւն։ Իսկ արքայն Խոսրով զուարճանայր զուարթանայր մեծաւ խնդութեամբ, և հրամայէր զարդարել փիղ մի մեծ և ածել ի դահլիճն. հրամայէ ևս հանել ի վեր զորդի նորա զՎարազտիրոց՝ որ անուանեալ կոչէր յարքայէ Ջավիտեան Խոսրով։ Եւ հրամայէ զանձս ցանել ամբոխին. և գրէր առ նա հրովարտակ մեծապէս գոհութեամբ. և կոչէր զնա ի դուռն մեծաւ պատուով և շքեղութեամբ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

*Մեռանիլ Սմբատայ խաղաղութեամբ. ապստամբիլ նախարարացն Հայոց ի Պարսից և երթալ ի ծառայութիւն Խաքանայ արքային հիւսիսոյ։*

Եւ եղև իբրև մերձեցաւ աւթիւ միով ի դուռն արքունի՝ հրաման տայ արքայ ամենայն նախարարացն և զաւրաց իւրոց ելանել ընդ առաջ նորա, և աւժանդակացն հրամայէ նժոյգ տանել ընդ առաջ նորա յախոռէ արքունի՝ արքունական կազմուածով. և երթեալ մեծաւ և շքով փառաւք յանդիման եղև թագաւորին։

Իսկ նորա տեսեալ խնդութեամբ ընկալաւ զնա, և ձգեաց առ նա զձեռն իւր. և նորա համբուրեալ զձեռն նորա՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց։ Յայնժամ ասէ ցնա արքայ. «Միամտութեամբ վաստակեցար, և մեք աւելի գոհ եմք

գքէն. և արդ՝ յայսմհետէ աւելի մի՛ լինիր աշխատ ելանել ի պատերազմն, այլ կաց աստէն մերձակայ, ա՛ռ, կե՛ր և ա՛րբ, և ուրախութեան մերում պարապեա՛»։ Եւ էր նա երրորդ նախարար ի տաճարի թագաւորութեանն Խոսրովայ արքայի, և կացեալ ժամանակս սակաւս՝ վախճանեցաւ յամս իբր երրորդի թագաւորութեանն նորա։ Իսկ զմարմին նորա մեռեալ՝ տարան ի Հայաստան երկիր ի բնիկ հանգստարանսն, և եդին ի տապանի ի գիւղն Դարիւնս՝ որ է ի Գոգովիտ գաւառի։

Ապա ապստամբեալ գնացին ի ծառայութիւն մեծին Խաքանայ արքայի կողմանցն հիւսիսոյ, ի ձեռն Ճենաստանն Ճեպետխոյ. ապա գնացեալ յարևելից յարևմուտս ընդ կողմանս հիւսիսոյ խառնել ընդ զաւրացն Ճեպետխոյն այնորիկ, հրամանաւ թագաւորին իւրեանց Խաքանայ։ Եւ ելեալ ընդ պահորակն Ճորայ զաւրաւք բազմութեան՝ գնացին յաւգնականութիւն թագաւորին յունաց։

## ԳԼՈՒԽ Ի.

*Ապստամբութիւն Ատատ Խոռխոռունւոյ Պատրկի մեծի և մահ նորա. սահմանակալքն Պարսից և Յունաց։*

Իսկ արդ՝ զի՞նչ ևս զԱտատ Խորխոռունւոյ ասացից և զմիւսանգամ զապստամբութիւնն։ Էր սա պատրիկ մեծ, վասն որոյ հրաման տայ թա-

զաւուրն կոչել զնա ի պաղատն, և գնացեալ ի նա եւթանասուն արամբք. և մեծարեալ շքեղացոյց զնա և որ ընդ նմայն, ըստ արժանի վայելչական ընդունելութեանն: Ետ նմա անուեթս ոսկիս և արծաթիս և գանձս բազում յոյժ:

Եւ հրաման ետ երթալ ի Թիրակ առ զաւրս իւր. և հրաժարեալ ի Թագաւորէն և գնաց: Եւ մինչդեռ գնայր ի ճանապարհի՝ արկ նա ի միտս իւր ապստամբել, և գնալ առ Թագաւորն պարսից: Եւ ստերիւրեալ ի ճանապարհէն՝ գնաց ի ծովեզերն և հանդիպեալ նաւի միոջ՝ ասէ նաւուրդացն. «Անցուցէք զիս յայնկոյս, զի ի գործ կարևոր առաքեալ եմ ես ի Թագաւորէն»: Եւ հրապուրեալ զնաւորդսն՝ անցուցին զնա, և գնաց փութանակի, ճեպեալ հասանէր ի Հայաստան երկիր: Եւ ոչ ոք վաղագոյն իմացաւ զճանապարհ գնալոյ նորա, մինչև բազում աւթևանաւք մեկնեալ հեռացաւ ի ծովեզերէն: Ապա ուրեմն իրազեկ լինէին գնալոյն. և ելեալ ընդդէմ սորա քաղաքաց քաղաքաց զաւրք և ոչ կարէին զդէմ նորա ունել, և ընդ ուԹն և տասն տեղի արարեալ նորա պատերազմ ի ճանապարհի՝ յաղԹող ամենայնի գտանէր: Թէպէտ և իւր զաւրականն պակասեալ նուազէր՝ և այնպէս գնացեալ փութանակի հասանէր ի Նախճաւան: Եւ ընկալեալ զնա պարսիկն ի բերդն ամրանայր: Յայնժամ ժողովէր զամենայն զաւրս իւր Ստրատելատն, և եր-

թեալ պաշարէր զբերդն շուրջանակի զամէնն։

Ազգ լինի արքային Խոսրովու եղեալ իրքն և արձակէ ի վերայ նոցա զՊարսայենպետ հանդերձ զաւրու։ Իբրև եկն մերձեցաւ զաւրն, թողին նոքա զքաղաքն և գնացին. և նորա փութացեալ գնաց առ թագաւորն պարսից։ Իսկ նա սիրով ընկալաւ զնա. մեծացոյց պատուովք, և ետ նմա զգանձս, և հրամայեաց ուճիկ յարքունուստ։

Եւ եղև զկնի ամի միոյ մեռանիլ Մաւրկայ, և թագաւորել Փոկասայ։ Արկ սա ի միտս իւր ապստամբել և գնալ առ թագաւորն յունաց. սկսաւ պատրաստել երիվարս տաճիկս և կազմել սպառազինութիւն, յանգուցանէ յինքն արս սրիկայս [1]։ Լուր եհաս ի լսելիս արքային բանն, հրաման ետ կապել զնա ոտիւք և ձեռաւք, և բրաւք սպանանել։

Եւ այս են սահմանակալքն աէրութեանն պարսից յամս հաշտութեան այնորիկ ի Հայաստան երկրի և ի Դուին քաղաք։ Վնդատական, Նիխաւրական. զսա սպանին զաւրքն պարսից ի Դուին, և ինքեանք ապստամբեալ գնացին ի Գեղումս։ Ապա Մերկուտ. ապա Յազդէն. ապա Բուտմահ. ապա Յեմանն [2]։ Իսկ ի յունաց կողմանէ, նախ՝ Յովհան պատրիկ. ապա Հերակղ.

---

[1] Ի ձեռ. օրին. սրիկաս էր։

[2] Տես յեր. 34։

*ապա Սուրէն զաւրավար. մինչև լցան ամք երեքտասանք հաշտութեանն։*

*Եւ հրաման ելանէ ի կայսերէ. «Երեսուն հազար հեծեալ վզենակալ է, ասէ, իմ ի վերայ աշխարհին Հայոց։ Արդ՝ լռ երդաւոր ժողովեսցին ինձ անտի և նստուսցին ի Թերակացւոց աշխարհին»։ Եւ արձակոյր զՊրիսկոս ի Հայս վասն գործոյն այնորիկ, մինչդեռ եկեալ հասանէր համբաւն խռովութեան մեծի։ Եւ Պրիսկոս յարուցեալ գնայր անհնարին տագնապաւ։*

## ԳԼՈՒԽ ԻԱ.

*Սպանումն Մօրկայ կայսեր և թագաւորել Փոկասայ. ապստամբել Երակղի զօրավարի Աղէքսանդրիոյ, և Ներսիսի զօրավարի միջագետաց Ասորւոց. պաշարումն Ուրհայի ի Յունաց, և պաշարումն Դարա քաղաքի ի Խոսրովայ, և գումարել զօրս ի կողմանս Հայոց և առնել նոցա զօրագլուխ զՋուան իշխանն Վեհ. գալ յՈւրհայ և առ յինքն առնուլ զԹէոդոս, և դարձեալ անդրէն կործանելն զԴարա. առնուլ Ուրհայի ի Յունաց և սպանումն Ներսիսի զօրավարի։*

*Եւ եղև յամի չորեքտասաներորդի Խոսրովայ արքայի, ի քսաներորդ*[1] *ամի Մաւրկայ թագաւորութեանն՝ ապստամբեալ ի բաց կացին ի կայ-*

---

[1] *Ի տպ. էր՝ քսան և երեք, ’ի ձեռ. օրին. իգ։ Մեզ այսպէս ուղղելի դատեցաւ։*

սերէ զաւրն յունաց՝ որ ի Թրակացւոց կողմանէ, և նստուցին իւրեանց թագաւոր զայր ոմն անուն Փոկաս կոչեցեալ։ Եւ գնացեալ միաբանութեամբ ի Կոստանդնուպաւլիս՝ սպանին զՄաւրիկ թագաւոր և զորդիս նորա, և նստուցին զՓոկաս յաթոռ թագաւորութեանն։ Եւ գնացին ինքեանք անդէն ի կողմանս Թրակացւոց աշխարհին ի դէմ թշնամւոյն։ Եւ էր որդի մի կայսերն Մաւրկայ՝ անուն նորա Թէոդոս։ Լուր համբաւոյն ելեալ տարածանէր ընդ ամենայն երկիր՝ եթէ զերծաւ Թէոդոս և գնաց առ թագաւորն պարսից։ Ապա ոչ սակաւ ինչ խռովութիւն լինէր ի մէջ Հռովմայեցւոց տէրութեանն անդէն ի թագաւորանիստ քաղաքին և յԱղէքսանդր քաղաքի յԵգիպտոս և յԵրուսաղէմ և յԱնտիոք, և յամենայն կողմանս երկրի առեալ սուր զմիմեանս սատակէին։

Հրաման ետ թագաւորն Փոկաս սատակել զամենայն ապստամբ՝ որ երկմտեալ էին ի նորին թագաւորութենէն։ Բազումք սատակեցան անդէն սրով ի թագաւորանիստ քաղաքին։ Եւ առաքեալ զԲոնոս ոմն իշխան հանդերձ զաւրու ի վերայ Անտիոքայ և յԵրուսաղէմ, և յամենայն կողմանս աշխարհին. և նորա երթեալ եհար զԱնտիոք և զԵրուսաղէմ սրով սուսերի, և զամենայն իսկ զբազմութիւն քաղաքաց երկրին այնորիկ սպառեաց սրով։

Յայնժամ ապստամբեալ ի բաց եկաց ի Փոկասայ Երակլէս զաւրավար զաւրու իւրով՝ որ էր ի կողմանս Աղէքսանդրի, և բռնացեալ ի բաց կալաւ զերկիրն Եգիպտացւոց։ Եւ յԱսորւոց կողմանէ ապստամբեալ Ներսէս զաւրավար ի Միջագետս Ասորւոց, և հանդերձ զաւրու իւրով մտեալ բռնանայ յՈւրհայ քաղաքի։ Եւ եկեալ զաւր ի վերայ նորա պատեալ պաշարեալ պահէին զքաղաքն հանդերձ զաւրու։

Եւ եղև՝ իբրև լուաւ արքայն Խոսրով զլուր համբաւոյն այնորիկ՝ ժողովեալ գումարեաց զամենայն բազմութիւն զաւրաց իւրոց, և գնաց ընդ արևմուտս, և հասեալ ի Դարա քաղաք, նստաւ շուրջ զնովաւ, և պաշարեաց զսա, և մարտ եդեալ կռուէր ընդ նմա։ Եւ ընդ կողմանս Հայոց գումարեալ զաւրս, և զՋուվան [1] Վեհ ոմն իշխան մեծ զաւրագլուխ նոցա։ Յայնժամ արքայ Խոսրով բաժանէ յերկուս մասունս. զմի մասն եթող անդէն շուրջ զքաղաքաւն, և միւսով մասամբն գնայ ինքն ի վերայ զաւրուն՝ որ պատեալ պաշարեալ պահէին զՈւրհայ։ Եւ հասեալ ի վերայ նոցա յանկարծաւրէն ի ծագել առաւաւտուն՝ զոմանս սատակէր սրով, զոմանս փախստական արարեալ, կէսն ամրացեալ ի գետն Եփրատ մեռանէին, և կէսքն գնային հալածական։ Իսկ

---

[1] Ի տպ. էր՝ Ջովանան։

արքայն Խոսրով մատուցեալ ի դուռն քաղաքին, զի բացցեն նմա և մտցէ ի ներքս. իսկ նոքա բացին զդուռն, բայց մանուկ մի զարդարեալ թագաւորական հանդերձիւ, և եդեալ ի վերայ գլխոյն նորա պսակ, և եհան արձակեաց առ նա ներքսէս՝ասէ. «Դա է որդի թագաւորին Մաւրկայ՝ Թէոդոս, և արասցես ի վերայ դորա ողորմութիւն՝ որպէս և հայր դորա ի վերայ քոյ»։

Եւ մեծաւ խնդութեամբ ընկալեալ զնա Խոսրովայ արքայի, դարձաւ անդրէն և գնաց ի Դարա քաղաք, և ունէր զնա առ իւր թագաւորական պատուով. և նստաւ նա շուրջ զԴարայիւ զտարի մի և կէս, և փորեցին զհիմունս քաղաքին ի ներքոյ պարսպին, և կործանեալ զպարիսպն նորա՝ առին զքաղաքն, և սուր ի վերայ եդեալ մաշեցին զամենայն սրով սուսերի։ Եւ առեալ զաւ և զաւար քաղաքին, դարձան անդրէն ի Տիզբոն, քանզի էր զաւր նորա աշխատեալ և լքեալ ի պատերազմէ քաղաքին։ Եւ հասեալ ի վերայ Ուռհայի այլ զաւր ի յունաց կողմանէ՝ մարտեան ընդ քաղաքին և առին զնա. և կալեալ զներսէս սպանին և արիւն հեղին։

---

# ԳԼՈՒԽ ԻԲ.

*Պատերազմ Պարսից ընդ Յունաց ի դաշտն Շիրակ և պարտութիւն Յունաց. դարձեալ պատերազմ ի Ծաղկոտան, և պարտութիւն Յունաց, և անձնատուր լինիլ Թէոդոսի Խորխոռունւոյ և տալ զբերդն Պարսից. մահ նորա:*

*Իսկ Զուանն Վեհ, զոր արձակեաց ի կողմանս Հայոց հանդերձ զաւրու իւրով, երթեալ հասանէ յԱյրարատ գաւառ, և ի Դուին քաղաք ի ձմերային ժամանակի, և դադարեալ հանգուցանէ զզաւրս իւր մինչև ի գալ հասանել գարնայնոյ ժամանակի:*

*Յայնժամ ապա և զաւրն յունաց ժողովեալ գումարեցան ի քաղաքագեւղն Եղեվարդ. և հասեալ ի վերայ նոցա զաւրն պարսից՝ եղև պատերազմ ի դաշտին Եղեվարդայ. հարին զզաւրն պարսից և կործանեցին կործանմամբ մեծաւ. և սպանին զզաւրավարն ի պատերազմին, և զմնացեալսն փախստական արարեալ հալածական տանէին: Եւ առեալ զառ և զաւար զբանակին պարսից՝ դարձան ի բանակետղն իւրեանց՝ որ կայ ի վերայ գետեզերն՝ որ կոչի Հոռոմոց մարգ:*

*Եւ եղև ի գալ ամին միւսոյ մինչդեռ արքայ Խոսրով մարտնչէր ընդ Դարա քաղաքի, գու-*

մարեցաւ այլ զաւր պարսից ի կողմանս Հայոց, և Դատոյեան զաւրագլուխ Նոցա։ Եւ զաւրն յունաց գումարեցան ի դաշտն Շիրակ և ի գեւղն՝ որ կոչի Շիրակաւան։ Եւ անդ գետեղեալ դադարեցան աւուրս ինչ, և ինքեանք տագնապեալք յընտանի պատերազմէն և զարհուրեալք յարձակմանէ աւտար թշնամւոյն։ Եւ զաւրն պարսից հասեալ ի վերայ Նոցա իբրև զխոյանալ արծուոյ։ Իսկ Նոցա թողեալ զտեղի բանակին իւրեանց՝ անցին յայնկոյս գետոյն ի դաշտն՝ որ կոչի Ականից. և զաւրն պարսից հետամուտ եղեալ հասանէին Նոցա։ Եւ լինի պատերազմն ի գեւղն՝ որ կոչի Գետիկ։ Եւ մինչդեռ սոքա ճակատեալ էին դէմ յանդիման գալ և մերձենալ առ միմեանս. իսկ բնակիչք գաւառին՝ որ էին ժողովեալ ի բերդն Երգինայի, և ելեալ անտի բազմութեան մանկտւոյ գերանդաւք և սրիանաւք անկան ի վերջոյ Նոցա, և գործեցին մեծ աւճիռ փխասուց, թողին վիրաւորս, և առեալ զառ և զաւար և զկապուտ՝ գնացին ի բերդն իւրեանց.

Եւ Նոցա բաղխեալ պատերազմաւ՝ փախըստական լինէր զաւրն յունաց առաջի Նոցա։ Իսկ Նոցա զհետ մտեալ կոտորէին զբազումս ի դաշտացն և ի ճանապարհացն ցիր և թաւալ կացուցանէին։ Եւ սակաւք մնացեալք փախստեայս գնացին։ Իսկ Նոցա զառ և զաւարն առեալ գնացին ի բանակն իւրեանց։ Եւ իբրև տեսին զեղեալ չա-

րութիւնն՝ համագունդ արշաւեալ ի բերդն՝ առեալ զնա, զբազումս սրով սատակեցին. և բազումք զահավէժ լինէին յահէ անտի. և կէսքն ելեալ ընդ դուռնն՝ որ բանայր ի կողմն գետոյն՝ փախըստական գնային, և զայլսն ամենայն ի գերութիւն վարեցին։ Եւ գերեցան յաւուր յայնմիկ ի բերդէն յայնմանէ գեւղք լգ։ Եւ զամենայն նոյնպէս ի գերութիւն վարեցին, և ժողովեալ զամենայն զառ և զաւար գաւառին. և զաւրքն դարձան և գնացին յԱտրպատական։

Ապա եկն Սենիտամ Խոսրով, և զաւրն յունաց գումարեալ նստան ի Ծաղկոտանն՝ մերձ ի գեւղն՝ որ կոչի Անգղն, ընդ որ անցանէ գետն Արածանի. և ի միւս կողմանէ քակեալ զգեւղն՝ ածին ամրութիւն շուրջ զինքեամբ։ Եւ զաւրագլուխ նոցա Թէոդոս Խորխոռունի. և զաւրն պարսից եկեալ բանակեցան մերձ առ նոսա ի թիկանց կողմանէ. և նոքա զարհուրեալ խաւսեցան ընդ նոսա, նախ՝ ի խաղաղութիւն, ասացին ոչ ունել պատերազմ, այլ թողուլ զբերդն և երթալ խաղաղութեամբ։ Ապա միաբանք եղեալ՝ ոչ հաստատեցաւ բանն, այլ վստահացեալ յամրութիւն իւրեանց կարծէին առնել ինչ։ Եւ եղև ի վաղիւ անդր դիմեաց գնաց ի վերայ նոցա զաւրն պարսից։ Եւ ոչ ոք արկանէր ի նոցանէն զէն զանձամբ իւրով, և կամ թամբէր զերիվար իւր։ Եւ թէ ոք զինէր զանձն կամ թամբէր զերիվար,

հասանէին մանկունք իշխանացն, և հանեալ ի բաց ձգէին զզէնն չարաչար տանջելով զարսն, և զզաւտիս երիվարացն սրով հատանէին։

Եւ եկեալ զաւրն պարսից ճակատեցան մերձ առ նոսա դէմ յանդիման ի դաշտին կողմանէ, և ձգեալ բազմութեանն զաւրու աղեղնաւորացն, և թափեցին ի նոսա զկապարճս [1] իւրեանց, և ծակոտէին նետիւք իւրեանց առ հասարակ զամենայն արս և զերիվարս։ Եւ ընդոստուցեալ ամենայն երիվարք՝ որ կապեալ էին առ մուրս առ իւրաքանչիւր դրան խորանաց, ընթադրեալ առաթուր հարկանէին զխորանսն և զբանակսն ամենայն։ Եւ թշնամւոյն հատեալ զամրութիւն՝ անկաւ ի բանակն, և անհնարին լինէր կոտորածն. և նոցա հատեալ զտեղի մի, ոմանք հետևակք և ոմանք հեծեալք յանկումուշի [2] ձի, ելին և գնացին փախստական։ Եւ Թէոդոս Խորխոռունի անկեալ ի բերդն՝ ամրանայր. և նստան նոքա անդէն յայնմ գիշերի ի նոցուն բանակետղն։ Եւ եղև ընդ առաւաւտն, պատգամ արձակէին՝ զի թողցեն զբերդն և գնասցեն իւրեանց կարասեաւն [3] և ամենայն կազմածովն։ Եւ յանձին կալեալ նոցա առնել այնպէս։ Եւ յաւուրն երրորդի բացին

[1] Ի տպ. էր՝ կապանս։
[2] Ի ձեռ. օրին. էր՝ յանկումուղի։
[3] Ի ձեռ. օրին. էր՝ կարասանաւն։

զդուռն քաղաքին, և ելին գնացին ամենեքեան ըստ ասացելումն բանին։ Իսկ զԹէոդոսն Խորխոռունի կոչէր զաւրավարն պարսից և ասէր ցնա. «Ո՛չ ունիմ իշխանութիւն արձակել զքեզ առանց արքունի հրամանի, այլ տաց տանել զքեզ ի դուռն, և գրեցից վասն քո առ արքայ զամենայն բանս բարութեան, եթէ որպէս միամտութեամբ և տիրասիրութեամբ գործեցեր՝ զի զզաւրս նոցա ի ձեռս մեր այնպէս մատնեցեր։ Եւ ապա զբերդդ առանց աշխատութեան որպէս ետուր մեզ, և եկիր կամաւք քովք ի ծառայութիւն»։ Եւ գրեաց ըստ նմին բանի, և ետ տանել զնա ի դուռն։ Եւ արքայ Խոսրով սիրով ընկալաւ զնա, և կարգեաց նմա ռոճիկս և հանդերձագինս յարքունուստ։ Բայց յապա ժամանակիս՝ եղեալ կարծիս նենգութեան, հրամայեաց սպանանել։ Իսկ ի բերդին Անգեղ նստուցեալ բերդակալ, և գումարեալ զզաւրս իւր գնաց ինքն ի ներքսագոյն և նուաճեաց զերկիրն ի ծառայութիւն։

Եւ եղև յետ այնորիկ՝ միւսանգամ պատերազմն ի կողմանս Բասենոյ, և եհար զյոյնն և հալածեաց. և փախստականն արարեալ ընկենոյր յերկիրն իւրեանց։ Եւ կալաւ նա քաղաքս՝ զԱնդըղ և զԳայլատուս, զԵրգինայ, և ի Տարային զքաղաքն Ծխնկերտի։ Եւ հրաման հասեալ յարքայէն՝ գնաց։

---

## ԳԼՈՒԽ ԻԳ.

*Արձակել Խոսրովայ զօրու բազմաւ զզօրագլուխն Ըռազման զԽոռեամ յԱսորեստան, և զԱշտատ զՅեզտայար ի Հայաստան, ընդ նմա և զԹէոդոս կայսր. հնազանդիլ ամենայն Միջագետաց Ըռազման Ջխոռեմայ. պատերազմիլ Աշտատայ ընդ Յոյնս և հնազանդեցուցանել զԿարնոյ գաւառն. պատերազմ Շահենայ ընդ Յոյնս և յաղթել. գաղթել բնակչաց Կարնոյ յԱհմատան Շահաստան, մահ Կաթուղիկոսաց. առնուլ Կեսարիոյ ի Շահենայ և սպանումն Վասակայ Արծրունւոյ։*

Յայնժամ արքայ Խոսրով դարձաւ ի Դարայէ և հանգոյց զզաւրս իւր վերստին, և այլ ևս բազմութիւն զաւրաց ժողովեալ գումարեաց, և արձակէր ընդ կողմանս Ասորեստանի զաւր մեծ և հզաւր յոյժ, զԽոռեամ, որ Ըռազմանն անուանեալ, զաւրագլուխ նոցա։ Եւ հրաման տայր նոցա այսպէս՝ եթէ. «Որք եկեսցեն ի ծառայութիւն, սիրով ընկալ, և ի խաղաղութեան և ի շինութեան պահեսջիր. և որ ընդդէմ դարձցին և պատերազմեսցին, սրով սատակեսցին»։ Եւ ընդ կողմանս Հայաստանի արձակէր զԱշտատ զՅեզտայար հանդերձ զաւրու մեծաւ. և զԹէոդոս կայսր զանուանեալ որդի Մաւրկայ ընդ նմա գումարէ։

Խոռեամ առեալ զզաւրացն բազմութիւն գնաց ի կողմանս Ասորեստանի, և հասեալ ի Միջագետս Ասորւոց, պատեալ պաշարեն զՈւրհայ քաղաք, և մարտ եղեալ կռուի ընդ նմա։ Իսկ նոքա ի բազմութենէ զաւրացն և ի մարտիցն յաղթութիւնն, և զի ոչ ուստեք գոյր նոցա ակնկալութիւն փրկութեան, խաւսեցան ի խաղաղութիւն, և խնդրեցին երդումն՝ զի մի կորուսցեն զքաղաքն, և բացեալ զդուռն քաղաքին հնազանդեցան ի ծառայութիւն։ Նոյնպէս և Ամիթ և Թելա և Ռաշայենայ և ամենայն քաղաքք Միջագետաց Ասորւոց կամաւք հնազանդեալ ի ծառայութիւն՝ պահեցան ի խաղաղութեան և ի շինութեան։ Եւ գնացեալ նոցա յԱնտիոք քաղաք, հնազանդեցան և նոքա կամաւք ի ծառայութիւն հանդերձ ամենայն քաղաքաւք և բնակչաւք իւրեանց փախստականք լեալ ի սրոյն Փոկասայ։

Իսկ Աշտատ Յեզտայար եկն ի սահմանս Հայոց յամի ութ և տասներորդի թագաւորութեանն։ Եւ զաւրն յունաց գումարեալ ժողովեցան ի գաւառն Բասենոյ, և նա ահագին դիմեալ յարձակեցան ի վերայ նորա. և եղև պատերազմ մեծ ի Դու և Յորդրու։ Հարին զաւրն յունաց և խորտակեցին կործանմամբ մեծաւ։ Բազումք մեռան ի պատերազմին, և ոչ գոյր թիւ սպանելոցն ի դաշտին. հալածեաց զնոսա մինչև ի քաղաքն Սատաղացւոց, և ինքն գումարեալ բանա-

կեցաւ շուրջ զԿարնոյ քաղաքաւ։ Եւ կալաւ ընդ նմա գործ պատերազմի. ընդդիմացան ի ներքուստ ինչ. և ոչ սակաւ լինէր կոտորածն փասուց յարտաքնոցն։ Ապա յառաջ մատուցեալ Թէոդոս կայսրն ասելով, եթէ, «ես եմ թագաւորն ձեր»։ Յայնժամ հաւանեալ բանային. ելին գլխաւորքն քաղաքին և ընծայեցան նմա, և դարձեալ անդրէն հաւանեցուցին զքաղաքն՝ թէ նոյն ինքն է Թէոդոս որդի Մաւրկայ։ Յայնժամ բացեալ զդուռն՝ հնազանդեցան ի ծառայութիւն, և կարգեալ ի նա պահապանս, գնաց և կալաւ զքաղաքն Հաշտենից՝ Ձիթառիճ և զՍատաղ և զԱռաստիայ և զՆիկոպաւլիս և գնաց։ Ապա եկն Շահէնն Պատգոսապան և զանց արարեալ զԿարնոյ քաղաքաւն, և յոստանն Դւնայ եկն մարզպանութեանն Շահրայեանպետ։ Իսկ Շահեանն երթեալ հանդիպէր զաւրացն յունաց ի Կարին գաւառի։ Եւ արարեալ պատերազմ՝ հարկանէր զնոսա սրով սուսերի և փախստական արարեալ հալածական առնէր յաշխարհէն։

Իսկ յամին քսաներորդի առաջներորդի արքային Խոսրովայ՝ հրաման ետ նմա՝ փոխել զբնակիչս ի Կարնոյ քաղաքէ և տանել բնակեցուցանել յԱհմատեան շահաստանի. ընդ նոսին ըմբռնեալ և երանելի ծերունի կաթուղիկոսն Յովհան ի գերութիւն վարեցաւ հանդերձ ամենայն սպասիւք եկեղեցւոյն։ Եւ անդէն վաղճանեալ բերաւ մարմին նորա ի գեւղն Աւան՝ յեկեղեցին, զոր

ինքն շինեաց։ Եւ ի նմին ամի վաղճանեցաւ երանելին Աբրահամ կաթուղիկոսն։ Եւ յետ սորա յաջորդէ զաթոռ հայրապետութեանն Կոմիտաս Տարօնայ եպիսկոպոսն՝ որ ի գեղջէ Աղցից աւանէ, և առ սովաւ կատարի շինուած եկեղեցւոյն սրբոյն Գրիգորի։

Եւ յամին քսաներորդի Խոսրովայ արքայի՝ ասպատակ արարեալ Շահենայ՝ արշաւեաց ի կողմանս արեմտից, և գնացեալ ի Կեսարիա Կապադովկացւոց. իսկ բնակիչք քաղաքին քրիստոնեայք ելին ի քաղաքէն և գնացին. բայց Հրէայքն ընդառաջ երթեալ հնազանդեցան ի ծառայութիւն. և նստաւ նա ի քաղաքին յայնմիկ զտարի մի։ Կալան զՎասակն Արծրունի զորդի Սահակայ նահապետին Արծրունեաց, և սպանին զնա հանդէպ դրանն քաղաքին ի վերայ փայտի. որ թէպէտ և բազում աւճիռս փխասուց գործեալ էր նորա ի զաւրուն պարսից, սակայն ամենայն զաւրն պարսից ողբայր զնա վասն քաջութեան և արիութեան, և մանուկ ուժեղ և բարձրահասակ։ Մանաւանդ զի սնեալ ևս էր ի մէջ նոցա, և վարժեալ ևս ի նոցանէն հրահանգաւ. այսպէս և սա։

## ԳԼՈՒԽ ԻԴ.

*Դիմելն Հերակլի յԱսորեստան ընդդէմ Պարսից. պատերազմ մեծ առ Անտիոք քաղաքաւ. պարտութիւն Յունաց. հնազանդութիւն երկրին Պաղեստինու Պարսից. նստիլ յԵրուսաղէմ Պարսիկ ոստիկանի և սպանումն նորա. կոտորած մեծ յԵրուսաղէմ սրով Պարսից և այրիլ. գերութիւն սրբոյ Խաչին։*

### ԽՈՍՐՈՎ ԻԲ. ԵՐԱԿՂՈՍ ԶԱՌԱԶԻՆՆ

Եւ եղև ի ժամանակին յայնմիկ գումարել զաւրս Երակլէ՝ որ ի կողմանս Եգիպտացւոց, յամի քսաներորդի երկրորդի թագաւորութեան Խոսրովայ, և նաւեալք ընդ ծով՝ հասին ի Կոստանդնուպաւլիս, և սպանեալ զՓոկաս թագաւոր՝ նստոյց զՀերակղոս զորդի իւր յաթոռ թագաւորութեանն, և արար յամենայն երկիրն խաղաղութիւն։

Եւ եղև իբրև թագաւորեաց Հերակղոս՝ արձակեաց հրեշտակս մեծապէս գանձիւք և հրովարտակաւք առ արքայ Խոսրով խնդրել զխաղաղութիւն մեծաւ թախանձանաւք։ Որում ոչինչ կամեցաւ լսել արքայ Խոսրով ասելով. «Իմ է թագաւորութիւնն այն, և ես զԹէոդոս զորդին

Մաւրկայ Նստուցի թագաւոր։ Եւ նա երթեալ առանց մեր հրամանի թագաւորեաց, և զմեր գանձն մեզ ընծայս մատուցանէ, բայց ես ոչ դադարեցից՝ մինչև առից զնա ի բուռն իմ»։ Եւ առեալ զգանձն՝ հրամայեաց սպանանել զհրեշտակս նորա, և բանից նորա ոչ արար պատասխանի։

Յայնժամ գումարեալ Երակլի զզաւրս իւր՝ բանակեցաւ շուրջ զքաղաքաւն և արգել զնոսա յարշաւանաց իւրեանց։ Եւ գումարեալ զզաւրն ի ձեռն Կուրատորի ուրումն, հրաման ետ զգուշանալ, և ինքն գնաց ի տեղի իւր։

Եւ պաշարեցին զքաղաքն Կեսարացւոց՝ տարի մի, և նեղեցաւ զաւրն պարսից ի կերակրոյ. և զի ոչ գոյր խար երիվարացն բազմութեան։ Եւ եղև իբրև հասին յաւուրս ամառնային ջերմութեանն, և լցեալ սեռնեցան վայրքն բուսով դալարոյ՝ հրդեհեցին զքաղաքն հուրբ, և ելեալ գնացին բռնութեամբ, հարեալ զյոյնն և փախըստական արարեալ յետուստ իւրեանց. և ինքեանք երթեալ ի սահմանս Հայոց։ Եւ ձմերեալ զաւրն պարսից ի Հայաստան աշխարհին։

Կոչի Շահէն փուխթանակի ի դուռն թագաւորին պարսից, և հրաման տայ նմա արքայ երթալ անդրէն ընդ արեմուտս փութանակի։ Իսկ նորա առեալ զզաւրս իւր յաւուրս ամարայնոյ՝ գնացեալ հասանէ ի Կարնոյ քաղաք, և դիմեալ ի

վերայ Մելտինոյ, առնու զնա և հնազանդէ ի ծառայութիւն։ Եւ ինքն գնացեալ միանայր ի զաւրն Խոռեմայ, որ էր ի Պիսիդացւոց կողմանէ և յՈստանն Դրւնայ։

Եկն փոխանակ Շահրայենպետի՝ Պարսեանպետ Պարշընազդատ. ապա Նամդարուն Շոնազպ[1]. ապա Շահրապղականն։ Սա արար կռիւ մի ի Պարս և յաղթեաց. ապա Ճռոճ Վեհանն։ Սա հետամուտ լեալ զհետ Թագաւորին Երակղայ ի Հայս մինչև ի սահմանս Ասորեստանի, մինչև եղև պատերազմ մեծ ի Նինուէ՝ յորում անկաւ ինքն և ամենայն զաւրք իւր։

Իսկ Թագաւորն Երակղոս գումարէ զՓիլիպիկոս զոմն երէց ի զաւրավարութիւն։ Եւ էր լեալ Փիլիպիկոս այս փեսայ կայսերն Մաւրկայ, և բազում ժամանակաւ արարեալ զաւրավարութիւն՝ գործէր զմարտից յաղթութիւն։ Եւ ապա յանկարծաւրէն արկեալ ի միտս իւր անդրէն յաւուրս Մաւրկայ Թագաւորութեանն, կտրեալ զհերս գլխոյ իւրոյ և զգեցեալ զքահանայութիւն՝ զի նուաբեցաւ յուխտ եկեղեցւոյ։ Արդ՝ զսա բռնադատեալ Հերակղի, կարգէ զաւրավար և արձակէ ի կողմանս արևելից զաւրու մեծաւ։ Եւ նորա դիմեալ ընդ հեսարիա Կապադովկացւոց, երթեալ հասանէր ի Հայաստան երկիր՝ ի գաւառն Այրա-

[1] Ի միւում օրինակի՝ Շնասպ։

րատայ, և բանակի ի դաշտին Վաղարշապատ քաղաքի։ Հապճեպ ստիպով ի ձեռն թեթևընթաց երագոտն սուրհանդակաց հրաման թագաւորին հասաւ. մեծաւ վտանգաւ ստիպէր զզաւրս իւր հասանել զհետ նորա, և անյիշատակ ի միջոյ ի բաց բառնալ զզաւրն։ Եւ նոքա երթեալ մեծաւ ստիպով հասին ի գաւառն Այրարատայ և բանակեցան ի վերայ գետեզերն Երասխայ, կամեցեալ առ վաղւն խմբել զգործ պատերազմին։ Ի նմին ժամու ի գիշերին գնացեալ ի վերայ Փիլիպպոսի ի Նիգ գաւառի և պատեալ զթիկամբք լերինն Արագածայ, երթեալ անցանէ ընդ Շիրակ և ընդ Վանանդ մերձ քաղաքաւն Կարնոյ և երթեալ հասանէ ի սահմանս իւր։

Իսկ զաւրն պարսից՝ քանզի յաւգնեալ էր ի հեռաւոր և յայնպէս վտանգաւոր ուղեաց ճանապարհին, քանզի բազումք մեռան ի ճանապարհին ի զաւրացն, և բազմաց երիվարք սատակեալ՝ անկանէին հետիոտս, ոչ կարացեալ հապճեպ ստիպով զկնի նոցա լինել հետամուտ։ Այլ դադարեալ աւուրս ինչ. ապա գնացեալ հանգստիւ, երթեալ անցանէ ի կողմանս Ասորեստանի։ Եւ բանակեցան անդէն ի տեղւոջն՝ ուր էին զառաջինն և լայնեալ յաջ և յահեակ իւրեանց՝ լաստեցան և կալան զերկիրն ամենայն։

Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Հերակ-

զոս զօրդի իւր զԿոստանդին, ետ զնա ի ձեռն Սրնկղիտոսին, և յանձնեալ ամենայն մեծամեծացն պալատոյն՝ հաստատեաց զնա յաթոռ թագաւորութեան իւրոյ։ Եւ իւր առեալ յանձն զանուն զաւրավարութեան հանդերձ եղբարբն իւրով Թէոդոսիւ՝ գումարեալ ժողովեաց զբազմութիւն զաւրացն, և անցեալ գնաց յԱսորեստան ի կողմանս Անտիոքացւոց։ Եւ եղև պատերազմ մեծ ի կողմանս Ասիացւոց. և բռնացեալ հոսեցաւ արիւն զաւրավարացն առ Անտիոք քաղաքաւ։ Սաստիկ լինէր խումբ և խառնուրդ, և անբաւ կոտորածն ի մէջ տարուբերին. և յաւգնեալ վանեցան ի մարտին երկոքին կողմանքն։ Բայց սակայն զաւրացեալ պարսիկն՝ փախուցեալ զյոյնն հալածեաց, և ստացաւ հանդերձ քաջութեամբ զյաղթութիւն։ Եւ եղև միւս ևս այլ պատերազմն՝ մաւտ ի նեղուց մտին ի Կիւլիկեայ. եհար յոյնն զպարսիկն ի ճակատուն՝ ըռ արանց սպառազինաց։ Եւ ինքն դարձեալ փախստական գնաց. և զաւրացեալ զաւրն պարսից՝ անցեալ կալաւ զՏարսաւն քաղաք և զամենայն բնակիչսն Կիւլիկեցւոց գաւառին։

Յայնժամ ապա ամենայն երկիրն Պաղեստինացւոց կամաւք հնազանդեցան ի ծառայութիւն արքային պարսից. մանաւանդ մնացորդք ազգին Հեբրայեցւոց՝ ապստամբեալք ի քրիստոնէից, և առեալ ի ձեռն զնախանձ հայրենի՝ մեծ

ուճիրս փխասուց գործէին ի մէջ բազմութեան հաւատացելոցն։ Երթեալ առ նոսա միաւորեցան խառն ի միաբանութիւն։ Յայնժամ զաւրն արքային պարսից նստէր ի Կեսարիա Պաղեստինացւոց, և զաւրավարն նոցա անուանեալ Ռազմիոզան [1] որ է Խոռեամ, խաւսէր ընդ Երուսաղէմի՝ զի կամաւք հնազանդեսցին ի ծառայութիւն, և ի խաղաղութեան և ի շինութեան պահեսցին։

Արդ՝ նախ միաբանեալ հնազանդեցան ի ծառայութիւն, և մատուցին զաւրավարին և զիշխանացն պատարագս մեծամեծս, և խնդրեալ ոստիկանս արս հաւատարիմս նստուցին առ իւրեանց առ ի պահպանութիւն քաղաքին։ Եւ յետ անցանելոյ ամսոց՝ մինչ միաբանեալ ամենայն ռամիկ կաճառացն՝ մանկունք քաղաքին սպանին զոստիկանս Թագաւորին պարսից. և ինքեանք ապստամբեալք ի բաց կացին ի ծառայութենէ նորա։ Յայնժամ եղև պատերազմ ի մէջ բնակչացն քաղաքին Երուսաղէմի, հրէին և քրիստոնէին. և զաւրացեալ բազմութեան քրիստոնէիցն՝ հարին, սատակեցին զբազումս ի հրէիցն։ Եւ մնացեալքն ի հրէիցն անկեալ ի պարսպացն՝ գնացին ի զաւրն պարսից։ Յայնժամ ժողովեաց Խոռեամ՝ որ է Ռամիկոզան՝ զզաւրս իւր և երթեալ բա-

[1] Յօրին. և ի տպ. էր՝ Գազմիոզան. մեք այսպէս։

նակեցաւ շուրջ Երուսաղեմաւ և պաշարեաց զնա. և կալաւ ի վերայ նոցա գործ պատերազմի զաւուրս ԺԹ։ Եւ փորեալ ի ներքոյ զհիմունս քաղաքին. աւերեցին զպարիսպն։ Եւ եղև յաւուրն ԺԹ երորդի՝ յամսեանն մարգաց, որ աւր ԻԷ[1] էր ամսոյն, յամի ԻԵ[2] երորդի Թագաւորութեանն Ապրուէզ Խոսրովայ. զկնի տասն աւուր անցելոյ յետ Զատկին առին զաւրքն պարսից զԵրուսաղէմ, և սուր ի գործ արարեալ մինչև ցերիս աւուրս՝ սպառեցին զամենայն մարդիկ քաղաքին. և նստան ի ներքս քաղաքին և այրեցին զքաղաքն հուրբ։ Եւ հրամայեցին[3] համար անկելոց դիականցն, և եղև Թիւ սպանելոցն ԾԷ[4] հազար մարդ։ Եւ զորս կալան կենդանիք՝ ԼԵ հազար մարդ։ Կալան և զհայրապետն՝ որում անունն էր Զաքարիա, և զխաչապանն. և ի խնդիր անկեալ կենսաբեր խաչին՝ սկսան զնոսա տանջել. և զբազումս ի պաշտաւնէից կառափնատեալ սատակէին ի ժամանակին յայնմիկ։ Ապա ցուցին զտեղին՝ ուր ծածկեալ կայր, զոր առեալ վարեցին ի գերութիւն. և զարծաթ և զոսկի քաղաքին ձու-

---

[1] Յօրին. էր՝ իը. իսկ ի տպ. այսպէս։

[2] Այսպէս ի ձեռ. օրին. իսկ ի տպ. էր՝ իէ։

[3] Ի ձեռ. օրին. այսպէս. իսկ ի տպ. էր՝ համարեցին։

[4] Այսպէս ի ձեռ. օրին. իսկ ի տպ. էր՝ Ժէ։

լեալ խաղացուցին ի դուռն Թագաւորին. ապա վասն անկելոյ ձերբակալացն հրաման հասեալ ի Թագաւորէն առնել ի վերայ նոցա ողորմութիւն, շինել զքաղաքն, և զնոսա անդրէն հաստատել յիւրաքանչիւր կարգ։ Եւ զհրէայսն հրամայէ հալածական առնել ի քաղաքէն. և անդրէն վաղվաղակի մեծաւ ստիպով կատարեն զհրամանն արքունի։ Եւ կարգեցին երիցապետ զոմն ի վերայ քաղաքին՝ անուն Մոդեստոս [1], որ գրէ ի Հայաստան երկիր աւրհնակ այսպէս։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

*Թուղթ Մոդեստոսի երիցու առ Տէր Կոմիտաս և պատասխանի ի Կոմիտասայ կաթուղիկոսէ առ Մոդեստոս. նորոգումն տաճարին սրբոյն Հռիփսիմայ ի Կոմիտասայ կաթուղիկոսէ։*

### ԱՌ ՏԷՐ ԿՈՄԻՏԱՍ

Տեառն իմոյ ամենայն բարութեան և երանութեան և հոգևորի Կոմիտասայ արքեպիսկոպոսի և մետրապաւլտի աշխարհիդ Հայոց, Մոդեստոս նուաստ երէց և տեղապահ Երուսաղէմի։

Աւրհնեալ է Աստուած և հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, հայր գթութեանց և Աստուած ամենայն մխիթարութեանց, որ մխիթարեաց զմեզ մխիթարութեամբ բազմաւ ի վերայ

---

[1] Ի տպ. և ի ձեռ. օրին. էր՝ Մոդեստոս։

ամենայն նեղութեանց մերոց՝ ի գալստեան ձե-
րոյ հաւտիդ։ Քանզի[1] ոչ մխիթարեաց զմեզ ի
գալստեան դոցա. նախ՝ յիշեցուցանելով զմեզ զա-
ռաջին երթեալն՝ զոր առնէին ի պատուական
տեղիս Երուսաղէմի։ Երկրորդ՝ զի հաճեաց զմիտս
մեր ի գալստեան դոցա, և ծանեաք զի ոչ իս-
պառ մերժեաց զմեզ Աստուած։ Այլ արդարև
սոյն Աստուած մեր ի մեզ է՝ ցուցանելով մեզ
ի ձեռն նոցուն իրաց զմեծամեծս իւր, որ յա-
ռաջ քան զյաւիտեանս մինչև ցայժմ կատարելով
և զզաւրութիւն նորա և սքանչելիս նորա աւր-
հնելով և մեք զՊաւղոսին ասասցուք. «Ո՜րպէս
մեծացան գործք քո տէր. զամենայն իմաստու-
թեամբ արարեր։ Արդարև անքննին են դատաս-
տանք նորա, և առանց զննելոյ են ճանապարհք
նորա։ Զի ո՞վ ծանեաւ զմիտս տեառն, կամ ո՞
խորհրդակից եղև նմա, կամ ո՞վ ետ նմա փոխ և
հատուցանէ նմա, զի ի նմանէ են և նովաւ և
ի նա ամենայն. նմա փառք յաւիտեանս, ամէն»։
Արդ՝ զի զհակառակորդսն մեր սիրելիս արար, և
ետ զմեզ ի գթութիւն և յողորմութիւն առաջի
ամենայն գերչաց մերոց՝ որ զտիրասպանութիւնս և
զհրէայս, որք կարծէին չարչարանաւք սորա դար-
ձեալ թշնամանել զայն՝ որ չարչարեցաւ վասն
մեր, զտէրն մեր Յիսուս Քրիստոս՝ զճշմարիտ

[1] Ի տպ. էր՝ քանի։

Աստուածն մեր։ Որք համարձակեալ պատերազմեցան իսկ, և այրեցին զպատուական տեղիս զայս. Հաճեցաւ Աստուծոյ մարդասիրութիւնն զնոսա աւարացուցանել ի քաղաքէն սրբոյ իւրմէ Երուսաղէմէ։ Որք կամէին բնակիչ առնել ինքեանց, լսեն բովանդակ չբնակել, և տեսանել ոչ արժանաւորին և զպատուական և զերկրպագու չարչարանս, և զսուրբ և զկենսընկալ նորա գերեզմանս, և զսուրբ Գողգոթայ մեծափառ նորոգեալ, ճանաչեն հաստուցեալ զիւրաքանչիւր փառս. բազում վերագրութեամբ զԱստուածային պաշտաւնն, և զմայր եկեղեցեաց Սիւոնն, և զվերացումն նորա։ Եւ միանգամայն իսկ ասացեալ՝ զամենայն երկրպագու տեղիս նորոգեալ լսելով նախանձաբերին. ոչ ի բարի, այլ ի բնիկ նախանձանք հայրենական հաւր նոցա կայենի։ Քանզի բազում անգամ ջանացան, բազում կաշառաւք հրաման խնդրէին մտանել ի սուրբ քաղաքն, և ոչ արժանաւորեցան յԱստուծոյ արգելեալ, որ և խրատեաց [1] զմեզ՝ ոչ ըստ գործոց մերոց, այլ հայրական գթութեամբն դարձուցանել զմեզ ի նորոգութիւն։

Բայց և զհրաշալին գրելով ուրախ առնեմք զքեզ. ոչ յանիրաւութենէ և կամ յաւերանաց շինութիւնք երկրպագու տեղեացս այսոցիկ լի-

[1] Ի ձեռ. օրին. խրամատեաց։

նէն, այլ ի ձեռն Նորա ողորմութեանն՝ որով բարձրացոյց զաշխարհս և զառ ինքն ծանաւթութիւն շնորհեաց։

Արդ՝ որպէս ասացեալդ, թէ շնորհիւն Աստուծոյ ի ձեր սուրբ աղաւթիցդ ամենայն եկեղեցիքս Երուսաղէմի կարգաւորեցան և պաշտին։ Եւ խաղաղութիւն քաղաքիս Աստուծոյ և սորին շրջեկիս, որպէս դէմ յանդիման պատմեն ձեզ, որպէս տեսին զայս քրիստոսասէր մարդիկդ ձեր։ Քանզի զայս ամենայն ի Նորին յաւրինողին՝ և միայն ի մարմնի են գործքն, և ոչ ի մարդկային ձեռաց է զաւրութիւն, զի մի պարծեսցի ամենայն մարմին առաջի Նորա։ Քանզի Նա է խաղաղութիւն մեր որ առնէ զամենայն, որպէս ասացեալդ է, և վերստին Նորոգէ որպէս այժմիկ մարտեալ՝ ուրախ արասցէ զմեզ ի ձեռն սուրբ աղաւթից ձերոց, քարոզելով զսորին խաղաղութիւն սուրբ եկեղեցեացն և շնորհելով մեզ հովիւս և առաջնորդս եկեղեցեաց Նորա։ Եւ արկցէ ի միտս ձեր՝ անդադար աղաւթելով վասն մեր, և մի պակասել ամենեւին ի յիշել և ի նայել ի մեզ և յաղքատս Երուսաղէմի, և որ ինչ պիտոյ է՝ լինել։ Եւ եթէ հնար իցէ զաստուածասէր ձեր նախանձդ և ի ձեռնտուութիւն շինածոյ՝ կենարար չարչարանացն ձգել։ զի և այսմ բարւոյ և փափագելի պարգեւաց հանդիպիմք. բայց և զայս աղաչեմ զհայրական զձեր սրբութիւնդ և

որք ընդ ձեզ սրբասուն եպիսկոպոսունսդ են, առաջի նոցա ընթեռնուլ զթուղթդ։

Եւ այս է թղթոյս պատասխանի՝ զոր գրեցին Հայք յԵրուսաղէմ առ Մոդեստոս[1]։

Ձայն աւետաւոր փողոյ մեծի ի հրեշտակէն գոչէ մեզ ի ձեռն թղթոյս այսօրիկ հասելոյ յաստուածակերտ քաղաքէ այտի, որ աւետարանէ մեզ ուրախութիւն մեծ։

Վասն այսորիկ ուրախ լինին երկինք, և ցընծասցէ երկիր, զուարճասցին փառաւք իւրովք եկեղեցի և մանկունք իւր։ Եւ արդ՝ մեք ամենեքեան միաբան գոչմամբ զհրեշտակական փառաբանութիւնսն երգեսցուք ասելով. «Փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն»։

ՊԱՏԱՍԽԱՆԻՆ Տ. ԿՈՒՄԻՏԱՍԱՅ

Շնորհիւն Աստուծոյ յեպիսկոպոսապետէս և յամենայն ուղղափառ եպիսկոպոսացս և յերիցանցս, ի սարկաւագացս և ի դպրացս, և յամենայն ժողովրդոց աշխարհիս Հայոց ձեզ նեղելոցդ և վշտացելոց, զանալից եղելոցդ և խրատելոցդ,

[1] Ի ձեռ. օրին. էր՝ առ կայսր։

յանձանձելոց և դգուելոց, սփոփելոց և սիրեցելոց ի Հաւրէն երկնաւորէ։

Եղբայր պատուական Մոդեստոս՝ քեզ և ամենայն եկեղեցեաց որ յԵրուսաղէմի, շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և սէրն Աստուծոյ և խաղաղութիւն բազմասցի։

Նախ՝ գոհանամ զԱստուծոյ ի վերայ մխիթարութեանց՝ ընդ որ մխիթարեաց զմեզ, որպէս զի և դուք կարող լինիջիք մխիթարել զայնոսիկ, որ յամենայն նեղութիւնս իցեն։ Զի ահաւասիկ մեք իսկ ի ձեռն մխիթարութեան ձերոյ՝ որ եհաս առ մեզ, մխիթարեցաք ի բազում վշտացս և ի սաստիկ նեղութեանցս և ի դառն կոտորածս որ նեղէ զմեզ։ Այլ հաւատարիմ է Աստուած որ սփոփեաց հայրական գթութեամբն իւրով զամենայն հաւատս հաւատացելոց ի ձեռն այդորիկ, և մոռացոյց զտրտմութիւնս մեր ուրախութեամբ լրոյս և ձայնիւ շինութեամբդ և խաղաղութեամբդ Երուսաղէմի։ Բայց առ մեզ գոչէ մարգարէն, աղաղակէ և ասէ. «մխիթարեցէ՛ք, մխիթարեցէ՛ք զժողովուրդ իմ՝ ասէ Աստուած, քահանայքդ խաւսեցարո՛ւք ի սիրտ Երուսաղէմի, և մխիթարեցէ՛ք զդա, զի լի եղև տառապանաւք»։ Իբրև յորդիս մատուցեալ է ի ձեզ Աստուած, քանզի՝ զոր սիրէ տէր, խրատէ. ո՞ իցէ որդի, զոր ոչ խրատեսցէ զնա հայր իւր. զի նորա վիրաւքն բժշկեցաք, և խրատ խաղաղութեան մերոյ ի նմա։ Բայց զի-

տեսն դու զայս՝ ով եղբայր սիրելի, ո՛չ սակաւ
մխիթարութիւն գործէին և մերոյ ժողովրդեանս
յերթևեկէ այդ ճանապարհացդ։ Նախ՝ զի մոռա-
նային վիշտս և զտրտմութիւն աշխարհիս։ Երկ-
րորդ՝ զի սրբէին զմեղս իւրեանց ի ձեռն ապաշ-
խարութեան, պահոց և ողորմութեան, տքնու-
թեամբ զտիւ և զգիշեր անհանգիստ ուղեգնա-
ցութեամբ։ Երրորդ՝ զի մկրտէին զմարմինս ի ջուր
սրբութեան ի Յորդանանու յորձանսն հրադէզս, որ
յամենայն տիեզերս աղբերացաւ շնորհքն աստուա-
ծային, զի սփռէին զանձուկ սրտի զաստուածա-
մերձ Սինէական լերամբն առ Մովսիսիւ զմարգա-
րէականն՝ (ասելով) ընկեր ցընկեր. «Եկա՛յք ելցո՛ւք
ի լեառն տեառն և ի տունն Աստուծոյ Յակովբայ»։
Այլ ևս զմեծագոյնն ասասցուք ըստ առաքելա-
կան ձայնի. «զմատչելն ի Սիովն լեառն և ի քաղաք
Աստուծոյ կենդանւոյ յԵրուսաղէմ յերկինս՝»
և ի բիւրաւոր բանակս հրեշտակաց և յեկեղեցիս
անդրանկաց գրելոցն յերկինս, զաթոռն Աստու-
ծոյ ի վերայ երկրի տեսանել, և զդատաւորն
ամենեցուն զԱստուած տեսանելով բազմեալ յերկ-
նաւոր խորանի, և ի վերայ աստուածընկալ խա-
ըսխիդ։ Իսկ իբրև դարձոյց բարձրեալն զերեսս
իւր ի մէնջ, և նայեցաւ ի մեզ[1] խեթիւ արե-
գականն, և հեստելով հեստեցան անձինք մեր և

---

[1] Ի ձեռ. օրին. է՝ ի քեզ խեթիւ։

խռովեցաք։ Տեառն Աստուծոյ մերում արդարութիւն, և մեր ամօթ երեսաց։ Այլ յորժամ կամեցաւ Աստուծոյ մարդասիրութիւնն ի վերայ կործանելոցդ սաստկութեամբ՝ առնել բարերարութեամբ քաղցրութիւն, ընկղմեցաք ի խորութիւն բարձրութեան։ Եւ ի վերայ այսր աւետաբեր նկարագրի՝ անդադար բերանովք՝ անհանգիստ լեզուաւք զՏէր մեր Յիսուս Քրիստոս՝ զբարերարն և զսքանչելագործն և զպարգևաբաշխն աւրհնեսցուք. զի թէպէտ և այնպէս ահագին և սաստիկ էր սուրակոխ և հրակէզ աւրն դատաստանին քոյ, այլ ճարտարապետն իմաստուն՝ որ ընտրեաց և սրբեաց զձեզ՝ որպէս ոսկի ի բովս, նոյն նորոգեսցէ վերստին զփառս իւր ի վերայ քոյ, և զարմանալի արասցէ մխիթարութիւն իւր ի քեզ։

Այլ զայս ամենայն սիրելին մեր յառաջագոյն պատմեաց մեզ յասելն իւրում զէջ Սիոնէ յԵրիքով, զանկեալդ ի ձեռս աւազակացն՝ որք մերկացուցին զդա, և վէրս ի վերայ վիրաց եդեալ թողին կիսամահ և գնացին. տեսանել զդա քահանայից ճանապարհորդաց՝ և առնել զանց. տեսանել զդա հրէից և ղևտացւոց և ամբարշտաց՝ և առնել զանց. զիւրովին ճանապարհորդելդ, գթութեամբդ մատչելդ, պատել զվէր դորա և արկանել ի դա զողորմութիւն և զարիւն կենաբար։ Ասէ ձէթ և գինի արկանել ի վերայ դորա

և պատել՝ զի բժշկեսցի։ Որ ահաւասիկ տեսան [1] ածեալ ի պանդոկի յայդ [2] և դարմանել և զերկս դահեկանս՝ որ ետ ի պանդոկապետն, ահաւասիկ դու ունիս ի ձեռս քոյ դարման առատ։ Եւ զոր ինչ ծախեսցես ի դա՝ ի միւսանգամ գալստեանն հատուսցէ քեզ։

Մի՛ այնուհետև ողբասցէ Սիաւն, և մի՛ զգեցցի սուգ Երուսաղէմ, քանզի աւադիկ եկեալ հասեալ է արքայն Քրիստոս փրկել և մխիթարել. այլ պսակ մխիթարութեան քո ի ծաղկացու չարչարանաց նորա բոլորի, և մահ նորա թագ մխիթարութեան եղիցի ի վերայ գլխոյ քոյ։ Յո՛յժ հաշէին և մաշէին չարքդ որդիքդ հրէից՝ ո՛վ սիրելի, զի ծառքդ քրիստոսեանք՝ զորս հատին տապարաւք կատաղութեամբն իւրեանց ի ձեռն անմիտ փայտահարաց, ահաւադիկ արձակեցին շառաւեղք, և բազմացան։ Եւ ելից զդա բարձրեալն ձիթենեաւք՝ և արմաւենեաւք, զոր խաչահանուացդ մանկունք և տեսանել անգամ մի՛ արժանաւորեսցին։

Բայց դուք ե՛ղբարք, ըստ առաքելոյ ձայնին՝ ողջ լերուք ի Տէր, հաստատուն կացէք, մխիթարեցարո՛ւք, միաբան լերո՛ւք, խաղաղութիւն արարէք, և Աստուած խաղաղութեանց և սիրոյ եղիցի ընդ ձեզ ամէն։

---

[1] Ի միւսում օրինակի հեսան։
[2] Ի ձեռ. օրին. էր՝ յայտ։

Շինումն տաճարին Հռիփսիմեայ։

Եւ եղև յամի իբ երորդի թագաւորութեանն Ապրուէզ Խոսրովու՝ քակեաց կաթուղիկոսն Կոմիտաս զմատուռ սրբոյն Հռիփսիմեայ ի Վաղարշապատ քաղաքի, զի կարի ցած և մթին էր շինուածն, որ շինեալ էր սրբոյն Սահակայ հայրապետի Հայոց կաթուղիկոսի՝ որդւոյ սրբոյն Ներսիսի։

Արդ՝ մինչդեռ քակէին զորմն մատրանն, երևեցաւ յանկարծակի լուսաւոր և չքնաղագիւտ արքունական մարգարիտն՝ այսինքն կուսական մարմին սրբոյ տիկնոջն Հռիփսիմէի։ Եւ քանզի անդամ անդամ յաւշեցին զնա յաւշեալ ի միմեանց. և երանելի սրբոյն Գրիգորի կնքեալ մատանեաւ իւրով և մատանեաւ երանելւոյն Սահակայ Հայոց կաթուղիկոսի, զոր նա ոչ համարձակեցաւ բանալ։ Եւ կնքեալ իւրով ևս մատանեաւ, որ արժանի իսկ էր կնքել զայսպիսի մարգարիտ՝ երից հաւատարմաց երրորդ մատանեաւք։

Ո՞վ մարգարիտ, որ ոչ ծովածին, այլ մարգարիտ՝ որ ծնեալ ի թագաւորական ազգէն, և սնեալ ի գիրկս սրբութեան, և նուիրեալ Աստուծոյ, որում ցանկացեալ էին տեսանել զքեզ արդարք, և խանդակաթէր ի սէր քոյ երանելին Կոմիտաս։

Զափ հասակի էր երանելւոյն ինն թզաւ և

չորս մատունս. և դղրդեալ ամենայն կողմն հիւսիսոյ գայր յերկրպագութիւն. և բազում ախտաժետաց լինէր բժշկութիւն ամենայն ցաւոց: Շինեաց զեկեղեցին՝ և զերանելին եթող ի բացեայ վասն գիջութեան որմոյն մինչև ցամաքել կրոյն: Ապա ամփոփեցաւ ի կայանս իւր:

Վերացոյց և զփայտայարկս սրբոյ կաթուղիկէին. Նորոգեաց և զխախուտ որմոյն. շինեաց զքարայարկսն: Այս եղև յամս Յովհանկան վանաց երիցու սրբոյ կաթուղիկէին:

## ԳԼՈՒԽ ԻԶ.

*Գալ Խոռեմայ զօրու բազմաւ ի Քաղկեդոն առնուլ զԿ. Պոլիս. յորդոր և ընծայ կայսերն. հաւանիլ նոցա և դառնալ յետս. դարձեալ գալ Պարսից ի Բիւզանդիա. պատերազմ մեծ ի ծովու. պարտութիւն Պարսից. հրովարտակ Խոսրովայ առ Հերակլոս. չուելն Հերակլի ի վերայ Պարսից. պատերազմ առ Տիգրանակերտիւ՝ և յաղթութեամբ և աւարաւ գալ Հերակլի ի Կեսարիա Կապադովկացւոց՝ և անտի վերստին դիմել ի վերայ Խոսրովու, և պատերազմ ի դաշտն Նինուէի. պարտութիւն Պարսից:*

Եւ եղև յայնմ ժամանակի դիմեաց գնաց Խոռեամ զաւրու իւրով ի Քաղկեդոն, և բնակեցաւ դէմ յանդիման Բիւզանդիայ, և խնդրէր անցանել և գերել զքաղաքն Թագաւորանիստ:

Արդ իբրև ետես կայսրն Երակղոս զհէնն՝ որ եկն ի կործանել զթագաւորութիւն նորա՝ ակամայ բարեկամանայ և մեծարէ զնոսա իբրև զվաստակաւորս և զսիրելի հիւրս. եւ ընդ առաջ նորա պատարագաւք, և տայր զաւրավարին և իշխանացն մեծամեծ ընծայս։ Եւ բաշխէր զաւրացն հռոգս և ճաշ և ընթրիս ամենայն զաւրացն մինչև ցեւթն աւր. և ինքն նստեալ ի վերայ նաւու կայր ի մէջ ծովուն և խաւսէր ընդ նոսա այսպէս. «Զի՞նչ կամիք առնել, կամ է՞ր եկի՞ք ի տեղիս յայս. մի՞թէ զծով իբրև զցամաք համարիք մարտնչել ընդ նմա։ Կարող է Աստուած՝ եթէ կամի, ցամաքեցուցանել զսա առաջի ձեր. բայց զգոյշ լերուք՝ զուցէ ոչ հաճեսցի Աստուած և խնդրեսցէ ի ձէնջ զվրէժ անդունդք ծովուն։ Քանզի ոչ եթէ վասն աստուածպաշտութեան ձերոյ ետ ձեզ յաղթութիւն, այլ վասն մերոյ անաւրէնութեան. մեղք մեր արարին զայս, և ո՛չ թէ քաջութիւն ձեր։ Եւ կամ զի՞նչ խնդրէ թագաւորն ձեր յինէն՝ որ ոչ առնէ ընդ իս զհաշտութիւն. բառնա՞լ կամիցի զթագաւորութիւնս իմ, մի՛ ջանասցի[1], քանզի զսա Աստուծոյ հաստատեալ է, և բառնալ զսա ոչ ոք կարէ, բայց եթէ յԱստուծոյ այնպէս ինչ թուեսցի, կամք Աստու-

[1] Տես Թով. Արծր. եր. 99. իսկ ի տպ. և ի ձեռ. օրին. էր լոկ՝ ջանասցի։

ծոյ կատարեսցին։ Եւ կամ ասիցէ, եթէ ես նըստուցից ձեզ թագաւոր. արասցէ զոր և կամեսցի, և մեք ընդունիմք։ Այլ զքէն արեան Մաւրկայ խնդրիցէ՝ խնդրեաց Աստուած ի ձեռաց Փոկասայ ի ձեռն հաւր իմոյ Հերակղի. այլ տակաւին ծարաւի է արիւնարբութեամբ։ Մինչև յե՞րբ ոչ յագեսցի արեամբ. միթէ ո՞չ կարէին Հոռոմք սպանանել զնա և բառնալ զտէրութիւնն պարսից, յորժամ ետ զնա Աստուած ի ձեռս մեր. այլ արար ի վերայ նորա ողորմութիւն։ Եւ ես զնոյն խնդրեմ ի նմանէ՝ զհաշտութիւն և զսէր։ Նւս ես խնդրեմ ի ձէնջ երիս ինչս, և լուարուք ինձ. ի բաց արարէք յաշխարհէս՝ զհուր և զսուր և զգերութիւն. և յերեցունցդ աւգուտ գտանէք, զի ոչ դուք նուազիք ի սովու, և ոչ հարկք արքունի կորնչիցին։ Եւ ես առաքեմ աւասիկ թագաւորի ձերոյ հրովարտակ պատարագաւք խընդրել ի նմանէ զհաշտութիւն և ընդ իս զխաղաղութիւն»։ Եւ նոցա ընկալեալ զընծայս՝ հաւանեցան առնել ըստ խնդրոյ նորա։ Իսկ թագաւորն պարսից ընդունէր զպատարագսն բերեալ ի կայսերէ, և զհրեշտակսն անդէն ոչ արձակէր։ Եւ հրաման տայր զաւրաց իւրոց նաւաւք անցանել ի Բիւզանդիա։ Եւ կազմեալ նաւ սկսաւ պատրաստել նաւամարտութիւն ընդ Բիւզանդիայ. և ելին ընդ առաջ նորա ի Բիւզանդիոյ զաւրք նաւամարտիկ։ Եւ եղև պատերազմ ի մէջ ծովուն՝

ուստի դարձան ամաւթով զաւրքն պարսից. և կորեան դ հազար մարդ նաւաւք, և այլ ոչ ևս համարձակեցան ի նոյն գործ։

Եւ եղև յամի լդ երորդի Խոսրովայ արքայի՝ գրէ առ Երակղոս հրովարտակ այսպէս։

«Աստուածոց պատուական և ամենայն երկրի տէր և թագաւոր և ծնունդ մեծի Արամազդայ Խոսրով՝ առ Երակլէս անմիտ և անպիտան ծառայդ մեր։

«Ո՛չ կամեցեալ տալ զանձն ի ծառայութիւն, այլ տէր և թագաւոր կոչես զքեզ. և զանձ իմ որ առ քեզ են, ծախես, և զծառայս իմ պատրես. և զզաւրս աւազակաց ժողովեալ՝ չտաս ինձ հանգչել։ Ո՞չ ապաքէն սպառեցի զյոյնս։ Եւ դու ասես վստահանալ յԱստուածն քոյ. վասն էր ոչ փրկեցին զԿեսարիա և զԵրուսաղէմ և զԱղէքսանդրիա մեծ ի ձեռաց իմոց։ Միթէ և այժմ ո՞չ գիտես՝ եթէ զծով և զցամաք ինձ հնազանդեցուցի. իսկ արդ՝ միայն զԿոստանդնուպաւլիս ո՞չ կարացից բրել։ Բայց արդ՝ զամենայն յանցանս թողում քեզ. արի՛, առ զկին քո և զորդիս, և եկ այսր։ Եւ տաց քեզ ագարակս, այգիս և ձիթենիս, որով կեցցես. և մեք սիրով նայեսցուք ի քեզ։ Մի՛ խաբեսցէ զքեզ սնոտի յոյսն ձեր. զի Քրիստոսն այն՝ որ զանձն իւր ոչ կարաց ապրեցուցանել ի հրէից. այլ սպանին կախեալ զփայտէ. զքեզ զիա՞րդ կարէ ապրեցուցանել ի

ձեռաց իմոց։ Զի եթէ իջանիցես յանդունդս ծովու՝ ձգեցից զձեռն իմ, և ըմբռնեցից զքեզ. և ապա տեսցես զիս, որպէս դու ոչ կամիցիս»։

Եւ առեալ Երակլի կայսեր զհրովարտակն՝ հրամայեաց ընթեռնուլ առաջի հայրապետին և մեծամեծացն։ Եւ մտեալ ի տունն Աստուծոյ՝ տարածեցին զհրովարտակն առաջի սրբոյ սեղանոյն. անկան ի վերայ երեսաց իւրեանց յերկիր առաջի Տեառն, և լացին դառնապէս, զի տեսցէ զնախատինսն՝ զոր նախատեցին զնա թշնամիք նորա։

Հաճոյ թուեցաւ Երակլի և ամենայն սինկղիտոսացն նստուցանել զԿոստանդոս՝ որդի Երակլի, յաթոռ թագաւորութեանն՝ որ էր մանուկ փոքր։ Եւ Երակլի հանդերձեալ զինքն՝ առնուլ զկին իւր և գնալ յարևելս. ապա յայնժամ աւելի ևս հաստատեցին զԿոստանդին ի պատիւ թագաւորութեան ըստ առաջին բանին։

Ապա պատրաստեցաւ Երակլոս կնաւն և ներքինեաւքն և իշխանաւք դրանն և արար զԶատիկն ի Կոստանդնուպաւլիս, և զայգոյ Զատիկն նաւեաց ի ծով ի Քաղկեդոն։ Հրաման տայ զաւրաց իւրոց ժողովել ի Կեսարիա Կապադովկացւոց. և ինքն չու արարեալ ի Քաղկեդոնէ՝ եկն ի Կեսարիա, և եհար զխորան իւր ի մէջ բանակին, և կոչել հրամայեաց զամենայն զաւրսն և ընթեռնուլ զհրովարտակն առաջի նոցա, և պատմէր

գեղն իւր առ նոսա։ Իսկ զաւրն Թէպէտ և ընդ բանում խռովեցան, սակայն խնդութեամբ ուրախ եղեն ի վերայ գալստեան նորա։ Աւրհնեցին զմա զպաղթութիւնն և ասեն. «Ամենայն ուրեք ուր և երթիցես՝ ընդ քեզ եմք ի կալ և ի մեռանիլ. և եղիցին ամենայն թշնամիք քոյ հող ի ներքոյ ոտից քոց, ի ջնջել զնոսա յերեսաց երկրէ տեառն Աստուծոյ մերոյ, և ի բառնալ զնախատինս իւր ի մարդկանէ»։ Զուեաց զնաց Երակլոս ճի հազարաւ, և երթեալ ի դուռն Թագաւորին պարսից. և ճանապարհ կալեալ ընդ կողմանս հիւսիսոյ՝ ել դէպ ուղիղ ի Կարնոյ քաղաք, և հասեալ ի Դրւին այրարատեան՝ աւերէ զնա և զնախճաւան։

Եւ դիմեալ ի Գանձակ արի գեւղն այն [1], կործանէ և զբագինս Հրատին մեծի՝ որում Վշնասպն [2] կոչէին։ Եւ արքայ Խոսրով փութացուցանէր զզաւրս իւր՝ որ ի յունաց գաւառին՝ զի

---

[1] Առ Թովմ. Արծ. եր. 102՝ Գանձակ Ատրպատականի։

[2] Ի ձեռ. օրին. էր՝ Վշնասպն կրէին։ Ի տպ. Վընասպն։ Մեք եդաք Վշնասպ, ուղղագոյն համարեալ զայս ձև ըստ հնչման Հայոց. տես յեր. 29 Վարդան Վշնասպ. նոյնպէս առ Ղազ. Փարպ. եր. 359, 390, 487, 489, 325, և այլն, նոր տպ. զանուանս՝ Ատր Վշնասպ, Նիխոր Վշնասպդատ, Միհր Վշնասպ, Յզատ Վշնասպ և այլն։ Իսկ ըստ պարսից հնչման անուն հրատին էր՝ گشسپ Գուշասպ, թերևս Վշասպ, այլ ոչ Վնասպ կամ Վշնասպ։

հասցէ նմա յաւգնականութիւն։ Զի՛ թէպէտ և կազմեցին զերիվարս իւր, և ետ ի ձեռս Շահենայ պատգոսապանի, այլ նուազ էր զաւրն և չկարացին ունել զդէմ. զգանձս իւր ամբարէր ի Տիզբոն, և ինքն պատրաստէր ի փախուստ։ Իսկ զաւրն պարսից փութանակի հասանէին ի Մըրծուին։ Ազդ լինի Երակլի կայսեր եթէ եկն Խոռեամ ի Մրծուին. առնու զզաւրս իւր և գերութիւն, և դառնայ առ ամուր աշխարհաւն Մարայ. գայ հասանէ ի Փայտակարան։ Ազդ եղև Խոսրովու՝ եթէ դարձաւ Երակլոս և եհաս ի Փայտակարան, և կամի ընդ Աղուանս անցանել ի Վիրս. հրաման ետ զաւրավարի իւրոյ Շահր Վարազայ՝ զի զառաջն կալցի։ Եւ նա փութով հասանէ յԱյրարատ, և անցանէ ի Գարդման ընդդէմ նորա, և բանակի ի միւս Տիգրանակերտի յանդիման նորա։ Եւ Շահէնն լուաւ հասեալ բանակեցաւ ի թիկանց Երակլի ի Տիգրանակերտ աւանի։ Եւ էին սոքա աստի, և նոքա անտի բանակեալ։ Եւ բանակն Երակլի ի մէջ նոցա երկոցունց։

Իբրև ետես Երակլոս, եթէ ի մէջ արկին զնա՝ դարձաւ ի վերայ զաւրուն՝ որ ի թիկանց կողմանէ, հայճէպ զաւրութեամբ եհար զնա և խորտակեաց և գնաց ընդ Ծղուկս. և թափեցաւ ընդ լեռնակողմն ի դաշտն Նախճուանն ի ձմերան ժամանակի։

Եւ Շահր Վարազ զաւրու իւրով, և Շահէնն իւրովք զերծելովք գնացին զհետ նորա։ Իսկ նորա հասեալ անցանէ ընդ հուն գետոյն Երասխայ՝ յաւանն Վրնջունիս և բանակի յանդաստանս նորա։ Եւ զաւրն պարսից հասեալ՝ ոչ կարացին անցանել զգետոփն այն աւրն։ Հասանէ Երակլոս ի Բագրևանդ և անցանէ յԱպահունիս, և բանակի ի գեւղն՝ որ կոչի Հրճմունք։ Եւ Շահր Վարազ ափուէր զզաւրս իւր յԱղիովիդ, և ինքն այրընտիր եղեալ զ հազար սպառազինաց վառելոց քաջաց։ Եւ երթեալ նստի յԱրճէշ գաւառի՝ դարանամուտ լինել, որպէս զի ի մէջ գիշերին անկցի ի վերայ բանակին Երակլի։

Ազդ լինի Երակլի ի ձեռն արձակելոյ լրտեսաց՝ եթէ եկն Խոռեամ, և դարանակալ եղև ի վերայ քոյ։ Յայնժամ Երակլոս ըստ նմին աւրինակի այրընտիր և ձիընտիր առնէ, և յարձակի ի վերայ նորա քսան հազարաւ, և հասեալ յԱղի, պատանէ զարսն յառաջմարտիկ[1] հինգ հարիւր։ Նախ՝ զնոսա կոտորէ. և զերծեալ մի ոմն ի հեծելոցն՝ հասեալ ի յԱրճէշ գոյժ արկանէ Խոռեմայ՝ եթէ հասեալ է թշնամին ի վերայ քոյ, և կոտորեցին զզաւրն պէշոպա[2] յԱղի։ Եւ բարկացաւ Խո-

[1] Այսպէս ի ձեռ. օրին. իսկ ի տպ. էր՝ զաւրսն քաջամարտիկ։

[2] Ոչ է այս անուն զաւրապետի ուրուք, այլ ազգա-

*ռեամ ի վերայ առնն, հրամայեաց զնա կապել ոտիւք և ձեռաւք, և ասէ. «Երակլոս ցարդ յինէն փախստական գնայր. արդ եկեալ հասեալ եմ այսպիսի զինու, և նա յինէն ոչ փախիցէ»։ Այն ինչ նորա բանքն ի բերան էին, և նոքա հասին ստիպով ի վերայ նոցա, պատեցին զքաղաքն երեք կուսէ, և բորբոքեցին զնա հրով, և այրեցին զզաւրացն բազմութիւնս։ Եւ եթէ ելանէր ոք ի նմանէն ի փախուստ, անդէն ըմբռնեալ սատակէին. և ապրեալ ոչ ոք ել ի նոցանէ, զի զամենեսին եկեր հուր ահագին։ Բայց Շահր Վարազ զերծաւ՝ նստեալ ի վերայ նուաստ երիվարի. այնպէս կերծեալ գնաց առ զաւրս իւր, զոր ժողովեալ էր յԱղիովիտ գաւառի։*

*Իսկ Երակլոս առ զաւար և զկապուտ բանակի նոցա՝ դարձաւ յաղթութեամբ մեծաւ, և երթեալ հասանէ ի կողմանս Հեսարացւոց. և Շահր Վարազ գնաց զհետ նորա փութանակի։ Բայց զի յաւգնեալ էր զաւրն՝ խորհեցաւ բազում գաւառս ընդ մէջ արկանել, զի հանգիցէ զաւրն և կազմիցի. և գնացեալ ի կողմանս Ասիացւոց, անդ սփռեալ դադարեցին։*

*Յայնժամ առեալ Երակլի զզաւրս իւր՝ դար-*

---

*ւաղութիւն պարսիկ բառիս پیشوا փեշուա, թերևս ըստ նախկին հնչման՝ պեշովայ, այսինքն՝ յառաջապահ գունդ։*

ձաւ յերկիրն Հայոց, անցեալ ընդ Շիրակ հասանէ ի հուն գետոյն Երասխայ, և անց ընդ գետաւն առ Վարդանակերտաւն աւանաւ, երթեալ թափեցաւ ի Գոգովիտ գաւառ։ Եւ Ռոճիկ Վահանայ և զաւրուն պարսից կարծեցեալ զնոսա փախստական գնալ։ Իսկ նորա ճանապարհ կալեալ ի Հեր և ի Զարևանդ գաւառ, դէպուղիղ ի Տիզբոն ի վերայ Խոսրովու։ Եւ իբրև միջամուխ եղև ի սահմանս Ատրպատական գաւառի, ապա ուրեմն լուր եղև Ռոճ Վեհանայ, առ զզաւրս իւր և գնաց զհետ նորա ի Նախճաւան քաղաք։ Այնպէս փութով գնացեալ զտիւ և զգիշեր, մինչև չոգաւ եհաս մերձ ի նա։ Եւ նորա անկեալ յայնկոյս լերինն Զարասպայ [1] յերկիրն Ասորեստանեայց։ Եւ սոքա պնդեցան զհետ նորա. և նոցա դարձեալ ընդ արևմուտս՝ գնաց ի Նինուէ։ Եւ եկեալ այլ զաւրս յաւգնականութիւն Ռոճ Վեհանայ ի դրանէ արքային՝ արք ընտիր յամենայն թագաւորութենէն, և խառնեալ ի միմեանս՝ հետամուտ եղեն Երակլի։ Իսկ Երակլոս ձգեաց զնոսա մինչև ի դաշտն Նինուէի՝ և դարձ ետ ի վերայ նոցա սաստիկ զաւրութեամբ. և էր բալ ի վերայ դաշտին։ Եւ ոչ գիտացին զաւրն պարսից զդարձն Երակլին ի վերայ նոցա մինչև երթեալ խառնեցան ընդ միմեանս։

---

[1] τὸ ὄρος τοῦ Ζάρα. Chron. Pasch.

Եւ այնպէս զաւրացոյց տէր զողորմութիւն իւր ի վերայ Երակլի յաւուր յայնմիկ, մինչև հարեալ սատակեցին զնոսա իբրև զայր մի և սպանին զզաւրավարն ի պատերազմի։ Եւ զմնացեալսն շրջափակ արարեալ՝ կամէին զամենեսեան սատակել։ Իսկ նոցա բողոք կալեալ՝ թէ «աստուածասէր և բարերար տէր, արա ի վերայ մեր ողորմութիւն»։ Յայնժամ Երակլոս հրամայեաց զնոսա թողուլ ի բաց։ Եւ ինքն հրամայեաց Երակլոս ասպատակել ի վերայ երկրին։

## ԳԼՈՒԽ ԻԷ.

*Փախուստ Խոսրովայ. առնուլ Հերակլի զՏիզբոն և այրել, և դառնալ յԱտրպատական. սպանումն Խոսրովայ և քառասուն որդւոց նորին. թագաւորել Կաւատայ և հաշտութիւն առնել ընդ Յոյնս, և ի բաց թողուլ զսահմանս։*

Իսկ Խոսրով արքայ պարսից փախստական գնաց՝ անցանել ընդ Դգլաթ գետաւ՝ ի Վեհ Կաւատ, հատեալ զկամուրջ Նաւակամրջացն։ Եւ Երակլոս հասեալ բանակեցաւ առ դուռս մերձ Տիզբոն քաղաքի, և այրեաց զամենայն ապարանս թագաւորականս շուրջ զքաղաքաւն։ Եւ ինքն գնաց յԱտրպատական ամենայն աղխիւն և բազմութեամբ իւրով՝ զի էին միտք Երակլի դարձուցեալ ի Խոռեմայ։ Իսկ Խոռեմ ոչ եկն Խոսրով

արքայի յաւգնականութիւն, այլ եկաց անդէն ուր էրն ի կողմանս արևմտից։ Եւ Խոսրով արքայ դարձաւ անդրէն ի տուն, և հրամայեաց կազմել զնաւակամուրջն։ Բայց տիկնայքն և որդիքն արքայի և գանձն և ախոռն արքունի երիվարացն էին ի Վեհկաւատ։

Սկսաւ Խոսրով ժողովել զմնացեալ նախարարսն. և խաւսէր ընդ նոսա ահագին դատաստանաւք՝ եթէ «ընդէ՞ր և ոչ դուք մեռարուք ի տեղւոջ պատերազմին, քան եթէ գալ առ իս. արդեօք զԽոսրով մեռեալ կարծէիք»։ Յայնժամ խորհուրդ միաբանութեան ի մէջ առեալ ասեն. «Թէպէտ ի թշնամեացն ապրեցաք, բայց ի ձեռաց դորա ոչ գոյ մեզ ապրել. այլ եկայք իմասցուք ինչ»։ Յայնժամ երդուան առ միմեանս, և գնացեալ ի գիշերի ընդ զոմն ի Վեհկաւատ, կալան զնա և կարգեցին ի վերայ նորա պահապանս. և թագաւորեցուցին զԿաւատ զորդի նորա. նաև զերիվարսն որով եկեալ էր Խոսրով ի Տիզբոն, հանին գաղտաբար։ Իսկ յորժամ եհաս գոյժ աղաղակին այսորիկ առ Խոսրով՝ ընդոստուցեալ յահէն՝ զարհուրեցաւ. խնդրեալ երիվար, և մտեալ յասպաստանն ոչ գտին։ Եւ արքայ Կաւատ եկն անց ամենայն զաւրաւքն իւրովք։ Եւ արքայ Խոսրով յայլակերպս եղեալ՝ եմուտ ի բուրաստանն արքունի, և մտեալ ընդ թաւ թփով ծաղկոցին ղաւղեալ դադարեաց։ Եւ

եկեալ Կաւատ արքայ հրամայեաց խնդիր առնել, և գնացեալ ի բուրաստանն՝ գտին զնա. կալան զնա և ածին դահիճ անդր։ Եւ հրամայեաց Կաւատ արքայ և սպանին զնա։ Եւ վասն որդւոցն Խոսրովու ասեն նախարարքն. «Ո՛չ է արժան ապրել նոցա. զի խռովութիւն յարուցանեն»։ Յայնժամ հրաման ետ արքայ Կաւատ և սպանին զամենեսին ի միում ժամու՝ արս խ. և խնդրեաց յինքըն զտիկնայս և զգանձս և զախոռ արքունի։

Ապա սկսաւ արքայ Կաւատ խորհուրդ առնել ընդ նախարարս թագաւորութեանն իւրում եթէ «պարտ է հաշտութիւն առնել ընդ կայսեր, և ի բաց թողուլ զամենայն սահմանս թագաւորութեան նորա. և ընդ ամենայն կողմանս հաշտութիւն արասցուք»։ Եւ հաւանեցան միաբանութեամբ առնել այնպէս։ Յայնժամ հրամայէ Կաւատ արքայ գրել առ Երակլոս հրովարտակ ողջունի. և թողու ի բաց զամենայն սահմանս նորա։ Եւ տայ տանել Նմա երդումն. աղ կնքել և տանել ընդ հրովարտակին. արձակէ զՌաշ[1] ոմն իշխան, մեծամեծ ընծայիւք հաստատել զնա ի վերայ միաբանութեանն այնորիկ։

Արդ՝ իբրև եհաս Ռաշն այն և ետ աւետիս և մատոյց զհրովարտակն, և կալաւ զառաջեաւ

[1] Ի ձեռ. օրին. էր՝ զըռաշան ոմն։

զընծայսն, մեծապէս գոհացան զԱստուծոյ Երակլոս արքայ և ամենայն զաւրք իւր։ Յայնժամ հրաման ետ արքայ Երակլոս արձակել զբազմութիւն գերութեանն և զաւարն ամենայն ի բաց տալ։ Եւ գրէ կտակ աւրհնութեան, և հաստատէ խաղաղութիւն հանդերձ երդմամբ, և արձակէ զոմն յիւրոց գլխաւոր նախարարացն՝ որում անունն էր Յուստաթ [1], հանդերձ մեծամեծ ընծայիւք։ Եւ զՌաշն այն մեծարեալ՝ լնու պատուական գանձիւք, և արձակէ։ Եւ իւր չուեալ խաղաղութեամբ գնաց ի տեղի իւր։ Եւ Յուսդատ երթեալ ընծայիւք առաջի Կաւատայ արքայի, և մատուցանէ զհրովարտակն, և առաջի ունի զընծայսն։ Իսկ արքայ Կաւատ խնդութեամբ ընկալաւ զնա. և դարձեալ վերստին հաստատէ առ նմա զբանս խաղաղութեան, և սահմանացն հատելոց երդմամբ հրովարտակաց. և կնքեալ աղ ըստ առաջին աւրինակին զՅուսդատ ըստ առաջին թագաւորաց։ Եւ յանդիման նորա հրամայէ գրել առ Շահր Վարազ, զի ժողովեսցէ զզաւրն և եկեսցէ անցցէ յերկիրն պարսից, և ի բաց թողցէ զսահմանս յունաց. թէպէտ և նա ոչ կամեցաւ լսել հրամանին այնմիկ. և զՅուսդատ արձակեցին լի գանձիւք, և գնաց։

[1] Εὐστάθιον μεγαλοπρεπέστατον ταβουλάριον. Chron. Pasch.

## ԳԼՈՒԽ ԻԲ.

*Մարզպան լինել Վարազտիրոցի որդւոյ Սմբատայ. ընտրիլ կաթուղիկոս Քրիստափորայ և անկանիլն. յաջորդելն Եզրի. վախճանիլ Կաւատայ, և թագաւորել Արտաշրի որդւոյ նորա. գիր Հերակլի առ Խոռեամ, և խնդրել զսուրբ խաչն ի նմանէ. սպանումն Արտաշրի և թագաւորել Խոռեմայ. սպանումն Խոռեմայ և թագաւորել Բոր դստերն Խոսրովայ. յետ նորա Խոսրովայ ումեմն. և յետ նորա Ազարմիդուխտ դստեր Խոսրովայ. յետ նորա Որմզդի. ապա թագաւորել Յազկերտի:*

Յայնժամ կոչէ արքայ Կաւատ զՎարազտիրոց զորդի Սմբատայ Բագրատունւոյ՝ Խոսրով Շում կոչեցելոյ, և տայ նմա զիշխանութիւն տանուտէրութեանն. առնէ զնա մարզպան. և արձակէ ի Հայս հանդերձ ամենայն ընչիւք հայրենի, զի զաշխարհն ի շինութեան պահեսցէ: Եւ իբրև եկն նա ի Հայս, խնդութեամբ ընկալան զնա ամենայն աշխարհն Հայաստանեայց. բայց զի մեռեալ էր երանելին Կոմիտաս կաթուղիկոսն և կայր տեղին անհրամանատար. խորհուրդ առնէր ընդ ամենեցուն տեսանել զոմն արժանաւոր: Յայնժամ առաջադրութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց տեառն՝ ընտրեցին զոմն անապատա-

կան՝ յԱբրահամեան տանէ՝ որում անունն էր Քրիստափոր։ Զնա նստուցին կաթուղիկոս, և նա դիպաւ այր հպարտ և ամբարտաւան, որոյ լե-զու խօր էր խըրև զսուր սուսեր։ Սա բազում խռովութիւն յուզեաց և արկ սուր ի մէջ ընդ Ասպետ և ընդ եղբայր իւր չարախօսութեամբ։ Կալաւ սա զաթոռ հայրապետութեան ամս բ. և յամին երրորդի եդին ի վերայ նորա բամբա-սանս։ Եւ ժողովեալ ամենայն եպիսկոպոսունս և իշխանս արարին քննութիւն։ Եւ եկեալ արք եր-կու ի նորին ընտանեաց և վկայեցին զնմանէ առաջի ամենայն բազմութեանն. ապա արձակեալ զոմանս յեպիսկոպոսաց անտի։ Եւ առին ի նմանէ զփակեղն պատուոյ քահանայապետութեան, և ընկեցին զնա ի կարգէն և հալածեցին զնա անար-գանաւք։ Եւ անդէն փութանակի նստուցին կա-թուղիկոս զԵզր ի Նիգ գաւառէ, որ էր առ երա-նելւոյն Կումիտասաւ կարգեալ փակակալ սրբոյն Գրիգորի. և սա էր այր խոնարհ և հեզ, որ ոչ կամէր զոք ցասուցանել, և ոչ ելանէր ի բերա-նոյ նորա բան տգեղ։

Եւ արդ՝ մինչդեռ խորհէր Կաւատ արքայ շինութեան աշխարհի, և կամէր ընդ ամենայն կողմանս խաղաղութիւն առնել, կեցեալ ամիսս վեց՝ վախճանեցաւ։ Եւ նստուցին թագաւոր զԱր-տաշիր զորդի նորա. և նա էր մանուկ տղայ։ Յայնժամ Երակլոս գրէ առ Խոռեամ այսպէս.

«Կաւատ Թագաւոր ձեր վախճանեցաւ և քեզ հասեալ Թագաւորութեանն այն աթոռ. և ես քեզ տամ գնա, և զաւակի քո՝ յետ քո։ Եւ եթէ զաւր պիտոյ է՝ արձակեցից յաւգնականութիւն որչափ և պիտոյ իցէ քեզ, և ուխտ դիցուք ի մէջ իմ և ի մէջ քո հանդերձ երդմամբ գրով և կնքով»։ Յայնժամ դիւրաւ հաւանեալ Խոսրմայ՝ Թողու ի բաց զԱղեքսանդրիա, և առեալ զամենայն զաւրս իւր և ի մի վայր գումարեաց, և Թողեալ զնոսա, և ինքն սակաւուք գնաց ի ժամադիր տեղին, ուր ասացեալ էր նմա Երակլի։ Եւ տեսեալ զմիմեանս ուրախ լինէին մեծապէս։ Յայնժամ երդուաւ նմա Երակլոս՝ տալ զԹագաւորութիւնն զայն, և խոստանայ նոյնպէս որդւոց նորա յետ նորա, և զաւր որչափ և պիտոյ իցէ։ Եւ խնդրէր առաջին խնդիր ի նմանէ զԽաչն կենսաբեր՝ զոր գերեաց նա յԵրուսաղէմէ։ Յայնժամ երդուաւ նմա Խոռեամ և ասէ. «Յորժամ հասից ի դուռն արքունի, նոյն ժամայն խնդիր արարից Խաչին. և տաց բերել առ քեզ։ Այլ և պայման սահման եդից՝ ցոր վայր և դու կամիցիս, արա վասն նորա հաստատութիւն գրով և կնքով և աղիւ»։ Եւ խնդրեաց ի նմանէ զաւր սակաւ, և մեկնեցան գնացին ի միմեանց։ Իսկ Խոռեմայ առեալ զբազմութիւն զաւրաց իւրոց՝ գնաց ի Տիզբոն, և հրաման տուեալ ոմանց՝ սպանին զաղայ Թագաւորն զԱրտաշիր, և ինքն երԹեալ նստաւ յաԹոռ Թա-

գաւորութեանն. և զամենայն արս գլխաւորս՝ որ ի դրանն կամ որ ի զաւրուն, յորում ոչ կարէր վստահանալ, հրաման ետ սրով սատակել զնոսա, և զայլս կապանաւք ետ տանել առ Երակլոս։

Յայնժամ արձակեաց երանելին Երակլոս արս հաւատարիմս առ Խոռեամ վասն տէրունեան Խաչին։ Եւ նորա խնդիր արարեալ մեծաւ ստիպով հազիւ հազ ետ ցարսն, որ եկեալ էին։ Եւ նոքա առեալ գնացին փութանակի։ Եւ ետ նոցա ինչս ոչ սակաւ, և մեծաւ ուրախութեամբ արձակեաց զնոսա պատուով։

Իսկ Խոռեամ յաւուր միում զգեցեալ էր զհանդերձ թագաւորական և նստեալ ի վերայ երիվարի շրջէր ի մէջ զաւրուն ցուցանել զինքն. յանկարծակի ի թիկանց կուսէ յարձակեցան ի վերայ նորա, հարին զնա և սատակեցին։ Եւ թագաւորեցուցին զԲորն դուստր Խոսրովայ՝ որ էր կին նորին, և կարգեցին հրամանատար ի դրանն զԽոռոխ Որմիզդ՝ որ էր իշխան կողմանց Ատրպատականի։ Արդ՝ Խոռոխն այն յղէ առ Բամբիշն՝ թէ «լեր ինձ կին». և նորա յանձին կալեալ ասէ, «Ե՛կ միով արամբ հասարակ գիշերի, և ես արարից զկամս քո»։ Եւ յարուցեալ հասարակ գիշերի միով մանկամբ գնաց. և իբրև եմուտ ի տաճարն արքունի՝ յարեան ի վերայ նորա պահապանք դրանն և հարեալ սպանին զնա։ Եւ կալաւ Բամբիշն զթագաւորութիւն ամս բ և մե-

ուաւ։ Յետ նորա Խոսրով ոմն յազգէ Սասանայ։ Եւ յետ Խոսրովայ՝ Ազարմիդուխտ դուստր Խոսրովայ։ Եւ յետ սորա Որմզդի՝ Թոռն Խոսրովայ՝ զոր խեղդամահ արարին զաւրն Խոռեմայ։ Եւ ապա թագաւորէ Յազկերտ որդի Կաւատայ՝ Թոռն Խոսրովայ, որ ունէր զթագաւորութիւնն երկեւղիւ, զի պատառեալ բաժանեցան զաւրք աշխարհին պարսից՝ յերիս մասունս։ Զաւր մի այն՝ որ ի պարսից և ի յարևելից կողմանէ։ Եւ զաւր մի Խոռեմայ՝ որ յԱսորեստանեայց կողմանէ։ Եւ զաւր մի՝ որ յԱտրպատական կողմանէ։ Բայց թագաւորութիւն նորա էր ի Տիզբոն, և ամենեքին միաբան պատուէին զնա միաբանութեամբ ամէն [1]։

[1] Ի ձեռ. օրին. էր՝ այսէ։

# ԳԼՈՒԽ ԺԹ.

*Գալ սրբոյ Խաչին ի սուրբ Երուսաղէմ. որոշիլ սահմանի թագաւորացն երկոցունց. ընդունիլ Եզրի զժողովն Քաղկեդոնի յանդիմանէ Մժէժ Գնունւոյ. խորհուրդ Մժէժի ընդ Ռստոմայ ի վերայ Վարազտիրոց ասպետի. փախուստ Վարազտիրոցի. երդնուլ Թագաւորին նմա. երթալն նորա ի պալատն և մեծարիլ. չար խորհուրդ Աթալարիկոսի ընդ իշխանաց ի վերայ հօրն. յայտնել խորհրդոյն և մահ նոցա. աքսոր Վարազտիրոցի. քաջութիւն Դաւթի Սահառունւոյ և լինիլ կիւրապաղատ. գործք Թէոդորոս ի Ռշտունեաց տեառն։*

Իսկ զտէրունեան սուրբ Խաչն ընկալեալ երանելի աստուածասէր և երջանիկ թագաւորին Երակլի, գումարէ զզաւր իւր յորդոր և խնդալից սրտիւ։ Եւ չու յուղի անկեալ հանդերձ ամենայն թագաւորական սպասաւորութեամբն պատուելով զսուրբ հրաշալի և զերկնաւոր դիւան, և տարեալ հասուցանէ ի քաղաքն սուրբ հանդերձ ամենայն սպասիւք եկեղեցւոյ՝ որ ապրեալ էր ի ձեռաց թշնամեացն ի Բիւզանդիա քաղաքի։ Ապա անդ ոչ սակաւ ինչ լինէր ուրախութիւն յաւուր յայնմիկ ի մտանել նոցա յԵրուսաղէմ։ Զայն լա-

լոյ և ողբոյ և հեծութեամբ արտասուաց ահագին բորբոքման սրտից նոցա խանդաղատանաց, և կսկծելոյ աղեացն Թագաւորին և իշխանացն և զաւրացն ամենեցուն և բնակչացն այնոցիկ՝ որ ի մէջ քաղաքին։ Եւ ոչ ոք կարէր երգել զտէրունեան երգս յահագին և յաղիողորմ խանդաղատանացն Թագաւորին և ամենայն բազմութեանն։ Եւ կարգեալ հաստատեաց ի տեղի իւր. և զամենայն սպասս եկեղեցեացն եդ յիւրաքանչիւր տեղիս, և բաշխեաց ամենայն եկեղեցեացն և բնակչաց քաղաքին աւրհնութիւն և գինս խնկոց։

Եւ գնաց ինքն զճանապարհս իւր դէպ ուղիղ ի միջագետս Ասորւոց, զի կալեալ հաստատեսցէ ընդ ինքեան զքաղաքս սահմանացն։ Եւ սահման հաստատեցաւ նոյն՝ որ առ Խոսրովաւ և Մաւրկաւ հաստատեալ էր։ Եւ եկաց Խաչն տէրունական յաստուածակերտ քաղաքին մինչև ցմիւսանգամ առած Երուսաղէմի յորդւոցն Իսմայէլի։ Եւ ապա գնաց փախստական ի քաղաքն Թագաւորանիստ հանդերձ ամենայն սպասիւք եկեղեցւոյն։

Եկն ապա զաւրավարն յունաց Մժէժ Գնունին ի Հայաստան երկրէն, և յինքն կալաւ զամենայն երկիրն ըստ ասացելումն սահմանին։ Ասէ ցկաթուղիկոսն ցԵզր՝ երթալ նմա յերկիր սահմանացն և հաղորդել աւրինաւք ընդ կայսեր. ապա թէ ոչ՝ արասցուք մեզ այլ կաթուղիկոս. և

դու կալ զիշխանութիւնդ քոյ ի պարսից կողմանէ։ Իսկ կաթուղիկոսն իբրև ոչ կարաց թողուլ զերկիր իշխանութեան իւրոյ՝ խնդրեաց ձեռնարկ հաւատոյ ի թագաւորէն։ Եւ վաղվաղակի առաքեցաւ նմա տումար գրեալ ձեռամբ թագաւորին, և նզովեալ զնեստոր և զամենայն հերձուածողս։ Բայց ոչ էր նզովեալ զժողովն Քաղկեդոնի։ Եւ գնաց կաթուղիկոսն յերկիրն Ասորեստանի, ետես զթագաւորն և հաղորդեցաւ ընդ նմա աւրհնաւք։ Եւ խնդրեալ ի թագաւորէն պարգևս զաղն Կողբայ, և առեալ զպարգևն դարձաւ մեծաւ շքով ի տուն իւր։ Եւ ապա յայնմհետէ նստէր ի մէջ բանակի յունաց, մինչև զաւրավարին հաճոյանալ ըստ կամաց նորա։ Կարգէր զկարգս զինուորացն և բաշխումն շտեմարանաց ի վերայ ամենայն երկրին։

Իսկ Վարազտիրոց ասպետ՝ անուանեալ ի թագաւորաց Ջաւիտեան Խոսրով՝ որդի մեծին Խոսրովայ Շումին, շինեաց բոլորովին զամենայն աշխարհն Հայոց։ Բայց ոչ նուաճեալ հնազանդեցաւ իշխանին մեծի՝ որ յԱտրպատական աշխարհին՝ որում Խոռոխ Որմզդն կոչէին։ Նաև ոչ յետ նորա որդւոյ նորին՝ Ռոստոմայ [1] որ էր իշխան ի կողմանս Ատրպատականի. և էր խռովութիւն մեծ ի մէջ երկոցունց։ Ապա և զաւրավարն յու-

[1] Ի տպ. էր՝ Ռաստոմայ։

նաց Մժէժ սկսաւ և նա առնել չարախաւսութիւն զասպետէ առ Ռոստոմայ իշխանին՝ որ յԱտըրպատական աշխարհին. «Մի կացցէ սա ի Հայս. ապա թէ ոչ՝ խռովութիւն մեծ լինիցի ի մէջ երկոցունց թագաւորացն»։ Եւ արձակեալ նորա զեղբայր իւր Գարիքպետ, զի երթեալ ձմերեսցէ ի Դրունի, և ապա կապեսցեն զասպետ և առեալ գնասցեն։ Արդ՝ զի ամենայն դաւրն պարսից սիրէին զասպետ, մի ոմն յիշխանաց անտի մեծ ազդ արար նմա և ասէ. «Տես զանձն քո՝ զի վաղիւ կապելոց են զքեզ»։ Իսկ ասպետ առեալ զկին իւր և զորդիս՝ փախեաւ ի գիշերի, և ճանապարհ կալեալ գնաց ի Տարոն։ Եւ անդ երթեալ ժողովեաց զզաւրս իւր. և խնդրեալ երդումն ի թագաւորէն Երակլէ՝ զի մի հեռացուսցէ զնա յաշխարհէն իւրմէ, և ընկալեալ երդումն հաւատարիմ՝ երթեալ յանդիման լինէր նմա յԱսորեստանեայց աշխարհին։ Յայնժամ երդուաւ նմա թագաւորն Երակլոս և ասէ. «Կացցես առ իս սակաւ ժամանակս, ապա արձակեցից զքեզ պատուով մեծաւ յերկիր քո»։ Եւ մեծացոյց զնա քան զամենայն պատրիկսն՝ որ էին ի թագաւորութեան նորա։ Եւ գնացեալ ի պաղատն՝ ետ նմա ապարանս թագաւորականս և դահոյս արծաթի և գանձս բազումս յոյժ։ Եւ որդի նորա Սմբատ էր սիրելի սենեկապետին Երակղի։

Եւ այս է չարութիւն եղեալ յորդի կայսերն

Հերակղի՝ ի յանցս մեծս, որում անունն էր Աթալարիկոս՝ որ ի խոր վիրաւորեաց [1] զսիրտ հաւրն և խրամատեաց զհրաշալի անձն, և յերեսաց նորա զգեղեցկութիւնն, և պատճառք (կորստեան) իւր անձին և բազմաց։ Քանզի միաբանեալ սա և Թէոդորոս եղբաւր որդի Հերակղի անուանեալն Մագիստրոս և բազումք ի մեծամեծաց քաղաքին, և Վահան Խոռխոռունի։ Սոքա ամենեքին միաբանեալ սպանանել զՀերակլոս, և զորդի նորա զԱթաղարիկոս նստուցանել յաթոռ թագաւորութեանն։ Գտաւ ի խորհրդեանն յայնմիկ լեալ Վարազտիրոց՝ որդի Խոսրովայ Շումն Սմբատայ. բայց չէր միաբանեալ սպանման թագաւորին և որդւոց նորա. այլ ասէ. «Դուք ասէք զնոսա տեղապահս Աստուծոյ, ապա ոչ է պարտ լինել այդմ բանի, և յայդմ խորհրդի ոչ միաբանիմ ընդ ձեզ»։ Եւ բանք խորհրդեանն պատմեցաւ լիով յունկն թագաւորին յումեմնէ կորատորէ՝ որ էր լեալ ի խորհրդեանն։ Իբրև հաւաստութեամբ ի վերայ եհաս թագաւորն՝ հրամայեաց ընդ առաւաւտն ունել զորդի իւր և զեղբաւրորդի և զամենեսեան որք ընդ նոսա էին. կտրել զքիթս և զաջոյ ձեռնն ամենեցուն։ Բայց արձակեալ պատգամ առ սպետ՝ ասէ. «Փոխանակ զի արարեր դու այդ-

[1] Այսպէս ի տպ. ուղղեալ. իսկ ի ձեռ. օրին. էր որ ի Խոռխոռունեաց։

պլիսի առ իս, և ոչ կամեցար արկանել զձեռն քոյ յարիւն իմ և յարիւն որդւոց իմոց, և ես ոչ արկից զձեռն իմ ի քեզ և յորդիս քո: Բայց երթ կաց ուր և հրամայեցից քեզ, և արարից ի վերայ քո ողորմութիւն»: Եւ թէպէտ բազում անգամ աղաղակեցին կողմունքն՝ թէ «մեռցի», սակայն նա ոչ կամեցաւ լսել նոցա: Այլ հրամայեաց տանել զնա և զկին նորա և զորդիս նորա ի կղզի և ի քաղաքն նեղութեանն՝ որում Աքսորն կոչեն:

Գտաւ լեալ ի խորհրդեանն յայնմիկ և Դաւիթ Սահառունի, զոր կալեալ Մժեժայ [1] առաքէ ի պաղատն: Եւ հատեալ նմա զկապանս իւր ի ճանապարհին, սատակէ զարսն՝ որք տանէին զնա: Եւ դարձեալ անդրէն միաբանէ ընդ ինքեան զզաւրս Հայոց՝ յարձակի ի վերայ Մժեժի Գնունւոյ զաւրավարին յունաց, հարեալ սատակէ զնա և զՎարազ Գնել Գնունի: Եւ առ յինքն զաւրավարութիւնն կամակցութեամբ և սիրով ամենայն զաւրացն:

Իսկ թագաւորն առնէ ըստ խնդրոյ իշխանացն զնա իշխան ամենայն աշխարհացն՝ և տայ նմա պատիւ կիւրապաղատութեանն, և հաստատէ զնա ի ծառայութիւն իւր, և կալեալ զիշխանու-

---

[1] Ի ձեռ. օրին. ամենայն ուրեք էր՝ Մեժէժ, ըստ յուն. Μεζέζιος.

*թիւնն ամս գ ամենայն ճոխութեամբ մեծապէս։ Ապա անարգեալ ի զաւրացն՝ հալածեցաւ, և անմիաբան լեալ ամենայն ազատացն՝ կորուսին զերկիրս Հայոց։ Բայց միայն աստուածասէր իշխանն Ռշտունեաց գաւառին Թէոդորոս կազմէր զզաւրս իւրոյ կողմանն հանապազ և զգուշանայր զտիւ և զգիշեր ըստ իւրոյ քաջ իմաստութեանն, ոչ սակաւ աճիւս գործէր ի թշնամեացն։ Եւ շինեալ զԱղթամար կղզի՝ անդ ապրեցուցանէր զբազում գաւառս։*

## ԳԼՈՒԽ Լ.

*Բարձումն Սասանականին որ կալաւ զիշխանութիւնն ամս շխբ. և ծագումն Մահմետի. և մուտ որդւոցն Իսմայէլի յաշխարհն Հայոց. մահ Երակլի և Թագաւորել Կոստանդեայ։*

*ԶԱբրահամեանն ճառեցից զզաւակէ. ոչ զազատէն, այլ զայն՝ որ յաղախնոյն ծնեալ, յորոյ վերայ անսուտ կատարեալ աստուածային բանն, եթէ «Ձեռք նորա յամենեսեան, և ամենեցուն ձեռք ի նա»։*

*Յայնժամ երթեալ ժողովեցան յԵդեսացւոց քաղաքն՝ երկոտասան ազգք ամենայն ցեղիցն հրէից։ Եւ եղև իբրև տեսին՝ թէ գնաց մեկնեցաւ ի նոցանէ զաւրն պարսից, և թողին ի բաց*

զքաղաքն խաղաղութեամբ, փակեցին զդուռն և ամրացան ի նա. և ոչ ետուն մտանել ի նոսա զաւրացն Հռովմայեցւոց տէրութեանն։ Իսկ թագաւորն յունաց Երակլոս հրաման ետ պաշարել զնա։ Եւ իբրև գիտացին սոքա՝ եթէ ոչ կարեմք ունել զդէմ նորա պատերազմաւ. խաւսեցան ընդ նմա ի խաղաղութիւնն։ Եւ բացեալ զդուրս քաղաքին՝ երթեալ կացին առաջի նորա։ Յայնժամ հրաման ետ նոցա երթալ դադարել իւրաքանչիւր ի բնակութիւն. և գնացին նոքա։ Եւ կալեալ զճանապարհս անապատին գնացին ի Տաճկաստան առ որդիսն Իսմայէլի, կոչեն զնոսա յիւրեանց աւգնականութիւն, և ծանուցանեն նոցա զհարազատութիւն իւրեանց գրոց կտակաւ։ Իսկ նոցա թէպէտ և հաւանեալ վասն մերձաւոր հարազատութեանն, այլ ոչ կարէին առնել հաւանութիւն ի մէջ բազմութեանն նոցա, և զի էին պաշտամունք նոցա բաժանեալ ի միմեանց։ Յայնմ ժամանակի այր ոմն ի նոցունց իսկ յորդւոցն Իսմայէլի՝ որում անունն էր Մահմէտ, թանկանգար։ Որպէս ի հրամանէն Աստուծոյ երևեալ նոցա քարոզ՝ ճշմարտութեանն ճանապարհ, զԱբրահամեանն ուսուցանէր նոցա ճանաչել զԱստուած. մանաւանդ զի՝ հմուտ և տեղեակ ևս էր Մովսիսական պատմութեանն։ Արդ՝ զի վերուստ էր հրամանն, ի միոջէ հրամանէ ժողովէին ամենեքեան ի միաբանութիւն աւրինացն։ Եւ թո-

կեալ զունայնութեան պաշտամունսն՝ դառնային առ աստուած կենդանի՝ որ երևեցաւ հաւրն նոցա Աբրահամու։ Արդ՝ աւրինադրէ զնոսա Մահմէտ, ոչ ուտել մեռելոտի, և ոչ ըմպել գինի, և ոչ խաւսել սուտ, և ոչ խառնակիլ ի պոռնկութիւն։ Եւ ասէր. «Երդմամբ խոստացաւ աստուած զերկիրն զայն Աբրահամու և զաւակի նորա յետ նորա մինչև յաւիտեան։ Եւ կատարեաց որպէս խաւսեցաւն առ այնմ ժամանակաւն, մինչ սիրէրն զԻսրայէլ։ Իսկ արդ՝ դուք էք որդիք Աբրահամու, և կատարէ աստուած զխոստումն Աբրահամու և զաւակի նորա ի վերայ ձեր. այլ միայն սիրեցէք զաստուածն Աբրահամու և երթայք կալարուք զերկիրն ձեր՝ զոր ետ աստուած հաւր ձերում Աբրահամու, և ոչ կարէ ոք ընդդէմ ձեր կալ պատերազմաւ՝ զի աստուած ընդ ձեզ է»։

Յայնժամ ամենեքեան ժողովեցան միաբան յԵւիլայ մինչև ցՍուր և յանդիման Եգիպտոսի, և գնացին յանապատէն Փառանու երկոտասան ցեղ՝ ըստ ցեղի տանց նահապետաց իւրեանց։ Եւ բաժանեցին ժբ հազար արանց՝ որ յորդւոցն Իսրայէլի ի ցեղսն իւրեանց, հազար այր մի ի ցեղ մի՝ առաջնորդել նոցա յերկիրն Իսրայէլի [1]։ Եւ չուեալք գնացին բանակք բանակք ըստ իւրա-

[1] Ի տպ. էր՝ Երուսաղէմի։

քանչիւր նահապետութեանց, Նաբէութ. Կեդար. Աբդիւղ. Մոսամբ. (Մաստ). Մասմայ. Իդումայ. Մասէ. Քոդդատ. Թեման. Յետուր. Նափէս և Կեդմայ [1]։ Այս են ազգք Իսմայէլի։ Եւ հասեալ յԸռաբովթ Մովաբու ի սահմանս Ռուբէնի. զի բանակն յունաց բանակեալ էին յԱրաբիա, և անկեալ ի վերայ նոցա յանկարծակի՝ հարին զնո-սա ի սուր սուսերի, և փախստական արարին զԹէոդոս [2] եղբայր կայսերն Երակղի, և դարձեալ բանակեցան յԱրաբիա։

Եւ ամենայն մնացորդք ժողովրդեան որդւոցն Իսրայէլի ժողովեալ միաբանեցան ի միասին, և եղեն զաւր մեծ։ Եւ եղև յետ այնորիկ արձակեցին պատգամս առ Թագաւորն յունաց, և ասեն այսպէս. «Հաւր մերում Աբրահամու էտ աստուած զերկիրդ զայդ ի կալուած ժառանգութեան և զաւակի նորա յետ նորա։ Եւ մեք եմք որդիք Աբրահամու. շատ լիցի քեզ ունել զերկիրդ մեր. ի բաց Թող խաղաղութեամբ և մեք ոչ եկեսցուք յերկիր քո. ապա

[1] Ի կարգս ժբ ցեղից իսմայէլականաց աւելորդ համարիմք փակագծիւ եդեալն մեր՝ Մաստ, նախ՝ զի այսու ժգ լինին Թիւք նոցա. երկրորդ՝ զի ի գիրս Ծննդ. գլ. իե, 13—16 ոչ յիշատակի ի շարս որդւոց Իսմայէլի։ Տես՝ նոյնպէս Պատ. Ղարդանայ տպ. ի Վեն. եր. 63։

[2] Նոյն և Թէոդորոս. Տես. Պատմ. Վարդ. եր. 64։

թէ ոչ՝ տուկոսիւք պահանջեսցուք ի քէն զկալեալն»։ Իսկ կայսրն ոչ առնոյր յանձն, և ըստ պատգամին պատշաճի ոչ առնէր նոցա պատասխանի, այլ ասէ. «Իմ է երկիրս և քոյ վիճակ ժառանգութեան՝ անապատն. երթ գնա խաղաղութեամբ յերկիր քոյ»։ Եւ սկսաւ գունդս կազմել իբրև հռ, և ետ նոցա զաւրավար՝ զոմն մի ի հաւատարիմ ներքինեաց իւրոց, և հրաման ետ երթալ նոցա յԱրաբիա, և պատուիրեաց չառնել պատերազմ ընդ նոսա, այլ զգուշանալ անձանց, մինչև իւր այլ զաւրս գումարեալ արձակեսցէ յաւգնականութիւն նոցա։ Իսկ նոցա հասեալ ի Յորդանան և անցին յԱրաբիա, և թողեալ զբանակս իւրեանց ի գետեզերին՝ հետիոտս գնացին ի վերայ բանակի նոցա։ Իսկ նոցա զմասն ինչ ի բանակէն դարանակալ արարեալ աստ և անտ, և կարգեալ զբազմութիւն խորանացն շուրջ զբանակաւն, և ածեալ զուղտերամակսն՝ մակաղեցին շուրջ զբանակաւն և զվրանաւքն, և կապեցին չուանաւք զոտս նոցա. այս է ամրութիւն բանակի նոցա։ Եւ սոքա յաւգնեալք ի ճանապարհին՝ ուր ուրեմն կարացին հասանել զամրութիւն բանակին, և սկսան սատակել զնոսա։ Յանկարծակի յարեան դարանակալքն ի տեղւոջէ իւրեանց և յարձակեցան ի վերայ նոցա. և անկեալ ահ տեառն ի վերայ զաւրացն յունաց, և ի փախուստ դարձան առաջի նոցա. և ոչ գոյր նոցա փախուստ

ի Թանձրութենէ աւազոյն, զի Թաղէին ոտքն մինչև ի սրունս, և տագնապ մեծ յարեգականն ջերմութենէն, և սուր Թշնամւոյն ի վերայ նոցա։ Արդ՝ անկան ամենայն զաւրավարքն և կործանեցան։ Եւ եղև Թիւ անկելոցն աւելի քան զերկու հազարս։ Եւ սակաւք ի նոցանէ ապրեալքն փախստական անկանէին ի տեղի ապաստանի։

Եւ նոքա անցեալք ընդ Յորդանան՝ բանակեցան յԵրիքով։ Յայնժամ անկաւ ահ նոցա ի վերայ բնակչաց երկրին. և հնազանդեցան ի ծառայութիւն նոցա ամենեքեան։ Յայնմ գիշերի և երուսաղէմացիքն փախուցեալ զտէրունեան Խաչն, և զամենայն սպասս եկեղեցեացն Աստուծոյ և արկեալ ծով, նաւաւք յուղարկեցին ի պաղատն Կոստանդնուպաւլսի։ Եւ ապա խնդրեալ նոցա երդումն ի նոցանէ՝ հնազանդեցան ի ծառայութիւն նոցա։

Իսկ Թագաւորն յունաց այլ ոչ ևս կարաց գումարել զզաւրս իւր ընդդէմ նոցա։ Եւ նոքա բաժանեցին զզաւրս իւրեանց յերիս մասունս։ Մասն մի յԵգիպտոս՝ որ երԹեալ կալան մինչև ցԱղէքսանդրիա։ Եւ մասն մի ի հիւսիսոյ կողմանէ, ընդդէմ Թագաւորութեանն յունաց։ Եւ յական Թաւթափել կալան իվերջնոյ ծովուն մինչև ցեզր գետոյն մեծի Եփրատայ. և յայնմ կողմն գետոյն՝ զՈւրհայ և զամենայն քաղաքս միջագե-

տաց։ Եւ մասն մի յարևելս՝ ի վերայ Թագաւորութեանն պարսից։

Եւ նուազեցաւ Թագաւորութիւնն պարսից ի ժամանակին յայնմիկ և զաւրք նոցա բաժանեալ յերիս մասունս։ Յայնժամ զաւրացն Իսմայէլի՝ որ էին գումարեալ ի կողմանս յարևելից, երթեալ պաշարեցին զՏիզբոն, զի անդ նստէր Թագաւորն պարսից։ Եւ զաւր աշխարհին Մարաց գումարեալ ի ձեռն զաւրավարին իւրեանց Ռըստոմայ ձո վառելոց՝ ժողովեցան և գնացին ի վերայ նոցա ի պատերազմ. յայնժամ Թողեալ զքաղաքն՝ անցին յայնկոյս գետոյն Դգլաղայ։ Եւ գնացին և անցին նոքա զգետաւն և պնդեցան զհետ նոցա, և նոքա ոչ դադարեցին մինչև ի սահմանս իւրեանց՝ ի գեւղն՝ որ կոչի Հերթիճան։ Եւ սոքա պնդեալք զհետ նոցա՝ և չոքան բանակեցան ի դաշտին։ Էր անդ և Մուշեղ Մամիկոնեան որդի Դաւթի՝ զաւրավարն Հայոց երեք հազար սպառազինաւք, և Գրիգոր իշխանն Սիւնեաց տէրն՝ ռ արամբ։ Եւ եղև յարձակումն ի վերայ միմեանց. և փախեան զաւրն պարսից առաջի նոցա. իսկ նոքա զհետ մտեալ հարին գնոսա ի սուր սուսերի իւրեանց։ Եւ մեռան ամենայն նախարարքն գլխաւորք. մեռաւ և զաւրավարն Ռըստամն. սպանին և զՄուշեղ երկու քեռորդւովքն, և զԳրիգոր Սիւնեաց տէր միով որդւով։ Եւ այլքն զերծեալ գնացին փախստական յաշխարհն իւ-

բեանց։ Եւ միացորդք զաւրացն պարսից յԱտրր-պատական գումարեալ ժողովեցան ի մի վայր. և նստուցին իւրեանց զաւրավար զԽոռոխազատ. և փութացեալ ի Տիզբոն էառ զամենայն զանձս թագաւորութեանն և զընակիչս քաղաքացն և զթագաւորն իւրեանց. և փութացաւ հասուցանել յԱտրպատական. և իբրև մեկնեալ հեռացան՝ յանկարծակի եհաս ի վերայ նոցա զաւր Իսմայէլի։ Եւ նոքա զարհուրեալ թողին զգանձս և զընակիչս քաղաքին և փախեան. փախեաւ և թագաւորն իւրեանց, և անկաւ ի զաւրն հարաւոյ։ Իսկ նոցա առեալ զգանձն ամենայն դարձան ի Տիզբոնն, առին և զընակիչսն քաղաքացն, և աւարեցին զամենայն երկիրն։

Յայնժամ կատարեալ երանելոյն Երակլի զկեանս իւր բարւոք ծերութեամբ. և էին աւուրք իւրոյ թագաւորութեանն ամք լ։ Երդմնեցուցանէ զորդի իւր զԿոստանդին՝ առնել (զթութիւն) ի վերայ ամենայն յանցաւորացն՝ զոր հրամայեալ էր առնել յաքսորսն. և դարձուցանել զնոսա յիւրաքանչիւր տեղիսն։ Երդմնեցուցանէ և վասն ասպետի՝ ածել զնա և զկին նորա և զորդիս նորա, և հաստատել ի կարգն առաջին։ Եւ եթէ կամեսցի գնալ յաշխարհն իւր, երդուալ եմ նմա, մի եղիցի սուտ երդումն իմ։ Արձակեա զդա և թող երթայ խաղաղութեամբ։

Մեռաւ Երակղոս, և թագաւորեաց որդի նո-

րա Կոստանդին։ Եւ ոչ ոք ընտրեցաւ զաւրավար յաշխարհին Հայոց. քանզի անմիաբան լեալ իշխանացն՝ մեկնեցան ի միմեանց։

Եւ եկ զաւր ապականիչ յԱսորեստան կողմանէ ընդ ճանապարհս ձորոյ յաշխարհն Տարօնոյ. առին զնա և զԲզնունիս և զԱղիովիտ։ Եւ ճանապարհ կալեալ ի Բերկրոյ ձորն ընդ Որդրուպոյ և ընդ Գոգովիտ՝ Թափեցան յԱյրարատ։ Եւ ոչ ոք կարաց ի զաւրացն Հայոց արկանել գոյժ ի Դուին աւան. բայց արք երեք յիշխանացն, որք երթային ժողովել զզաւրն ճապաղական՝ Թէոդորոս Վահևունի, և Խաչեան Առաւեղեան, և Շապուհ Ամատունի։ Որք գնացեալ փախստական ի Դուին, և հասեալ ի կամուրջն Մեծամաւրի, ի բաց աւերեցին, և ինքեանք անցեալք գոյժ արկանել ի յաւանին։ Եւ ի բերդն ժողովեցին զամենայն մարդիկ աշխարհին՝ որ եկեալ էին ի կութս այգեստանին։

Բայց Թէոդորոսն գնացեալ ի Նախճաւան քաղաք։ Եւ հասեալ Թշնամին Բուշայն [1] ի կամուրջն Մեծամաւրի ոչ կարայ անցանել. բայց ունէին առաջնորդ իւրեանց զՎարդիկ իշխան Մոկաց՝ որ կոչէր Ակնիկ։ Ապա անցեալ ընդ կամուրջն Մեծամաւրի, հարին ասպատակաւ զամենայն երկիրն, և ժողովեալ զաւար և զգերու-

[1] Ի ձեռ. օրին. էր՝ Բուղայն։

*թիւն բազում յոյժ, և եկեալ բանակեցան ի յեզր մայրւոյն Խոսրակերտի*[1]*։*

*Եւ եղև յաւուրն հինգերորդի դիմեցին ի վերայ քաղաքին. մատնեցաւ քաղաքն ի ձեռն նոցա. քանզի արկին մուխ շուրջանակի, մերժեցին ծխովն և նետաձգութեամբն զպահապանս պարըսպին, և կանգնեալ սանդուխս՝ ելին ի պարիսպն և անկեալ ի ներքս բացին զդուռն քաղաքին։ Եւ դիմեալ ի ներքս զաւրք թշնամեացն սատակեցին սրով զբազմութիւն քաղաքին, և առեալ զաւար և զկապուտ քաղաքին՝ ելին և բանակեցան ի նմին բանակատեղն. որ աւր ի էր տրէ ամսոյն՝ յաւուր ուրբաթի։ Եւ դադարեալ աւուրս ինչ ելին և գնացին ընդ նոյն ճանապարհ՝ ընդ որ եկեալն էին։ Եւ խաղացուցին զբազմութիւն գերւոյն՝ լե հազար ոգի։ Իսկ իշխանն Հայոց Ռշտունեաց տէրն դարանակալ եղեալ ի Գոգովիտ գաւառի՝ դիմէ ի վերայ նոցա սակաւուք։ Եւ ոչ կարաց զդէմ ունել նոցա. փախըստական լինի առաջի նոցա. և նոքա զհետ մտեալ նոցա՝ սատակէին զբազումս ի նոցանէն. և ինքեանք չոքան անցին յԱսորեստան։ Եւ եղև այս յամս Եզրի կաթուղիկոսի։*

*Իսկ ի ձեռն այնր պատերազմի ի կայսերէ հրաման հասեալ զաւրավարութեանն Թէոդորոսի*

---

[1] *Ի միում օրինակի՝ Խոսրովակերտի։*

Ուշտունեաց տեառն՝ հանդերձ պարկուԹեան պատուով։

Այս ամենայն լինի ի ձեռն կաԹուղիկոսին Ներսիսի՝ որ յաջորդեցաւ ի նմին ամի յաԹոռ կաԹուղիկոսուԹեան՝ փոխանակ Եզրի կաԹուղիկոսի։

Բայց յորժամ ելին յարևելք որդիքն Իսմայէլի ի Սին անապատէն, ոչ ել ընդ նոսա և Թագաւորն նոցա Ամռ. այլ իբրև յաղԹեցին պատերազմաւք վանեալ զերկոսին ԹագաւորուԹիւնն՝ կալան յԵգիպտոսէ մինչև ցլեառն մեծ Տորոս, և ի ծովէն արևմտից մինչև ցՄարս և Խուժաստան. ապա ելին արքունական բանակաւքն ի բուն սահմանս կալուածոցն Իսմայէլի։ Եւ հրաման ետ արքայ ժողովել զնաւ և զնաւորդս բազումս, և անցանել ընդ ծով ի հարաւակողմն, յարևելս ի Պարսս. և ի Սագաստան. և ի Սընտ, և ի Սրման, յաշխարհն Տուրան, և ի Մակուրան՝ մինչև ի սահմանս Հնդկաց։ Իսկ զաւրացն փուԹանակի պատրաստեալ՝ զհրամանսն կատարէին. և այրեցին զամենայն երկիրն, և առեալ զաւար և զկապուտ՝ դարձան անդրէն արշաւանս դնելով ի վերայ ծովուն մկանանցն՝ հասանէին ի տեղիս իւրեանց։

Զայս լուաք յարանց գերելոց ի Խուժաստան Տաճկաստանէ, որոց ինքեանք իսկ ականատես եղեալ պատմեցին մեզ զայս բան։

## ԳԼՈՒԽ ԼԱ.

*Վասն Հրէից և չար խորհրդոց նոցա։*

Ասացից և զհրէիցն զապստամբողացն զխորհուրդսն՝ որ սակաւ ժամանակս աւգնականութիւն գտեալ ի Հագարացւոցն, առին խորհուրդ շինել զտաճարն Սողոմոնի։ Եւ գտեալ զտեղին՝ որ կոչի սրբութիւն սրբութեանց՝ շինեցին զնա խարըսխով շինուածով տեղի աղաւթից իւրեանց։ Եւ նախանձեալ ընդ նոսա Իսմայէլացւոցն՝ մերժեցին զնոսա ի տեղւոջէ յայնմանէ. և անուանեցին զնոյն (տուն) աղաւթից իւրեանց. նոքա յայլում տեղւոջ անդէն յատակս տաճարին շինեցին այլ տեղի աղաւթից իւրեանց։ Եւ անդէն առաջի արկեալ զիւրեանց չարութեան խորհուրդ՝ լնուլ կամեցեալ զԵրուսաղէմ ծայր ի ծայրէ արեամբ, ջնջել զամենայն քրիստոնեայսն յԵրուսաղէմէ։ Արդ՝ այր ոմն ի մեծամեծացն Իսմայէլի երթայր յերկրպագութիւն ի տեղի աղաւթից իւրեանց միայն. ի դիմի հարան նմա արք երեք հրէայք ի գլխաւորաց նոցունց, որոց էին սպանեալ խոզս երկուս՝ և տարեալ եդեալ ի տեղի աղաւթիցն, և զարիւնն հեղեալ զորմովք և

զյատակաւք տանն։ Եւ եղև իբրև ետես[1] զնոսա այրն՝ զտեղի էառ և խաւսեցաւ ընդ նոսա, զի՞նչ և խաւսեցաւ. և նոքա պատասխանեալ նմա զանց արարին զնովաւ, և գնացին։ Եւ նա իսկոյն մտեալ ի ներքս կալ յաղաւթս ետես զչարիս, և դարձաւ փութանակի՝ զի կալցի զայրսն։ Եւ իբրև ոչ եգիտ զնոսա՝ լուռ եղև և գնաց ի տեղի իւր. և ապա բազումք մտեալ տեսին զչարիսն, և գոյժ արկին քաղաքին։ Եւ ուսուցին հրէայքն իշխանին՝ թէ քրիստոնեայքն պղծեցին զտեղի աղաւթիցն. հրաման ետ իշխանն՝ և ժողովեցին զամենայն քրիստոնեայսն, և մինչ կամէին զնոսա սրով սատակել՝ եկն այրն և եկաց յանդիմանս։ Ասէ. «Ընդէ՞ր հեղուք զայդչափ արիւն ի տարապարտուց. հրամայեցէք ժողովել զամենայն հրէայսդ, և ես ցուցից զմահապարտսն»։ Եւ եղև իբրև ժողովեցին զամենեսեան, և մտեալ ի մէջ նոցա՝ ծանեաւ զայրսն զերկսին՝ որ դիպեցան նմա։ Եւ կալեալ զնոսա՝ դատեցին անագին դատաստանաւք, մինչև յայտնեցին զխորհուրդն։ Եւ զի իշխան նոցա էր ի հրէից անտի, հրամայեաց սպանանել արս վեց զգլխաւորս խորհրդեանն. և այլոցն թոյլ ետ գնալ ի տեղի իւրեանց։

---

[1] Այսպէս ի ձեռ. իսկ ի տպ. էր՝ եհաս։

## ԳԼՈՒԽ ԼԲ.

*Մեռանիլ Կոստանդնի դաւեալ ի մօրէն՝ և թագաւորել Երակլոսի որդւոյ երկրորդ կնոջն Երակլեայ. գալ ի Կոստանդնուպօլիս Վաղենտինի զօրավարի և նստուցանել թագաւոր զԿոստաս զորդի Կոստանդնի. պատերազմ Պարսից ընդ Իսմայելացիսն և պարտիլ. դառնալ Վարազտիրոց Ասպետի յաքսորէ, և բազմաց. գալ Իսմայելացւոց յԱտրպատական և բաժանիլ յերիս. առին զբերդն Արծափու արշաւեալք ի գունդն սեփհական։*

*Եւ եղև ի մահուանն Երակլի թագաւորեաց Կոստանդին որդի նորա, և կարգէ ի վերայ զաւրաց իւրոց զաւրավարս զՎաղենտիանոսն, որ կոչէր Արշակունի։ Եւ հրամայեաց իւրոց երթալ յարևելս։*

*Եւ սակաւ ինչ աւուրս թագաւորեալ Կոստանդին, դաւեալ ի Մարտինեայ մաւրէ իւրմէ՝ ի կնոջէն Երակլի՝ մեռանէր։ Եւ թագաւորէ Երակլոս որդի Երակլեայ՝ որ ի Մաւրինեայ Աւգոստեայ. քանզի Կոստանդին էր յառաջին կնոջէն։ (Եւ) Վաղենտինի գործեցեալ իրս՝ գնայ ի վերայ նորա զաւրու իւրով ի Կոստանդնուպաւ-*

լիս։ Եւ կալեալ զՄարտինէ, կտրէ զլեզու նորա և ապա սպանանէ զնա հանդերձ երկու որդւովք նորա։ Եւ նստուցանէ թագաւոր զԿոստաս զորդի Կոստանդնի, և անուանէ յանուն հաւրն իւրոյ Կոստանդին։ Եւ ինքն գումարէ զզաւրսն, և գնայ ընդ արևելս։

Եւ եղև յառաջնում ամի Կոստանդեայ թագաւորին յունաց, և յամի տասներորդի Յազկերտի արքային պարսից՝ գումարեցան զաւրքն պարսից ընդ Իսմայէլի կռ արանց վառելոց սպառազինաց։ Եւ իսմայէլացւոցն ճակատեցան ընդդէմ նոցա խռ առանց սուսերամերկաց, և բաղխեցին զմիմեանս պատերազմաւ ի Մարսս գաւառի, մինչև յերիս աւուրս յերկարեալ պատերազմն. մինչև նուաղեալ երկոցունցն կողմանցն հետեւակն մարտին։ Յանկարծակի ազդ եղև զաւրացն պարսից՝ եթէ եկն զաւր յաւգնականութիւն իսմայելացւոցն։ Եւ փախեան զաւրն պարսիցն ի բանակէն զգիշերն ամենայն. և մնացորդքն զաւրուն Իսմայէլի գնացին ի վերայ նոցա ընդ առաւաւտն։ Եւ ոչ զոք գտին ի բանակին. և ասպատակ սփռեալ ընդ ամենայն երեսս երկրի՝ հարին զմարդ և զանասուն սրով. և առեալ բերդս իբ՝ սատակեցին զամենայն կենդանի՝ որ էր ի նոսա։

Բայց զահագին աղէտս հէնին Իսմայէլի՝ որ բորբոքեաց հրդեհեալ զծով և զցամաք, ով կա-

րիցէ պատմել [1]։ Բայց երանելին Դանիէլ կանխաւ գուշակէ մարգարէութիւնն զայսպիսի նեղութեանս որ եկն եհաս ի վերայ երկրի՝ որ չորս գազանաւք նշանակէ զչորս թագաւորութիւնսն՝ որ յառնելոցն էին ի վերայ երկրի։ Եւ նախ առաջին զԱրեւմտից թագաւորութիւն զմարդացեալ գազանն, որ է յունաց. և յայտ անտի է. ասէ. «Թափեցան վարազաթեւքն և ջնջեցաւ յերկրէ»։ Զդիւական կռամոլութեանն ասէ զջնջումն։ «Եւ եկաց իբրև ի վերայ ոտից մարդոյ, և սիրտ մարդոյ տուաւ նմա»։ Եւ ահա գազանն երկրորդ նման արջոյ, և եկաց ի կողմն մի՝ յարևելից կողմանէ՝ զՍասանականին ասէ զթագաւորութիւն։ «Եւ կողք երեք ի բերան ունելով՝» զՊարսից և զՄարաց և զՊարթևաց թագաւորութիւնն։ Եւ յայտ անտի է՝ որ ասէին ցնա. «արի՛ կե՛ր զմարմինս բազմաց»։ Որպէս և եկեր իսկ ամենեցուն գիտելով։ «Իսկ գազանն երրորդ իբրև զինձ, և չորք թևք թռչնոյ ի վերայ նորա. և չորք գլուխ գազանին՝ «զՀիւսիսային ասէ զթագաւորութիւն՝ Գոգ և Մագոգ, և երկու ընկերք նոցին՝ որոց տուաւ իշխանութիւն թռչել զաւրութեամբ ի ժամանակի իւրում ի կողմանս հիւսիսոյ։ «Իսկ գազանն չորրորդ ահեղ և զարմանալի, և ժանիք նորա երկաթիք, և մագիլք նորա պղնձիք, ուտէր և

---

Այսպէս ի ձեռ. օրին. իսկ ի տպ. էր՝ պարտել։

մանրէր և զմնացուածսն առ ոտն կոտորէր»։ Այս չորս յարուցեալ ի Հարաւոյ կողմանէ Իսմայէլեան թագաւորութիւնն․ որպէս հրեշտակապետն մեկնեաց եթէ՝ «Գազանն չորրորդ թագաւորութեանն կացցէ որ առաւել իցէ քան զամենայն թագաւորութիւնս, և կերիցէ զամենայն երկիր»։ «Եւ Ժ եղջիւրք՝ Ժ թագաւորք յարիցեն, և զկնի նորա յարիցէ այլ՝ որ առաւել է չարեաւք քան զամենայն առաջինսն»․ և որ ի կարգին է։

Եւ եղև յերկրորդում ամի Կոստանդի՝ թոռին երանելւոյն Երակլի՝ խորհեր Վաղենտին անտի ի միտս իւր ճարտարութեամբ խաբել զսինկղիտոսն, և համբառնալ զինքն ի պատիւ թագաւորութեանն, որպէս զի պսակեալ զինքն այնպէս արասցէ զզաւրավարութիւն։ Եւ ծանրացոյց ըզլուծ ծառայութեան ի վերայ բնակչաց քաղաքին, և զայն երեք հազար սպառազէնս՝ զոր ընդ ինքն տարաւ, և զաւրս բազումս այլ միաբանեալ՝ իւր թիկունս հաստատէր։ Յայնժամ ժողովեցան արք քաղաքին ի սուրբ եկեղեցին Սոփիոյ առ հայրապետն՝ և ծանուցանեն նմա բառնալ զծանրութիւնն ծառայութեան, և առաքեցին առ Վաղենտին ի բաց բառնալ զծառայութիւն զայն, և նա ոչ կամեցաւ լսել։ Եւ անդ էր մի ոմն յիշխանացն՝ որում անունն էր Անտոնինոս․ ասէ ցՎաղենտին․ «Զի՞նչ է նոցա միա-

բանութիւնն այն և խորհուրդն. կամ զի՞ իսկ իշխեցին համարձակաբար արձակել առ քեզ զայսպիսի բանս. բայց եթէ հրամայեսցես ինձ՝ ես երթայց և քակտեցից զմիաբանութիւն նոցա և զխորհուրդն։ Եւ հալածեմ զնոսա յիւրաքանչիւր տեղիս, զի կատարեսցին կամք քո»։ Եւ ասէ. «Երթ և արա որպէս ասացերդ»։ Եւ նա յարուցեալ գնաց արամբք հնգարաւք, և իբրև եմուտ յեկեղեցին, սկսաւ պատուհասել զգլխաւորսն գանիւ։ Յոտն եկաց հայրապետն, և ասէ. «Տատ և ոչ է իրաւացի առնել ի տեղւոջս յայսմիկ այդպիսի ինչ»։ Եւ յարձակեալ Անտոնի՝ ած ապտակ ի ծնաւտ նորա, և ասէ. «Երթ կա՛լ զտեղին քո»։ Յայնժամ խռովեալ ամբոխն՝ յարձակեցան ի վերայ նորա։ Եւ ըմբռնեալ զնա քարշեցին զոտանէ ի մէջ քաղաքին, և այրեցին հրով։ Ազդ եղև Վաղենտինի և դողումն կալաւ զնա։ Եւ անդէն վաղվաղակի հեղաւ ամբոխն ի վերայ նորա, և քարշեալ արտաքոյ տանյն՝ գլխատեցին. և տարեալ ի տեղին՝ ուր այրեցին զԱնտոնիոնոս, ի նմին տեղւոջ այրեցին և զնա։ Եւ զԿոստանդին հաստատեցին յաթոռ թագաւորութեանն։ Եւ արարին զաւրավար զԹէոդորոս զոմն հաւատարիմ յիշխանացն Հայաստանեայց, յայնց՝ որ ի յունաց կողմանէ։

Սա իբրև ետ զաւրավարութիւնն՝ աղաչեաց զթագաւորն և խնդրեաց պարգևս՝ առնել ողոր-

մութիւն այնոցիկ, զորս էր աքսորեալ յԱփրիկէ։ Եւ մանաւանդ վասն Ասպետի՝ որդւոյ Սմբատայ Խոսրով Շում կոչեցելոյ։ Եւ քաղցրացոյց Աստուած զսիրտ Թագաւորին և հրամայեաց ածել զնոսա ի քաղաքն Թագաւորական։ Եւ ընկալաւ զնոսա իբրև զսիրելիս Թագաւորութեանն, և զորդի նորա առաջին ասպաթար զՍմբատ ի մէջ ամենայն ասպաթարացն, և կանոնիատատ։ Եւ անդէն կարգեաց ի կարգն առաջի յամին հինգերորդի Թագաւորութեան իւրոյ։ Նոյնպէս և զՎահանն Խոռխոռունի, և զայլ ևս։ Եւ արձակեաց ի Հայս այր ոմն իշխան՝ անուն Թումա։ Սա եկեալ ոչ կամէր եղծանել զուխտն՝ որ ի մէջ կայսեր և իշխանին Մարաց. միաբանեաց զամենայն իշխանսն ընդ ինքեամբ և գնաց առ իշխանն Մարաց և խաւսեցաւ ընդ նմա ի խաղաղութիւն։ Եւ առ ի նմանէ ինչս բազումս և խոստացաւ նմա երդմամբ, զի տացէ տանել զԹէոդորոս կապանաւք ի պաղատն, զի նա էր իշխան աշխարհիս Հայոց։ Եւ դարձաւ եկն անդրէն ի գաւրս Հայոց։ Եւ իբրև եկն յերկիրն Կոտէից, յանկարծակի յարձակեցան ի վերայ նորա, կալան զնա և կապեցին, և ետուն տանել յանդիման Թագաւորին։ Իսկ արքայ Կոստանդին իբրև լուաւ՝ խռովեցաւ յոյժ. զի ոչ էր ի հրամանէ նորա կապելն. և հրամայեաց լուծանել զնա ի կապանացն, և ընթեռնուլ զգիրս ամբաստանութեանն։ Եւ ծանու-

ցեալ զնենգութիւնն՝ հրամայեաց կոչել զառաջեաւ և ընկալաւ զնա սիրով, և նորին իշխանութեամբն պատուով։ Եւ կարգեաց նմա ռոճիկ և ընդունելութիւն յարքունուստ։ Ապա հրամայէ կոչել զԹումաս ոմն, և ոչ հրամայեցաւ նմա մտանել յարքունիսն, այլ արտաքոյ քննութիւն առնել. և արդարացուցին զԹէոդորոս Ռըշտունեաց տէրն ի բանս իւր. և եղեն իրաւունս ի վերայ նորա։ Իսկ զԹումաս անարգեալ ի բաց ընկեցին ի պատուոյն։ Յայնժամ տեսին զմիմեանս Ասպետ և Թէոդորոս Ռշտունեաց տէրն, և հեղուլին արտասուս ի վերայ պարանոցի իւրեանց՝ զի էին սննդակիցք միմեանց ի դրանն Խոսրովայ արքային պարսից։ Բայց Ասպետ ոչ կարաց նուաճիլ ընդ իշխանութեամբն յունաց, այլ արկ ի միտս իւր նենգութիւն. և հրամանս խնդրեաց ի թագաւորէն Կոստանդեայ՝ զի արձակեսցէ արս չորս յընտանեաց իւրոց ի Հայս՝ տանել առ նա զկինս իւր։ Եւ հրամայեաց թագաւորն տալ նմա զհրամանսն. իսկ նա այլակերպեալ զինքն՝ առ ընդ իւր արս երիս, և հասեալ ի ծովեզր՝ եցոյց զհրամանն արքունի։ Ել ի նաւն և էանց ընդ ծովն, և հապճեպ գնացեալ ի նմանութիւն թըռչնոյ՝ եկն եհաս փութանակի ի Տայս և ամրացաւ անդ. քանզի ընկալան զնա Տայեցիքն խնդութեամբ։

Յայնմ ժամանակի ոչ սակաւ յուղմունք լի-

նէին ի մէջ աշխարհիս Հայոց. քանզի փութանակի եկն եհաս հրամանն արքունի առ զաւրավարն Հայոց ունել զամենայն անցս ճանապարհացն, և յուզել յամրոցս աշխարհին։ Ապա ազդ լինէր՝ եթէ եկն և ամրացաւ ի Հայս ի Տայս։

Յայնժամ հրաման ետ զաւրավարն յունաց Թէոդորոս հանդերձ իշխանաւքն զաւրուն և նախարարաւքն Հայոց՝ արձակել զներսէս կաթուղիկոս առ Ասպետ, և տանել նմա երդումն հաւատարմութեան ի խնդրել նմա զիշխանութիւն աշխարհին, և ածել նմա զկին իւր և զորդիսն։

Եւ գնաց Կաթուղիկոսն, հաստատեաց առ նմա զերդումն, զի մի այլ ուրեք կալցի ճանապարհ. և դարձաւ եկն անդրէն։ Եւ գրեցին նոքա առ թագաւորն Կոստանդին առնել նմա ըստ երդմանն, զոր խոստացաւ. քանզի էր գրեալ Ասպետ առ թագաւորն այսպէս՝ եթէ՝ «ծառայ քոյ եմ, և ոչ ուրեք երթամ ի ծառայութենէդ ձերմէ. բայց զի ասացին ցիս ոմանք՝ եթէ «անդրէն երթալոց ես՝ ուստի եկիրն»։ Վասն այնորիկ զահի հարայ և փախեայ. բայց արդ՝ եթէ արժանի համարիք՝ միամտութեամբ վաստակիմ, և կեամ և մեռանիմ ի վերայ ձերոյ աստուածպաշտութեանդ»։ Յայնժամ հրամայեաց թագաւորն Կոստանդին առնել զնա կիւրապաղատ, և տալ նմա պսակ պատուոյն և զիշխանութիւն աշխարհին։ Եւ հրամայեաց արձակել զկին և զորդիսն մեծաւ

շքով, և ետ տանել զգահոյս արծաթեղէնս հան-
դերձ այլովք մեծամեծ ընչիւք։

Արդ՝ մինչդեռ դայր հրովարտակն և պա-
տիւն առնել զնա կիւրապաղատ, յանկարծակի
եհաս նմա հիւանդութիւն և մեռաւ. և բարձին
զմարմին նորա և տարան թաղեցին առ հարսն
իւրում ի Դարիւնս։ Եւ զորդի նորա զանդրանիկ՝
որում անունն էր Սմբատ, կարգեաց արքայ ի
պատիւ հաւր իւրոյ, տուեալ նմա զիշխանութիւնն
բնիկ տանուտէրութեանն ասպետութեան, և արար
զնա դրունգար զաւրաց իւրոց։ Ետ նմա կին ի
տանէն Արշակունեաց և յիւրոց մերձաւորաց, և
արձակեաց ի բանակն առ զաւրս իւր։ Եւ յետ
այսորիկ արձակեաց զԹէոդորոս Ռշտունեաց տէրն
ի Հայս մեծաւ պատուով, և ետ նմա զնոյն իշ-
խանութիւն զաւրավարութեան, եթէ կամիցին
իշխանքն Հայոց և եթէ ոչ կամիցին. և եկն կար-
գեցաւ ի նոյն իշխանութեանն։

Եւ եղև ի գալ միւսում ամի եկն զաւրն
Իսմայէլի յԱտրպատական, և բաժանեցան յերիս։
Առաջ մի յԱյրարատ. և առաջ մի ի սեփհական
գնդին կողմանս. և առաջ մի յԱղուանս։ Արդ՝
որք ի կողմանս սեփհական գնդին, արշաւեալ
սփռեցան և հարեալ զամենայն կողմանն զայ-
նոսիկ սրով սուսերի, առին զաւար և զգերու-
թիւն։ Եւ եկին ժողովեցան ի յԵրևան՝ և մար-
տեան ընդ բերդին, և ոչ կարացին առնուլ։ Եկին

ի յՈրդսպու, և ոչ նմա ինչ կարացին առնել։ Գնացին անտի և բանակեցան յԱրծափս՝ հանդէպ բերդին առ Ջրոփս։ Եւ սկսան պատերազմիլ ընդ բերդին, և բազում աւճիրս փասուց գործեցին անդ ի բերդէն։ Արդ՝ էր նոցա ի թիկանց կողմանէ ել, ի գլուխ անդր յԱսորենայ կողմանէ՝ որում Կախանակտուցն կոչեն։ Արդ՝ իջին ընդ այն արք ի վայր ի բերդէն՝ երթալ խնդրել ի բերդէն Դարաւնից զաւր յաւգնականութիւն իւրեանց։ Եւ ետ նոցա Սմբատ Բագրատունի, որդի Վարազ Սահակայ՝ արս խ։

Եւ գնացեալ ի գիշերի ելին ի բերդն և ոչ զգուշացան տեղւոյն, և գիտացին իսմայէլացիքն զտեղին, և գնացեալ ի նոյն հետին ելին ի բերդըն։ Եւ կալան զտեղին մինչև ցառաւաւտն։ Եւ արս Ժ պահապանս տեղւոյն ըմբռնեցին ի քուն, և սպանին։

## ԳԼՈՒԽ ԼԳ.

*Ազատել Տեառն զգերիսն և խորտակել զԻսմայէլացիսն. հարկանել զՏայս, զՎիրս և զԱղուանս սփռելոցն յԱյրարատ, նաւամարտութիւն Իսմայէլացւոց ընդ Յոյնս. երթալ Պոռկոպայ առ Մաւիաս իշխանն Իսմայէլի և հաշտութիւն ընդ Յոյնս. գործք Ներսիսի Կաթուղիկոսի. վէճ հաւատոյ ընդ Հայոց. պատասխան Հայոց առ Կոստանդին կայսրն։*

*Եւ եղև յամին երկրորդի Կոստանդնի, յամսեանն հոռի, որ աւր իգ էր ամսոյն, յաւուր կիւրակէի ընդ առաւաւտս՝ ճչեցին իսմայէլացիքն ի բերդին վերջոյ և առաջոյ, և հարին զնոսա սրով սուսերի։ Եւ բազումք զահավէժ լեալ սատակէին։ Եւ զկանայս և զմանկունս իջուցին ի բերդէն՝ կամէին սատակել. և ոչ գոյր թիւ գերւոյն, և անասուն պաճարացն բազում յոյժ։ Եւ եղև ի վաղիւ առաւաւտուն՝ եկն եհաս ի վերայ նոցա զաւրավարն Հայոց, և եհար զնոսա անհուն կոտորածով։ Եւ էին նոքա երեք հազար ընտիր սպառազէնս յամենայն զաւրացն Իսմայէլի, և ոչ ոք զերծաւ ի նոցանէ. բայց սակաւ ճողոպրեալք հետևակք երթեալ ամրացան ի Շամբին։ Եւ ապ-*

րեցոյց տէր յաւուր յայնմիկ զբազմութիւն զերւոյն ի ձեռաց իսմայէլացւոցն. և զԻսմայէլ խորտակեաց կործանմամբ մեծաւ. և մեռան բ իշխանքն Իսմայէլի՝ Աւթման և Ոգոմայ: Եւ եղև յաղթութիւն մեծ զաւրավարին Հայոց, և ետ տանել զաւրավարն Հայոց զընծայս Կոստանդնի ի պատերազմէն՝ զընտիր ընտիր երիվարացն ճ ձի. զոր առեալ արքայի ուրախ եղև ինքն և ամենայն պաղատն, և արձակեաց անդրէն շնորհակալութիւն մեծ:

Իսկ այն զաւրն՝ որ ի կողմանս այրարատեան, եհար սրով մինչև ի կողմանս Տայոց, Վրաց և Աղուանից՝ առ զաւար և զգերութիւն, և եկն էանց ի Նախճաւան առ այն զաւր, որ մարտ եդեալ կռուէին ընդ բերդին Նախճուանի: Բայց սակայն ոչ կարացին առնուլ զնա: Առին զբերդն Խրամայ, և սատակէին զնոսա սրով, և զկանայս և զմանկունս գերի վարեցին:

Իսկ որ ի կողմանս Պաղեստինացւոցն, հրամայեաց կազմել նաւատորմիղս բազում. և եմուտ ի նաւ, և կալաւ գործ պատերազմի ընդ Կոստանդնուպաւլիս. և ոչ յաջողեցաւ նմա նաւամարտութիւնն. քանզի ելին ընդդէմ նորա զաւրացն բազմութիւն նաւաւք. և կործանեցին զնոսա ի խորս ծովուն, և զբազումս վանեցին հրով. և զբազումս փախստական արարեալ հալածեցին: Բայց սակայն զարհուրեցաւ արքայն Կոստանդին.

լաւ համարեցաւ տալ սակ, և առնել հաշտութիւն պատգամաւորաւք. և փութացուցանէին խմայէլացիք զյոյնս՝ զի կատարեսցեն զքան հաշտութեանն։ Իսկ թագաւորն յունաց Կոստանդին՝ քանզի մանուկ էր, ոչ իշխեաց կատարել առանց կամաց զաւրուն, և գրէ առ Պռոկոպ՝ զի երթիցէ ընդ նմա Դամասկոս առ Մաւիաս իշխանն զաւրուն Իսմայէլի, և կատարեսցէ զպայման հաշտութեան ըստ զաւրուն կամացն։ Արդ՝ իբրև ետես Պռոկոպ զհրամանն արքունի, և լուաւ բանս ի զաւրացն, գնաց զհետ նոցա ի Դամասկոս առ Մաւիաս իշխան զաւրուն Իսմայէլի. և յայտնեաց զչափ սակին և ասաց զսահմանն և առ զհաշտութիւնն, և գնաց։

Յայնմ ժամանակի արկ ի միտս իւր կաթուղիկոսն Հայոց Ներսէս շինել իւր բնակութիւն մերձ առ սուրբ եկեղեցեացն՝ որ ի Վաղարշապատ քաղաքին ի վերայ ճանապարհին՝ յորում ասեն ընդ առաջ եղև թագաւորն Տրդատ՝ սրբոյն Գրիգորի։ Շինեաց անդ և եկեղեցի մի յանուն երկնաւոր Զուարթնոցն, որոց երևեալ ի տեսլեան սրբոյն Գրիգորի բազմութիւն երկնաւոր զաւրացն. և շինեաց եկեղեցին բարձր շինուածովք և չքնաղ զարմանալեաւք, արժանի աստուածային պատւոյն՝ որում նուիրեացն։ Ած ջուր և եբեր զգետոյն և արկ ի գործ զամենայն վայրսն առապար, տնկեաց այգիս և ծառատունկս,

և շուրջանակի պատուարեաց զընակութեամբ գեղեցկագիր յաւրինուածով բարձր պարսպաւ ի փառս աստուծոյ։

Այլ ոչ դադարեաց միշտն այն ապստամբ, այլ թէ և աստուածամարտ լինել կամեցաւ յիւրոց խորամանկութենէ. այլ երկնէր յարուցանել հալածանս ի վերայ եկեղեցեացն Հայաստանեայց աշխարհին։ Քանզի յամս Կոստանդինայ թագաւորի թոռին Երակլի, արկ ի գործ զխորամանկութիւն իւրոյ չարութեանն, արքունեակս կալաւ զզաւրսն, որ ի յունաց աշխարհին։ Քանզի ոչ երբէք ընդունէին Հայք զՀոռոմի հաղորդութիւն մարմնոյ արեանն Տեառն։ Եւ արդ՝ գրեն նոքա ամբաստանութիւն առ թագաւորն յունաց Կոստանդին և հայրապետն՝ թէ՝ «իբրև զանաւրէնս համարեալ եմք յաշխարհիս յայսմիկ։ Քանզի անարգանս համարին Քրիստոսի Աստուծոյ զժողովն Քաղկեդոնի և զտումարն Լևոնի, և նզովեն զնոսա»։ Յայնժամ հրաման ետ թագաւորն հայրապետաւն հանդերձ, և գրեն հրովարտակ առ Հայս, զի միաբանութիւն հաւատոյ արասցեն ընդ Հոռոմի, զի մի խոտեսցեն զժողովն և զտումարն զայն։ Եւ էր անդ այր մի ի Բագրաւան գեղջէ՝ որ էր ուսեալ զարուեստ փիլիսոփայութեան, և անուն նորա Դաւիթ։ Զնա հրամայեաց արձակել ի Հայս՝ զի երթեալ ի բաց հատցէ զհակառակութիւնն։ Եւ ժողովեցան ամենայն եպիսկոպոսունքն

և նախարարքն Հայոց ի Դուին առ քրիստոսասէր կաթուղիկոսն Ներսէս և առ բարեպաշտ զաւրավարն Հայոց Թէոդորոս Ռշտունեաց տէրն։ Եւ տեսին զհրամանս թագաւորին, և լուան զբանս փիլիսոփային՝ որ ուսուցանէր զՑրորդութիւնն բաժանմամբ ըստ տումարին Լևոնի։ Եւ իբրև լուան՝ չառին յանձն փոխել զճշմարիտ վարդապետութիւնն սրբոյն Գրիգորի՝ ըստ տումարին Լևոնի։ Հաճոյ թուեցաւ ամենեցուն առնել թղթոյն պատասխանի։

Պատճէն պատասխանի թղթոյն եկելոյ ի Հայս ի Հոռոմոց թագաւորէն Կոստանդինայ, զոր գրեցին Հայոց եպիսկոպոսունքն և կաթուղիկոսն Ներսէս հանդերձ նախարարաւքն և զաւրավարին Թէոդորոսիւ Ռշտունեաց տեառն։

Ճշմարիտ և ուղղադաւան նամակ Նիկիական։

Ազաչեմ զքեզ, ընթերցիր՝ որ զՔրիստոնէական հաւատն ունիս, Աստուածասէր։

Հոգիընկալ մարգարէիցն և յառաքելոցն Քրիստոսի ունիմք զպատուէր՝ առնել աղաւթս խնդրուածովք ի վերայ աստուածասէր թագաւորութեանդ և ամենայն իշխանացն և զաւրաց, և բոլորովին ամենայն աստուածապահ պաղատոյդ, յոր սէրն աստուծոյ հանգուցեալ է, և շնորհք աստուածային պարգևացն յայտնի են ի վերայ ձեր։

Զի ահա թագաւորութիւն մեծ և հզաւր քան զամենայն թագաւորութիւնս, զոր ո՛չ ձեռին մարդկան, այլ աստուծոյ աջոյն պսակեալ, զոր ոչ ոք կարասցէ փոխանորդել՝ բայց Քրիստոսի թագաւորութիւն։ Նոյնպէս և քահանայապետութիւն սուրբ՝ շնորհիւն Աստուծոյ։

Նախարարք և զաւրք քրիստոսասէրք. և մեր պանծացեալ ի լոյս աստուածասէր թագաւորութեանդ՝ անշարժ մնացաք ի մէջ չար և անաւրէն թագաւորացն պարսից։ Զի յորժամ բարձին զթագաւորութիւնն և կորուսին զամենայն զաւրս աշխարհին Հայաստանեայց, և ի գերութիւն վարեցին զարս և զկանայս։ Իսկ ի մնացելոցն վերայ սուր եդեալ և շողացուցեալ՝ ջանացան դարձուցանել ի մոլորութիւն, այլ ո՛չ կարացին շարժել, նաև «ամաչեցին եւ անաւրէնք յունայնութեան իւրեանց»։ Մինչև հրաման տալ Կաւատայ արքայի և որդւոյ նորին Խոսրովու՝ եթէ «իւրաքանչիւր ոք զիւր հաւատս կալցէ, և զՀայս նեղել ոք մի իշխեսցէ, ամենեքին մեր ծառայք են մարմնով իսկ վասն հոգւոցն, որ զհոգին դատէ՝ նա գիտէ»։ Ապա դարձեալ Խոսրով Որմզդի՝ յեգերութեանն Երուսաղէմի, հրաման ետ ամենայն եպիսկոպոսաց կողմանցն Արևելից և Ասորեստանի ժողովիլ ի դուռն արքունի և ասէ. «Լսեմ եթէ երկու կողմանք են քրիստոնէից, և մին զմիւսն նզովէ. վի՞նչ համարին իրաւացի։ Արդ՝ միաբա-

նութեամբ ժողովեցին ի դուռն արքունի, զի զուղիղն հաստատեսցեն և զթիւրն ի բաց մերժեսցեն»։ Եւ ժողովեցան ամենայն եպիսկոպոսունք և երիցունք և ամենայն հաւատացեալք կողմանցն այնոցիկ, և կացոյց ի վերայ նոցա ոստիկան զՍմբատ բագրատունի զանուանեալն Խոսրովայ Շրնումն. և զբժշկապետն արքունի։ Եւ անդ էր ի գերութեանն և Զաքարիաս հայրապետն Երուսաղէմի և այլ բազում իմաստասէրք, զորս և գերեալ էր յԱղէքսանդրացւոց քաղաքէն. որոց հրաման ետ արքայ Խոսրով արդարութեամբ ի վերայ հասանել, և զճշմարիտն ծանուցանել արքայի։

Եւ ժողովեցան ամենեքեան ի դահլիճն արքունի և եղև աղաղակ. քանզի էին ոմանք ուղղափառ հաւատով՝ գրով և կնքով հին թագաւորացն։ Եւ այլ Նեստորականք, և այլ բազում խառնիճաղանճ ժողովրդոց։ Նաև հայրապետն իսկ յառաջ մատուցեալ ասէր. «Մի՛ կոչեսցի Աստուած այրն այն [1]». և ծանուցին զբանս թագաւորին։

---

[1] Ասողիկ, եր. 95՝ և ոմանք Նեստորականք և Սեւերիտք և այլ բազմութիւն խառնիճաղանճ աղանդոյն։ Նա և հայրապետն եւս իւրովք համագգեօք յառաջ մատուցեալ՝ առնէր ամբաստանութիւն ըստ իւրոց ընիկ սովորութեանց։ «Մի կոչեսցի, ասեն, աստ այրն այն. Եւ ծանուցին. և այլն։

Պատասխանի ետ թագաւորն և ասէ. «Ո՞յր հրամանաւ եկն նա ի տեղին յայն. արդ գանալից լիցի՛ և գնասցէ». Նոյնպէս և այլ բազմութիւն ազանդոց հրամայեաց հանել յատենէն. բայց միայն զՆիկիականն. և զԿոստանդնուպաւլսին, և զԵփեսոսին, և զՔաղկեդոնին հրամայեաց քննել: Դիպեցան անդ արք երկու եպիսկոպոս յաշխարհէն Հայոց, արք հաւատարիմք, զոր վասն բռնութեան աշխարհին էին արձակեալ, զի ծանուսցեն թագաւորին. Կումիտաս Մամիկոնէից եպիսկոպոս և Մատթէոս Ամատունեաց: Ունէին պատրաստական անդ ընդ ինքեանս զգիր սրբոյն Գրիգորի: Եւ հրամայեաց թագաւորն հարցանել, եթէ՝ «յորո՞ց թագաւորաց ժամանակս եղեն ժողովքդ այդոքիկ»: Եւ նոքա ասացին, եթէ՝ «Նիկիոյ ժողովն առ Կոստանդիանոսիւ եղև. իսկ Կոստանդնուպաւլսին առ Թէոդոսիւ մեծիւ. և Եփեսոսին առ փոքր Թէոդոսիւ. և Քաղկեդոնին առ Մարկիանոսիւ»: Պատասխանի ետ թագաւորն և ասէ. «Երից թագաւորաց հրամանքն ճշմարիտ թուի՛ լինել՝ քան միոյն»: Եւ ի վերայ հասեալ թագաւորն և վասն Նեստորի՝ թէ ո՞, կամ ուստի, կամ յորո՞ւմ ժողովի, և թէ զի՞նչ խաւսեցաւ: Եւ հրամայեաց զՆեստորեանքն հանել յատենէն անտի արտաքս: Նոյնպէս և վասն Քաղկեդոնի ժողովոյն եհարց. եթէ՝ «ոյք է՞ին գլխաւորք». և ծանուցին նմա զամենայն. և ասացին՝ եթէ ինքեանք

իսկ ի Նիկիայ և Կոստանդնուպաւլսի Թագաւորքն Կոստանդիանոս և Թէոդոս մեծն։ Իսկ Եփեսոս՝ Նիւրեղ Աղէքսանդրու եպիսկոպոսն. և ի Քաղկեդոնի՝ Թէոդորետոս եպիսկոպոսն, որ զնեստորին խորհէր»։

Էր անդ Երան անուանեալ կաթուղիկոսն, և այլ եպիսկոպոսունք յԱսորեստանէ և յԱրուաստանէ և ի Խուժաստանէ, և յայլոց աշխարհաց. վասն որոյ հրաման ետ արքայ Խոսրով քանդել զամենեցունց նոցա զեկեղեցիսն և սրով սատակել զնոսա, թէ ոչ դարձցին ի մոլորութենէն և ելանիցեն յարքայական պողոտայն։ Իսկ որք զՔաղկեդոնին և զՎրաց և զԱղուանից կաթուղիկոսն, և այլ բազում եպիսկոպոսունք ի յունաց կողմանէ, և իշխանք՝ որք եկեալ էին ի ծառայութիւն պարսից թագաւորին, որով և չըփայքարն [1] իսկ հրամայեաց տալ. բայց խնդրեաց յետկար ի կողմանցն երկոցունց։ Զնիկիայն՝ որ առ Կոստանդիանոսիւ. և զԿոստանդնուպաւլսին՝ որ առ մեծն Թէոդոսիւ. և զԵփեսոսին՝ որ առ փոքր Թէոդոսիւ. և զՔաղկեդոնին որ առ Մարկիանոսիւ։ Եւ զամենայնն քննել և ի վերայ հա-

[1] Այսպէս ի տպ. և ի ձեռ. օրինակին։ Առ Ասողկայ, եր. 97՝ զփաքարն։ Թուի լինել պարսիկ բառ՝ پاکار կամ پیکار, փաքար կամ փայքար, որ նշանակէ զհարկապահանջն և զտուրս հարկաց ի պէտս կալուածատեարց։

առնել։ Եւ յետ ծանուցանելոյ զամենայն հաւատն, և ճշմարտութեամբ ի վերայ նորա՝ եհարց ցնոսա և ասէ. «Նոքա երեքին ընդէ՞ր ոչ ասացին երկուս բնութիւնս՝ բաժանմամբ, որպէս դուքդ այժմ. յայտ է եթէ պարտ է և զմեզ յերկուս բաժանել և երկուս ասել թագաւորս՝ և ոչ մի։ Զի և ես յերկուց բնութեանց եմ, թէպէտ ի հաւրէ և ի մաւրէ. թէպէտ ի հոգւոյ և ի մարմնոյ։ «Բայց Աստուածութիւնն թէ յամենայն տեղւոջ ոչ է, և զի՞նչ կամի՝ զամենայն լինել կամ առնել ոչ կարէ։ Աստուածութիւնն զի՞նչ է»։ Ապա հրամայեաց հարցանել զՋաքարիաս հայրապետն Երուսաղէմի. և զիմաստասէրն՝ որ յԱղէքսանդրացւոց քաղաքէն, զի զարդարն ասասցեն երդմամբ։ Եւ նոցա պատասխանի տուեալ ասեն. «Եթէ ոչ էաք մեք խոտորնակս գնացեալ առ Աստուծոյ, և ոչ նա բարկութեամբ խոտորնակս գնացեալ էր առ մեզ. բայց արդ՝ երկուցեալ յԱստուծոյ առաջի ձեր զճշմարիտն ասեմք։ Հաւատ ճշմարիտ այն է՝ զոր ի Նիկիայն ասացին առ երանելւոյն Կոստանդիանոսիւ։ Եւ նմին միաբան Կոստանդնուպաւլսին և Եփեսոսին. և նոցին միաբան Հայոց հաւատն ճշմարտութեամբ. իսկ Քաղկեդոնի ասացեալն ոչ է միաբան նոցին, որպէս ձեր բարեբարութիւնդ ծանուցաւ»։ Եւ հրաման տուեալ թագաւորն խնդիր առնել ի գանձու տեղւոյն, և գտին գրեալ զՆիկիայն հաւատս ճշմարիտս, և ի վե-

րայ հասեալ ըստ միաբանութեան հաւատոյ աշխարհիս Հայոց, որ էր կնքեալ մատանեաւ Կաւատայ արքայի և որդւոյ Նորա Խոսրովու: Յորոյ վերայ հրաման ետ արքայ Խոսրով՝ եթէ ամենայն քրիստոնեայք՝ որ ընդ իմով իշխանութեամբս են, հաւատ զՀայոցն կալցեն: Եւ որք միաբանին ընդ Հայոց հաւատոյն ի կողմանս Ասորեստանեայց, Կամյիշով [1] մետրապաւլիտ, և այլք տասն եպիսկոպոս. և աստուածասէր Թագուհի Շիրին. և քաջն Սմբատ. և բժշկապետն մեծ: Իսկ զպատճէն ուղիղ խոստովանութեան արքայ Խոսրով հրամայեաց կնքել իւրով մատանեաւն և տալ ի գանձս արքունի:

Իսկ արդ՝ զի եհան զմեզ Աստուած ի ծառայութենէ խաւարային իշխանութեանն և արժանի արար երկնաքաղաքացի թագաւորութեանդ. ո՜րչափ ևս առաւել պարտիմք խնդրել ի Քրիստոսէ Աստուծոյ վասն բարեպաշտ և աստուածասէր թագաւորութեանդ անշարժ մնալ մինչև յաւիտեանն, իբրև զաւուրս երկնից ի վերայ երկրի հանդերձ յաղթութեամբդ բազմաւ, տիրելով ամենայն տիեզերաց, ծովու և ցամաքի: Որ թէպէտ և մարմնով էք ի մարդկային յազգէ, այլ

---

[1] Կամյիշով, Kamjesu, որ թարգմանի «յարեաւ Քրիստոս», է անուն ոմանց յեպիսկոպոսաց Ասորւոց: Տես Ասսեմ. II, 414:

ունիք զտեղիք աստուածային աթոռոյն. և լոյս փառաց աստուածասէր թագաւորութեանդ լցեալ ունի զառ ի ներքոյս ամենայն, պսակեալդ յերկնուստ, պարծանքդ ամենայն քրիստոնէից զաւրութեամբ աստուածային Խաչին նշանաւն, նմանեալդ աստուածասէր, աստուածապաշտ, աստուածաշնորհ, քաջ և յաղթող փրկութենագործ երջանիկն Երակլի հայրն քոյ, որ փրկեաց զամենայն երկիր ի դառն դաժանէն։ Եւ այժմ զնոյն շնորհեսցէ Քրիստոս Աստուած ի ձեռն բարեպաշտութեան քոյ։

Եւ որ վասն միաբանութեան հաւատոյ խընդիր հրամայեալ էր առնել, և զգիր բարեպաշտութեան խոստովանութեան արձակեալ էր առ մեզ անարժան ծառայսս, զոր իբրև տեսաք՝ երկըրպագութիւն մատուցաք, և մեծաւ խնդութեամբ փառաւորեցաք զՔրիստոս, և աւրհնեցաք զբարերարութիւնն։ Եւ արդ՝ այսպէս ուսաք զհաւատոցն ճշմարտութիւն։ Յովհաննէս աւետարանիչն ասէ. «Ի սկզբանէ էր բանն, և բանն էր առ Աստուած և Աստուած էր բանն»։ Եւ նոյն դարձեալ ի կաթուղիկէին իւրում ասէ. «Որ էրն ի սկզբանէ՝ զորմէ լուաքն՝ որում ականատես իսկ եղաք, ընդ որ հայեցաք, և ձեռք մեր շաւշափեցին ի վերայ բանին կենաց։ Ահա մարմին եղև բանն. և կեանքն յայտնեցան, և տեսաք և վկայեմք և պատմեմք ձեզ զյաւիտենական կենացն՝

որ էր առ հայր, և երևեցաւ մեզ»։ Եւ նոյն Յովհաննէս ասէ յաւետարանին, թէ՝ «զաստուած ուրուք չիք տեսեալ»։ Եւ Պաւղոս ասէ. «Զոր ոչ ոք ետես ի մարդկանէ, և ոչ տեսանել կարող է»։ Իսկ զիմրդ ասէ, եթէ՝ «ականատես իսկ եղաք». և եթէ՝ «ընդ որ հայեցաք և ձեռք մեր շաւշափեցին ի վերայ բանին կենաց». և եթէ՝ «որ էրն առ հայր, և երևեցաւ մեզ»։ Այն կարի անագին, որպէս պարտ իսկ է՝ ըստ աստուածութեանն. և այս կարի խոնարհագոյն և մարդասիրաբար՝ ըստ մարդկային բնութեանս։ Բայց յայտ իսկ է. զի զմարմնանալն Աստուծոյ պատմէ, որպէս տէրունականն պատմէ բան՝ եթէ՝ «որ ետես զիս՝ ետեսն զհայր»։ «Զիս՝» ասաց, որպէս զմի, և ոչ «զմեզ» որպէս զերկուս։ Անդ զաստուածութենէն միայն ասէ. «Որ միայն ունի զանմահութիւն բնակեալ ի լոյս անհեղ և անմատոյց»։ Իսկ արդ՝ զմարդկութենէն և զաստուածութենէն. զի անտեսանելին ոչ երևէր, այլ ի տեսանելումն տեսանէրն զանտեսանելին. զի ի տեսանելումն հայրենի բնութիւնն աստուածային, և մայրենի բնութիւնն ի մարդկայինս։ Զի հայրենի բնութիւնն ի մարդկային բնութիւն միացաւ անփոփոխելի միութեամբ։ Եւ ծնաւ մի տեսակ՝ Աստուած և մարդ, որպէս ճրագն։ Տարսոնացին պատմէ. «Մի է, ասէ, Աստուած, և մի միջնորդ Աստուծոյ և մարդկան»։ Իսկ միջնորդն միոյ ուրուք ոչ

է. զի յերկոցունցն զմիութիւնն. որպէս յԱբրահամէ և ի Սառայէ Իսահակ ծնեալ միաբանութեամբ։ Այսպէս և Քրիստոս ի Հոգւոյն սրբոյ և ի Մարիամայ ծնեալ մի բնութիւն, անզանգ և անշփոթ միութեամբ, անճառ ըստ աստուծոյ ի հաւրէ, և զի ոչ լուծաւ կուսութիւնն։

Արդ՝ մի է տէր Յիսուս Քրիստոս Աստուած և մարդ. կեանք կախեալ զփայտէ առաջի աչաց, ըստ Նախամարգարէին ձայնի, որոյ վիրաւքն բժշկեցաք ամենեքեան։ Այսպէս և երանելին Յովհաննէս զմիաւորութիւն պատմէ ի կաթուղիկէին խւրում ասելով. «Սա է՝ որ եկն ջրով և հոգւով և արեամբն Յիսուս Քրիստոս. ոչ ջրով միայն՝ այլ արեամբ և ջրով. և հոգին է, որ վկայէ, զի հոգին իսկ է ճշմարտութիւն։ Սոքա երեքին են, որ վկայեն. հոգին և ջուրն և արիւնն. և երեքին մի են։ Եթէ զմարդկան ինչ զվկայութիւն ընդունիցիմք, ապաքէն Աստուծոյ զվկայութիւն մեծ է, զոր վկայեաց ի վերայ որդւոյ իւրոյ, եթէ՝ դա է որդի իմ սիրելի ընդ որ հաճեցայ. դմա լուարուք»։ Եւ ոչ բաժանեաց յերկուս բնութիւնս, և յերկուս անձինս, և յերկուս միտս. այլ «դայն» և «դմայն» ասելով՝ զմիութիւնն յայտ արարեալ։ Որպէս և սոյն իսկ աւետարանիչն յայտնէ ասելովն, եթէ՝ «Հոգին և ջուրն և արիւնն, և երեքին մի են»։ Եւ ի միւսումն վայրի ասէ. «Եւ արիւնն Յիսուսի որդւոյ Նորա սրբէ զմեզ յամենայն մե-

դաց»։ Ահա որդի Աստուծոյ է Յիսուս Քրիստոս, և որդի մարդոյ. և երկոքինն ի միասին մի բնութիւն։ Արդ՝ զի անմարմին և անմահ է աստուածութիւնն, ամենեցուն յայտնի է. բայց այն առաւել զարմացմամբ և բարերարութեամբ լի, սքանչելիք և յոյժ մարդասիրութեան նշանակ։ Զի անմարմինն մարմնանայր, և անտեսանելին տեսանիւր, անշաւշափելին շաւշափիւր, անժամանակն սկսանիւր, որդին Աստուծոյ որդի մարդոյ լինէր, և զմարդկութիւն իւր խառնէր ի թիւ Աստուածութեանն իւրում։ Արդ՝ զխոնարհելն մահու չափ և մահու Խաչի՝ առաքեալն Աստուծոյ ասէ, եթէ՝ «մինչ թշնամիքն էաք, հաշտեցաք ընդ Աստուծոյ մահուամբ որդւոյ նորա»։ Եւ դարձեալ ասէ. «Որ յիւր որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա»։ Եւ դարձեալ, «եթէ էր ծանուցեալ՝ ոչ արդեաւք զտէրն փառաց ի Խաչ հանէին»։ Եւ դարձեալ, եթէ՝ «Աստուած զորդին իւր առաքեաց ի նմանութիւն մարմնոյ մեղաց՝ և վասն մեղաց (աշխարհի). և դատապարտեաց զմեղս ի մարմնի անդ»։ Զի՞նչ իցէ «դատապարտեացն». այն է, զի խափանեաց զայն որ զիշխանութիւն մահուն ունէր, այսինքն զսատանայ։ Իսկ զինչ և առ մշակս այգւոյն ասիցէ տէրն, եթէ՝ «Իբրև մերձեցաւ ժամանակ պտղոյն, առաքեաց զծառայս իւր առնուլ զպտուղ նորա. և կալեալ մշակացն

զծառայս նորա՝ զոմանս տանջեցին, զոմանս քարկոծեցին, զոմանս սպանին. յետոյ առաքեաց զորդի իւր՝ ասէ. թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ մշակքն իբրև տեսին զորդին, ասեն. սա է ժառանգն, եկայք սպանցուք զսա. և մեր եղիցի ժառանգութիւնն։ Եւ հանեալ զնա արտաքոյ այգւոյն սպանին։ Արդ՝ ոչ միայն բանն է որդի Աստուծոյ։ այլ և բանն և մարմինն. և մարմին բանին ի միասին. զի թէպէտ և մարդ է մարմինն. այլ և Աստուած է։ Արդ՝ որք ի սկզբբանէ ականատեսք և սպասաւորք եղեն բանին՝ աշակերտաց իւրոց յայտնապէս ուսուցին։ Եւ նոքա դարձեալ իւրեանց աշակերտաց զնոյն աւանդեցին։ Եւ դարձեալ զնոյն աւանդութիւն գրով հաստատեցին։ Եւ բազումք յառաքելոցն ընկալան զձեռնադրութիւն եպիսկոպոսութեան. որպէս զՅուստիանոս։ և զԵնանկլիտոս և զԿղեմենտոս ի Հռոմ, և զԱնանիաս յԱղէքսանդրիա, և զՇմաւոն Կղէովպեանց յԵրուսաղէմ, և զԴիոնէսիոս Արիսպագացի յԱթէնս և զմիւս և Դիոնէսիոս ի Կորնթոս, և զմիւս Տիմոթէոս յԵփեսոս, և զՏիտոս ի Կրետէս, և զՊաւղիկարպոս ի Զմիւռնիա Ասիացւոց, և զԵւոդիա՝ որ է Պետրոս յԱնտիոք, և Երենիոս Գալիլեացի աշակերտ Պաւղիկարպոսի յեկեղեցւոջն Լաւոդիկեցւոց։ Եւ այլ ևս անթիւ բազմութիւն սքանչելի եպիսկոպոսաց և քահանայից հոգեկիր ճարտասանից, փիլիսոփա-

յիշ, և սքանչելի մանկանց եկեղեցւոյ, որք զճըշմարիտ հաւատս եկեղեցւոյ ըստ առաքելական ձայնին գրով դրոշմեցին յիւրաքանչիւր յեկեղեցիս։ Յայտնի ի Նիկիական ժողովոյն է, զի և նոքա լիով էին ամենեքին աշակերտք, որք յառաքելոցն ընկալան, և ի Նիկիայ զնոյն հաստատեցին։ Քանզի ասացին զՈրդւոյ, եթէ «նոյն բնութիւն Հաւր, որով ամենայն ինչ եղև յերկինս և ի վերայ երկրի. որ 'յաղագս մեր մարդացաւ և յաղագս մերոյ փըրկութեան»։ Այսպէս և սուրբն Գրիգոր յառաջնոցն ուսեալ՝ մեզ վարդապետեաց, եթէ՝ «որ ի մարմինն հաւատացին՝ ծանոյց նոցա զԱստուածութիւնն իւր. և որք ի մարմնոյն դթեցին՝ ուրացան զբնութիւն նորա։ Քանզի մարմնացաւ ի մի բնութիւն. և խառնեաց միացոյց զմարդկութիւնս ընդ իւրում աստուածութեանն՝ զանմահն ընդ մեռելոտւոյս, զի զամենայն մարդիկ անքակ արասցէ յանմահ աստուածութենէ իւրմէ»։ Արդ ունիմք մեք հաւատս, ոչ ի նորադունից սահմանեալ, այլ որպէս ընկալաք մեք ի սուրբ առաքելոցն ի ձեռն հայրապետին մերոյ սրբոյն Գրիգորի վարդապետելով զՏրդատ արքայ և զիշխանսըն Հայոց աշխարհին, դոգցես եթէ լ ամաւք յառաջ քան զԿոստանդիանոս։ Նաև սուրբն Ղեւոնդ մեծ արքեպիսկոպոսն Կեսարու, ուր ծնեալ և ուսեալ էր սուրբ Գրիգորիոս, որ և ձեռնադրեացն իսկ զնա ի քահանայապետութիւն, և նա

զնոյն հաստատեաց զաւանդութիւն։ Երկրորդ անգամ դարձեալ ի Նիկիայն ժողովեցան սուրբ և ճշմարիտ հարքն հրամանաւ աստուածասէր թագաւորին Կոստանդիանոսի, և ի բաց բարձին զամբարիշտ աղանդոյն մոլեգնութիւնն, և սերմանեցին հաւատս ճշմարիտս ընդ ամենայն տիեզերս։ Ուստի և մերն հանդիպեալ անդ սուրբն Ռստակէս որդի սրբոյն Գրիգորի՝ որ ընկալաւ զհրամանս հաւատոյ ի սուրբ ժողովոյն և ի մեծ թագաւորէն Կոստանդիանոսէ, բերեալ մատոյց առաջի քրիստոսասէր թագաւորին Տրդատայ և սուրբ քահանայապետին Գրիգորի հանդերձ հրամանաւք երջանիկն Կոստանդիանոսի։ Եւ ի վերայ այնորիկ հաստատեալ կամք, և բաւական համարիմք զնոյնս ի վարդապետութիւն ուղիղ հաւատոյս ըստ ասացելումն՝ «մի փոփոխեր զսահմանս հաւատոյ՝ զոր հաստատեցին հարքն քո»։

Եւ դարձեալ երկրորդ անգամ յորժամ հանդերձեցաւ թագաւորն Տրդատ, և առ ընդ իւր զսուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս և զնորին որդին զՌըստակէս եպիսկոպոս, և ի զինուորական կողմանէն զչորեսին գահերէցս իւրոյ տաճարին, և հանդերձ հ հազար արանց ընտրելոց գլխաւորաց յամենայն սահմանացն իւրոց՝ գնաց ի Հռոմ տեսանել զԿոստանդիանոս։ Որ իբրև տեսին զմիմեանս՝ առաջի կալաւ Կոստանդիանոսի զսուրբն Գրիգորիոս. և նա խոնարհեալ յոտս սրբոյն Գրի-

գոլի, զի աւրհնեսցի ի նմանէ։ Յայնժամ միջնորդ կալան զհաւատսն՝ որ ի տէր Յիսուս Քրիստոս, և երդմամբ միաւորեցան երկոքին թագաւորքն անշուշտ ունելով զխաղաղութիւն ընդ միմեանս մինչև յաւիտեան ի մէջ թագաւորաց երկոցունց։ Եւ ևս հաստատեցին առ մեզ զհաւատոցն զճշմարտութիւնն, զոր հիմնադրեաց մեզ սուրբ Հոգին։

Զայլ ժողովսն ուրեք ուրեք լեալ մեք ոչ գիտեմք. և մեք այսպէս համարիմք՝ եթէ այդ աստուածասէր պալատանդ յերանելւոյն Կոստանդիանոսէ և ի ժողովոյն Նիկիոյ ունի զհաւատոցդ հիմնադրութիւն։ Եւ ամենայն որ աւելի քան զայն ունի, թէ և յերկնից հրեշտակ իցէ՝ նզովեալ եղիցի։ Արդ ամենայն վարդապետք եկեղեցւոյ՝ որք փիլիսոփայական արուեստիւ գերազանցեալք և աստուածային տեսութեանն հասեալ, ճշմարիտ հիմնադրութիւն ընկալեալ ի սուրբ առաքելոցն՝ այտի ի ձէնջ աւետարանեցին ընդ ամենայն տիեզերս։ Սուրբ և ճշմարիտ կաթուղիկոսն մեր Գրիգորիոս ի Կեսարիա Կապադովկացւոց սնեալ և ուսեալ վարդապետեաց մեզ, յոր հիմնեցեալ անշարժ կամք մինչև ցայժմ, և ի վերայ նորա ունիմք վարդապետս զսուրբ հարսն ճշմարտապատումս՝ որ ամենեքեան զՆիկիայն խաւսեցան. Յուստինոս, Դիոնէսիոս և Բեկտովր՝ Հռոմայ եպիսկոպոսք և Դիոնէսիոս Աղէքսանդրացի. և Պետրոս միայ. և Թէոփիլոս. և Աթա-

նաս. և Կիւրեղ Աղեքսանդրացի եպիսկոպոս, և Բարսեղ Կեսարու եպիսկոպոս. և Գրիգոր Նազիազու. և Գրիգորն Նէոկեսարու սքանչելագործ. և Գրիգոր Նիւսացի՝ եղբայր Բարսղի. և այլ անթիւ հովիւք ուղղափառութեան համաբարբառք նոցին, որոց պատմութիւնքն յայտնի են։

Արդ՝ զի թշնամիք աստուածպաշտութեանն բազում անգամ արշաւեալ կորուսին զերկիրս մեր. և որպէս մարդիկ երկիրս կորուսին, և զկտակարանս եկեղեցւոյ և զվարդապետս նոյնպէս սպառեցին։ Եւ արդ՝ կտակարանս և վարդապետս ոչ գոն. զգիրս և զդպրութիւն մեք ոչ գիտեմք. բայց որչափ ինչ մնացեալ են ի տեղիս տեղիս վարդապետական պատմութիւնք՝ ուսուցանեն մեզ այսպէս ճշմարտութիւնս հաւատոցն, որ ի Նիկիայն աւետարանեցաւ լոյս յորս փութով հասանէր Ռստակէս, որդի սրբոյն Գրիգորի. և այսպէս քարոզեցաւ ձայն սիւնհոդոսական ժողովոյն Նիկիայ։

## ՀԱՆԳԱՆԱԿ ՆԻԿԻԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅՆ

«Հաւատամք ի մի Աստուած հայր ամենակալ յարարողն երկնի և երկրի երևելեաց և աներևութից։ Եւ ի մի տէր Յիսուս Քրիստոս որդի Աստուծոյ ծնեալ յԱստուծոյ Հաւրէ միածին, այսինքն յէութենէ Հաւր։ Աստուած յԱստուծոյ. լոյս ի լուսոյ. Աստուած ճշմարիտ. յԱստուծոյ ճշմարտէ,

ծնեալ եւ ոչ արարեալ։ Նոյն բնութիւն Հաւր. որով ամենայն ինչ եղև յերկինս և յերկրի երևելիք և աներևոյթք։ Որ յաղագս մեր մարդկան և վասն մերոյ փրկութեան իջեալ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս ի Մարիամայ սրբոյ կուսէն՝ հոգւովն սրբով։ Որ և (էառ) հոգի, և մարմին, և միտք, և ամենայն որ ինչ է ի մարդ՝ ճշմարտապէս և ոչ կարծեաւք. չարչարեալ, այսինքն խաչեալ, թաղեալ, և յերիր աւուր յարուցեալ, ելեալ ի յերկինս նովին մարմնով (նստաւ ընդ աջմէ հաւր։ Գալոց է նովին մարմնովն և) փառաւք հաւր, դատել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան։ Հաւատամք և ի սուրբ Հոգին յանեղ և ի կատարեալ՝ որ խաւսեցաւ յաւրէնս և ի մարգարէս և յաւետարանս, որ էջն ի Յորդանան քարոզեաց յառաքեալս, և բնակեցաւ ի սուրբս։ Հաւատամք և ի մի միայն ընդհանրական եկեղեցի, ի մի մկըրտութիւն, յապաշխարութիւն, և ի թողութիւն մեղաց. ի յարութիւն մեռելոց, ի դատաստանն յաւիտենից հոգւոց և մարմնոց, յարքայութիւնն երկնից և ի կեանսն յաւիտենականս։ Իսկ՝ ոյք ասեն՝ էր երբեմն յորժամ ոչ էր Որդի, կամ էր երբեմն յորժամ ոչ էր սուրբ Հոգի. կամ թէ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ կամ ի գոյութենէ ասեն լինել զորդի Աստուծոյ, կամ զսուրբ Հոգին. կամ փոփոխելի, կամ այլայլելի. զանպի-

սխան նզովեմք. զի և զնոսա նզովէ կաթուղիկէ առաքելական եկեղեցի։

Իսկ մեք փառաւորեսցուք՝ որ յառաջ քան զյաւիտեանս, երկիրպագանելով սրբոյ երրորդութեանն և միասնական Աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն»։

Եւ ապա կոչեցան ի Հռովմ, և յանդիման եղեն Կոստանդիանոսի արքայի, և ուսուցին նմա զհաւատս ճշմարիտս, և վկայութեամբ հաստատեցին զհիմնադրութիւն հաւատոյն։

Յամի (երկերիւր ութսուն և չորրորդի[1]) կենարարին և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի թագաւորէ Դիոկղետիանոս երեք ընկերաւքն թագաւորութեանն Հռովմայեցւոց։ (Եւ) յարուցին հալածանս ի վերայ քրիստոնէից, և աւերեցին զամենայն եկեղեցիս յամենայն տէրութեանն իւրեանց։ Եւ յամի եւթանասուն և հինգերորդի (կենացն) մեռաւ Կոստանդէս, և թագաւորեաց Կոստանդիոս որդի իւր ի Գալլիա և ի Սպանիա. և էր քրիստոնեայ ճշմարիտ։ Եա ճակատ ընդ

[1] Թողաք զուղղագրեալն յառաջին հրատարակչէ պատմութեանս. իսկ ի ձեռ. օրին. էր՝ յամի ժգ ներքտասաներորդի։

Մաքսիմիանոսի և ընդ Մաքսիմինոսի որդւոյ նորա, և ընդ Լիկիանոսի, և ընդ Մարկիանոսի, և յաղթեաց նոցա, և կոտորեաց զնոսա. քանզի հաւատաց ի մի Աստուած տէր ամենայնի և յորդի նորա Յիսուս Քրիստոս: Եւ գիտաց՝ եթէ նա ետ նմա զյաղթութիւնն. և հրաման ետ քրիստոնէից շինել զեկեղեցիս, և ազատել զտեղիս՝ ուր եդեալ էին մարտիրոսք, և մեծաւ պատուով մեծարէր զքրիստոնեայսն: Եւ հրաման ետ ամենայն եպիսկոպոսաց ժողովիլ ի Նիկիա քաղաք. և ժողովեցան եպիսկոպոսունք և սուրբք բազումք: Եւ եղեն անդ աւուրս ժե. և ապա եմոյծ զնոսա ի պալատն. և մինչ ժողովեալ կային միահամուր յոսկեզաւծ պատշգամի միոջ, եմուտ եկաց ի մէջ նոցա, և խոստովան եղև, եթէ՝ քրիստոնեայ եմ և ծառայ տեառն Աստուծոյ ամենակալի, և Յիսուսի Քրիստոսի որդւոյ նորա սիրելւոյ: Եւ եղև խնդիր ամենայն եպիսկոպոսաց վասն հաւատոյ առաջի Կոստանդիանոսի արքայի. քննեցին զգիրս, և գրեցին հաւատս ճշմարիտս, որ ի Նիկիայն աւետարանեցաւ մեզ:

Արդ՝ ի Ներոնէ կայսերէ մինչև յերջանիկն Կոստանդիանոս, և ի Կոստանդիանոսէ մինչև ի Մարկիանոս թագաւոր, ամենայն վարդապետաց գլխաւոր առաջնորդաց եկեղեցւոյ ի քաջէն Թէոփիլէ ի մեծ ճարտարապետէն սկսեալ արուեստաւոր քաղաքացն Եգիպտացւոց և Աղեքսանդ-

բացւոց և Հռոմայեցւոց և Կոստանդնուպաւլսեցւոց և Անտիոքացւոց և Կեսարացւոց և Աթենացւոց, և Կիւլիկեցւոց, և միանգամայն ընդհանուր ամենայն վարդապետաց եկեղեցւոյ. յաւուրս Մարկիանոսի ի ձեռն տումարին Լևոնի. Թէոդորիտոս գլուխ Քաղկեդոնի ժողովոյն՝ զոր նայն հաստատեաց չարափառութեամբ: Եւ մեզ մի լիցի պարծիլ. բայց միայն ի Խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Նաև Դաւիթ իսկ պարծի ի խաչ որդւոյ իւրոյ. և ոչ անարգանս համարեցաւ Աստուածութեանն. այլ երբեմն կառք Աստուծոյ ասաց տէր, և երբեմն լեառն Սինեայ. և երբեմն բարձրութիւն երկնից: Քանզի ասէ. «կառք Աստուծոյ բիւրապատիկք. հազարք ուղղինչք և տէր ի նոսա ի Սինէ սրբութեան: Ել ի բարձունս և գերեաց զգերութիւն». և զայլն ևս: «Կառք Աստուծոյ բիւրապատիկք, հազարք ուղղինչք, և տէր ի նոսա»: Զի բիւրապատիկ է զաւրութիւն և փառք Խաչին Քրիստոսի, որ բարձեալ ի վեր ունի զարարիչն երկնի և երկրի: Եւ հազարքն ի Հրէից կանգնեցին զնա: «Եւ տէր ի նոսա ի Սինէ սրբութեան»: Ցո՞յք արդեաւք ի նոսա. յայտ է՝ ի բիւրապատիկ զաւրութիւնն, և ի փառս Խաչին. ուստի և զգերութիւնն թափեաց. և վասն այնորիկ մեք ոչ ամաչեմք ասել ցորդին Աստուծոյ. «սուրբ և անմահ՝ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ»:

Իսկ վասն տէրունեան խորհրդեանն՝ զոր մեծաւ զգուշութեամբ բաշխեմք, այսպիսի ինչ. վասն զի՝ ոչ ունիմք իշխանութիւն զսուրբն յանսուրբսն մատակարարել։ Վասն զի ունիմք մեք կանոնք համաշխարհական կարգաց և աւրինաց, արանց և կանանց. զի որք կուսութեամբ զուգին՝ համարձակութեամբ վայելեն ի տէրունական մարմնոյն։ Ըստ այնմ, թէ՝ «պատուական է ամուսնութիւն ամենեսիմք, և սուրբ են անկողինք»։ Իսկ երկրորդեանքն, և եթէ մին կոյս իցէ, և միւսն երկրորդական՝ հրամայէ ապաշխարել երկոցունցն ի միասին զերեամ մի, և ապա հաւասարել աւրինաց։ Իսկ զերրորդեանսն և զչորրորդեանսն ոչ ընդունի եկեղեցի, և ոչ իսկ իշխեն տալ զանուն հաղորդութեանն. ըստ այնմ թէ՝ «որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ, դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ. զի ոչ խտրէ զմարմինն տեառն»։ Եւ Աստուածայինն բողոքէ ձայն՝ «մի տալ զսրբութիւն շանց»։

Նաև ի տախտակսն քարեղէնս զմի ի տասն պատգամացն «զմի շնարն» իւրով մատամբն գրեաց։ Այլ տեսանեմք՝ զի և կարի իսկ ի հինսն և յառաջին փիլիսոփայսն պիղծ և գարշելի համարեալ էր պոռնկութիւնն։ Զի Սողոնի Աթենացւոյ աւրէնս եդեալ Աթենացւոցն ի բաց կալ ի պոռնկութենէն և ոչ ընդունել զպոռնկորդին ի ժառանգութիւն։ Ղիկուրգոս Ղակեդովմայեցի աւ-

րէնս եդ Ղակեդովմացւոց՝ ի բաց կալ ի պոռըն-
կութենէն, և ոչ թաղել իսկ զպոռնկորդին։

Աթէանով[1] ումն զկին մարդ զաշակերտ Պիւթագորայ հարցեալ եղև, թէ՝ յետ քանի՞ աւուր մերձաւորութեանն ի կին մարդ, արժան է յարքունիս մտանել»։ Եւ նա ասէ. «յիւրմէն աւրէն է. յաւատարէն և ոչ բնաւ»։

Իսկ եթէ նոցա այնպէս զողջախոհութիւնն համբուրեալ, որչափ ևս առաւել երկիւղիւ արժան իցէ և մեզ զառաքելականն կատարել զձայն, եթէ՝ «փախերուք ի պոռնկութենէ». զի թէպէտ և ոչ ոք է արդար և ոչ մի, այլ ոչ եթէ պարտ իցէ ի ձեռն յանդգնութեան զաստուածային զմարմինն թշնամանել։ Զի՞ պիղծն մերձեցի բերան, կամ զիա՞րդ դողումն ոչ կալաւ զճաշակողն՝ ի հուրն կենդանի աներկիւղաբար մերձենալ. այլ ունելեաւք, և ոչ մարգարէն արժանաւոր լինէր ճաշակել զնա, այլ միայն մերձենալով ի շրթունս նորա անդէն ընկալաւ զմաքրութիւն։

Իսկ արդ՝ արժա՞ն իցէ անսրբոցն և պղծոցն յերկրաւորացս յանդգնել յարքունիս։ Եւ կամ ո՞ իսկ թոյլ տացէ մտանել. և կամ թէ ո՞չ հալածականս փախիցէ. այլ մանաւանդ եթէ և կամեսցի ևս յարքունական սեղանոյն վայելել. ո՞րչափ ևս առաւել յերկնաւոր թագաւորին յարքունիս ու-

[1] Ի ձեռ. օրին. էր՝ զԹէանով։

նիցի ոք համարձակութիւն մտանել ոչ ունելով հանդերձ մաքրութեան, և աներկիւղ լրբութեամբ մատիցէ ի հուրն կենդանի, և ճաշակեսցէ յարքունական և յերկնային սեղանոյն. այլ ոչ տարահալած լեալ արտաքս մերժեսցի, ըստ այնմ, թէ՝ «Ի բաց կացէք յինէն ամենեքեան՝ որք գործէք զանօրէնութիւն»։

Մեք ընկալաք ի սրբոյ Գրիգորէ՝ և յաստուածասէր թագաւորացն Կոստանդիանոսէ և ի Տրդատայ, և յետ անորիկ ապա կարգեցաւ մեզ Նիկիական լոյսն ի ձեռն նորին իսկ երջանիկն Կոստանդիանոսի, և ի նորին աւանդութեան վերայ հաստատեալ կամք, և ոչ խոտորիմք ի նմանէ ոչ յաջ և ոչ յահեակ։

Եւ վասն այլ ժողովոց՝ որպէս և վերագոյն ասացաք, ճշմարտիւ ինչ մեք ոչ գիտեմք, բայց որպէս հին վարդապետացն ասացեալ է, սուրբ և ճշմարիտ ասացեալ է զժողով՝ որ ի Կոստանդնուպաւլիս ժողովեցան ի խափանումն Նեստորի։ Զքաղկեդոնի ժողովն չասացին ճշմարիտ. քանզի ասացին առաջնորդք ժողովոյն այնորիկ որ յեփեսոս, զմիտսն Նեստորի ունէին, բայց ոչ իշխէին ի վեր հանել։ Եւ թէպէտ և արարին զժողովն Եւտիքի ամբարշտութեանն, նման նորին այլանդակութեանն՝ զիւրեանց հաստատեցին չարափառութիւն. քանզի Եւտիքոսն այն վրիպեալ ասէր թէ՝ «յերկնից եբեր Քրիստոս զմարմինն»։

Իսկ նոքա զմի Քրիստոսն յետ միանալոյ բանին և մարմնոյ՝ յերկուս բնութիւնս բաժանեցին, և ետուն կարծիս՝ զսուրբ զՏրրորդութիւնն չորրորդութիւնն յաւելլով։ Քանզի գտեալ զՏումարն Լեւոնի արձան չարափառութեան իւրեանց՝ ի վերայ նորին հաստատեցին զիւրեանց դժնդակութիւն, և ասացին զմի տէր Յիսուս Քրիստոս յերկուց բնութեանց՝ ոչ ինչ բարձեալ բնութեանցն զանազանութիւն։ Վասն միանալոյն առաւել ողջախոհել զաւրութիւն երկաքանչիւր բնութեանց, և զերկաքանչիւրսն ի մի մի դէմս միաւորեալ. ոչ Աստուածային բնութեանն տալ զմարդկային բնութեանն նուաստութիւնս. և ոչ մարդկային բնութեանն՝ զաստուածային բնութեանն ճոխութիւն։

Անարժան և անկարելիս համարել՝ Աստուծոյ մարդ լինել, և ի կնոջէ ծնանիլ, և զամենայն կրել զմարդկային կիրս, և ի Խաչին բեւեռիլ և մեռանիլ։

Արդ՝ եթէ այդ ամենայն անկարելի էր լինել ըստ մարմնոյ իւրոյ բանին Աստուծոյ, անկարելի էր ապա կուսին առանց առն յղանալ, և անապական ծնանիլ զմարդացեալն Աստուած. և անկարելի էր մարդումն ի հինգ նկանակէ զհինգ հազարսն կերակրել. և զջուրն ի գինի փոխել. և Թքովն զաչս կուրին բանալ. և ի վերայ ջրոյն շրջել. և զդեւս հալածել. և զմեռեալս յարուցա-

նել․ և զայլսն ևս։ Իսկ մեք և ամենեքին՝ որ զուղիղն խոստովանիմք, զի չէր լոկ մարդկային մարմինն, այլ Աստուածութիւնն էր ի մարմինն։ Իսկ զայնոսիկ՝ որ յետ միաւորութեանն պատառեն բաժանմամբ, խոտեմք և նզովեմք ըստ երանելւոյն Կիւրղի Աղէքսանդրացւոյ՝ որ ասէ՝ «Եթէ ոք ոչ խոստովանեսցի՝ եթէ Աստուած է ճշմարտութեամբ Էմմանուէլ, վասնորոյ Աստուածածին կոյսն Մարիամ ծնեալ ընդ մարմնոյ զմարմնացեալ զբանն Աստուած, նզովեալ լիցի»։ «Եթէ ոք ոչ խոստովանեսցի ի մարմնի բնութեամբ միանալ բանին Աստուծոյ, և մի Քրիստոս զնոյն համդերձ մարմնով Աստուած՝ միանգամայն և մարդ, նզովեալ լիցի»։ «Եթէ ոք զմի Քրիստոս բաժանեսցէ յերկուս դէմս յետ միանալոյն․ և միայն մերձաւորութիւն և յարելութիւն ասիցէ, իբրև պատուով և կամ ճոխութեամբ զաւրութիւն գտեալ, և ոչ միութիւն բնութեամբ, նզովեալ լիցի»։ Եւ մեզ տէրունական բողոքէ ձայնն՝ «Այնպէս լուսաւորեսցի լոյս ձեր առաջի մարդկան, այսինքն հաւատոյն ճշմարտութիւն, որպէս զի տեսանիցեն զգործս ձեր բարիս, և փառաւոր առնիցեն զհայր ձեր՝ որ յերկինս է»։

Իսկ մեք որպէս ընկալաք զհրամանս երկնաքաղաքացի և բարեպաշտ քո թագաւորութեանդ՝ քոյ արանց արքայ Կոստանդին, լաւագոյն համարեցաք զսահմանադրութիւնն ուղղափառ հա-

ւատոյն՝ զոր ընկալաքն հարքն մեր ի բուն առաջին վարդապետացն, գործով ծանուցանել առաջի աստուածասէր և բարեպաշտ թագաւորութեանդ ի ձեռն պատճէնիս։ Զի և մեր անարժանութեանս շնորհեսցէ Աստուած արժանաւորապէս խնդրել յԱստուծոյ զգիտութիւն բարւոյ, և աւրհնել զաստուածասէր և զբարերար տէրութիւնդ, զի յաւիտեան տիրեսցես ի վերայ ամենայն երկրի, ծովու և ցամաքի, յաղթութեամբ բազմաւ։

## ԳԼՈՒԽ ԼԴ.

Յարձակումն հագարացւոց, և անցք ինչ ի Հոռոմս։

Ճառեցից դարձեալ զրուցելով զբանս ըստ չարիս հասելոյ ի վերայ մեր ժամանակի՝ վասն պատառման առագաստին հին հաւատոյ, և շնչել ի մեզ մահաբեր խորշակին, որ տապախառն աբարեալ զմեծամեծ վարսաւոր գեղեցիկ ծառս մատաղատունկս բուրաստանաց, և այս յիրաւի. զի տեառն մեղաք, և բարկացուցաք զսուրբն Իսրայէլի։ «Եւ թէ ախորժիցիք և լուիջիք ինձ, ասէ, զբարութիւնս երկրի կերիջիք. ապա թէ ոչ կամիջիք լսել ինձ՝ սուր կերիցէ զձեզ, զի բերան տեառն խաւսեցաւ զայս»։ Զայն իսկ մրրիկ ի վերայ Բաբելոնին տեսանի, այլ եկեալ հասեալ ի վերայ ամենայն երկրի. վասն զի մայր է ա-

մենայն ազգաց Բաբելոնի, և թագաւորութիւն նորա թագաւորութիւն կողմանց հիւսիսոյ։

Իսկ հարաւային անդ քան զնոսա, այսինքն Հնդիկք՝ և ի նոսին կողմանէ ազգք բնակեալք յանապատին մեծի, ուրանաւր որդիքն Աբրահամու, որ ի Հագարայ և ի Քետուրայ ծնեալք. Իսմայէլ. Ամրամ. Մադան. Մադիամ, Յեքսան, Յեսբոկ. Մելխաւէ։ Եւ որդիքն Ղովտայ՝ Ամոն և Մովաբ։ Եւ որդիքն Եսաւայ՝ այսինքն Եդոմ։ Եւ այլք ևս, որ էին ի հարաւակողմն Հնդկաց նոցին ի հիւսիսոյ կողմանէ, ի մեծ և յահագին անապատէն, ուրանաւր Մովսէս և որդիքն Իսրայէլի բնակեալ էին՝ զոր ասաց մարգարէն, եթէ՝ «Որպէս մրրիկ ի հարաւոյ ընթասցի, յանապատէ գնացեալ յահեղ տեղւոջէ», այն է անապատն մեծ և ահագին, ուստի մրրիկ ազգացս այսոցիկ փոթորկեալ ել և կալաւ զամենայն երկիր, կոխեաց և եհար զնա։ Եւ կատարեցաւ ասացեալ, թէ՝ «գազանն չորրորդ՝ չորրորդ թագաւորութիւն կացցէ ի վերայ երկրի, որ առաւել է չարեաւք քան զամենայն թագաւորութիւնս, որ արար անապատ զամենայն երկիր»։

Եւ արդ՝ զի՞նչ ևս զհոռովմոց թագաւորութեանն ասացից զխռովութիւն և զաղէտս կործանման՝ որ ոչ երբէք դադարեաց յընտանի պատերազմէն. և հեղումն արեան կոտորածոյ արանց դլխաւորաց և խորհրդականաց ի թագաւորու-

թեանն, զոր ասացին խորհել խորհուրդ մահու ի թագաւորին վերայ։ Եւ վասն այսորիկ կոտորեցին զամենայն արս գլխաւորս, և ոչ մնաց ի թագաւորութեանն այր խորհրդական. զի միահամուռ կոտորեալ սպառեցան բնակիչք աշխարհին, և իշխանքն՝ որ ի թագաւորութեանն։ Սպանին և զԳէորգ Մագիստրոս, և զՄանուէլ զայրն առաքինի՝ որ էր աներ Սմբատայ ասպետի որդւոյ մեծին Սմբատայ Խոսրովայ Շումն կոչեցելոյ։ Զորմէ ասացին ոմանք տեսանել ի գիշերի ճրագունս լուցեալս ի տեղւոջ սպանման նորա։ Եւ արկին զՍմբատ յաքսորն. վասն զի պարտաւորեցին զնա զաւրն իւրեանց ի յապստամբութեան յետ իւրացն եղելոց. զի ասացին զնմանէ ընդ թագաւորին՝ թէ՝ «ասէր նա՝ թէ պարտ է արեան Մագիստրոսին խնդիր առնել»։ Եւ իշխան զաւրուն, որ յայնմ կողմանէ՝ և սիրելի ամենայն զաւրացն։ Եւ Սմբատ էր իշխան զաւրու Թրակացւոց իշխանացն. և Մանուէլ գործէր ի Կոստանդնուպաւլիս զգործ Մագիստրէի։ Եւ ոչ կոչեաց թագաւորն զՄագիստրոսն համարձակապէս իշխանութեամբ՝ երկուցեալ յապստամբութենէն զաւրացն. այլ կոչեաց առ ինքն զասպետն Սըմբատ՝ և երդմնեցոյց զնա ի Խաչն տէրունական՝ որ ընդ անձին իւրում՝ զի մի ումէք հանցէ զբանսն ի վեր, և արձակեաց զնա ի զաւրս իւր. և զի խաւսեցի ընդ Մագիստրոսն խաղաղու-

թեամբ՝ տարցի զնա խաբելով։ Իսկ նա երթեալ ոչ կարաց զնա խաբել, և մանաւանդ զի ոչ թաղուցաւ ի նմանէ բանն։ Ապա խաւսեցաւ ընդ ամենայն իշխանս զաւրուն, և ետ նմա հրամանն արքունի։ Իսկ նոքա և ամենայն զաւրն իբրև ոչ կարացին ընդդիմանալ արքունի հրամանին, ետուն զնա ի ձեռս նոցա. զոր կալեալ կապեցին զնա՝ և տարան յանդիման թագաւորին. և վասն այսորիկ զաւրք Թրակացւոց իշխանացն խորհեցան ի վերայ նորա մահ, և ասացին զնմանէ պատճառս ապստամբութեան խորհելոյ՝ զի մեռցի. բայց արքայն խնայեաց ի նա, և մերժեալ ի նոցանէ ապրեցոյց զնա։

## ԳԼՈՒԽ ԼԵ.

Պատերազմ Իսմայելացւոց ընդ Պարսից և բառնալ զտէրութիւն Պարսից. մահ Յազկերտի. Մարաց և Հայոց ծառայել Հագարացւոց. Կոստանդնի գալ ի Հայս. պատրաստութիւն Իսմայէլացւոց ընդ Յոյնս. և վասն Հայոց կաթուղիկոսին Ներսեսի։

Եւ եղև ի քսաներորդի Յազկերտի արքայի պարսից, ի մետասան ամի Կոստասի կայսեր՝ որ կոչեցաւ յանուն հաւր իւրոյ Կոստանդին, և յամին ժթ երրորդի Իսմայէլացւոց տէրութեանն, զաւրն Իսմայէլացւոց՝ որ էր յերկրին պարսից և Խուժաստանի, գնացին ընդ արևելս ի կողմանս

Պահլաւն կոչեցեալ երկրի, որ էր երկիր Պարթեւաց, ի վերայ Յազկերտի արքային պարսից։ Եւ փախեաւ Յազկերտ յերեսաց նոցա, և ոչ կարաց ճողոպրել. քանզի հասին զհետ նորա մերձ ի սահմանս Քուշանաց, և կոտորեցին զամենայն զաւրս նորա. և փախուցեալ անկաւ ի զաւրս Թէտալաց, որ էին ի կողմանցն եկեալ նմա յաւգնականութիւն։ Եւ իշխանն Մարաց՝ զորմէ վերագոյն ասացի, եթէ գնաց յարևելս առ արքայն իւրեանց, ապստամբեալ ի տեղի մի ամրացաւ և խնդրեաց երդումն յԻսմայէլացւոցն, և գնաց յանապատն ի ծառայութիւն Իսմայէլացւոցն։ Իսկ զաւրացն Թէտալաց կալեալ զՅազկերտ սպանին, որ կալաւ զթագաւորութիւնն՝ ամս ի. և բարձաւ տէրութիւնն Պարսից և ազգին Սասանայ, որ կալան զթագաւորութիւնն ամս չխբ։

Արդ՝ իբրև ետես արքայն Իսմայէլի զյաջողումն յաղթութեանն, և զի բարձաւ թագաւորութիւն պարսից. իբրև լցան ամք գ պայմանի խաղաղութեանն, ոչ կամեցաւ այլ առնել զխաղաղութիւն ընդ թագաւորն յունաց, այլ հրաման ետ զաւրաց իւրոց ունել գործ պատերազմի ընդ ծով և ընդ ցամաք, զի բարձցէ և զայն ևս թագաւորութիւն յերկրէ՝ յերկոտասաներորդ ամի թագաւորութեանն Կոստանդի։

Եւ ի նմին ամի ապստամբեցին Հայք, և ի բաց կացին ի թագաւորութենէն յունաց՝ և հնա-

զանդեցան ի ծառայութիւն արքային Իսմայէլի, եդին ուխտ ընդ մահու, և ընդ դժոխոց դաշինս կռեցին Թէոդորոս Ռշտունեաց տէր՝ ամենայն իշխանաւքն Հայոց ի բաց ընկեցեալ զաստուածային դաշնաւորութիւն։ Արդ՝ խաւսէր ընդ նոսա իշխանն Իսմայէլի և ասէր. «Այս լիցի ուխտ հաշտութեան իմոյ ընդ ձեզ որչափ ամաց և դուք կամիջիք, և ոչ առնում ի ձէնջ սակ զերրեամ մի. ապա յայնժամ տաջիք երդմամբ, որչափ և դուք կամիջիք. և հեծեալ կալէք յաշխարհիդ ժե հազար։ Եւ հաց յաշխարհէն տուք, և ես ի սակն արքունի անգարեմ, և զհեծեալսն յԱսորիս ոչ խնդրեմ. բայց այլուր և հրամայեմ, պատրաստ լիցին ի գործ. և ոչ արձակեմ ի բերդօրայն ամիրայս, և ոչ տաճիկ սպայ՝ ի բազմաց մինչև ցմի հեծեալ։ Թշնամի մի մտցէ ի Հայս. և եթէ գայ Հոռոմ ի վերայ ձեր՝ արձակեմ ձեզ զաւրս յաւգնականութիւն որչափ և դուք կամիջիք։ Եւ երդնում ի մեծն Աստուած՝ եթէ ոչ ստեմ»։ Եւ այնպէս քակեալ պատառեաց զնոսա ի Հոռոմոց նեռին արքանեակն, զի Թէպէտ և բազում աղաչանս և պաղատանս գրեաց առ նոսա կայսրն և կոչեաց զնոսա առ ինքն, և ոչ կամեցան լսել նմա։ Ապա ասէ. «Ես գամ ի Կարնոյ քաղաք, և եկայք դուք առ իս։ Եւ կամ՝ ես գամ առ ձեզ, և տամ ձեզ աւգնութիւն հաւրզի, և խորհիմք ի միասին՝ եթէ զի՞նչ արժան

*իցէ առնել». սակայն և այնպէս ոչ կամեցան լսել նմա։*

*Եւ ամբաստանութիւն ամենայն զաւրացն Հոռոմին և տրտունջ զՄիշտունեաց տեառնէն լի-նէին, և զՀայոց՝ առաջի Թագաւորին իւրեանց վասն հարուածոց՝ որ եղեն ի Մարդոցէսն։ Զի ասացին՝ թէ՝ «միաբանեցան ընդ Իսմայէլացիսն. զմեզ վտահացուցին. և զզաւրսն ճապաղել ետուն յասպատակ յԱտրպատական, և զնոսա ածին ի վերայ մեր յանկարծակի, և հարկանել ետուն զմեզ. և մեր ամենայն ինչ անդ անկաւ. բայց թող երթամք ի Հայս և մեր իրացն խնդիր առ-նեմք»։*

*Յայնժամ արքայ Կոստանդին հաւանեցաւ առնել զկամս զաւրացն։ Եւ առ զզաւրս իւր և գնաց ի Հայս ճ հազարաւ։ Եւ իբրև եհաս ի Դերջան՝ ընդ առաջ եղեն նմա արք Իսմայէլա-ցիք՝ և մատուցին նմա թուղթ յիշխանէն իւ-րեանց, որ էր գրեալ այսպէս, թէ՝ «Հայք իմ են, անդ մի երթաք. ապա թէ երթաս՝ ես գամ ի վերայ քոյ, և առնեմ զքեզ որ անդրէն փախ-չիլ ոչ կարես»։ Իսկ արքայ Կոստանդին ասէ. «Աշխարհն իմ, և ես երթամ. դու եթէ գաս ի վերայ իմ, Աստուած արդարութեան դատաւոր է»։ Եւ անտի գնացեալ եկն ի Կարնոյ քաղաք. յամի ժբ երրորդի թագաւորութեան իւրում, ի քսան ամի Իսմայէլացւոց տէրութեանն։*

Եւ նստաւ արքայ Կոստանդին ի Կարնոյ քաղաքի աւուրս ինչ. անդ ընդ առաջ եղեն նմա իշխանք և զաւրք չորրորդն կոչեցեալ Հայոց, և այլ ամենայն զաւրք և իշխանք՝ որ յայնմ կողմանէ գնացեալ էին յՈւշտունականէն։ Ընդ առաջ ելին նմա Սպերացիքն, իշխանքն Բագրատունեաց, և Մամաղայքն, և Դարանաղայքն, և որք յԵկեղեաց գաւառէ, և ամենայն զաւրք տեղեացն այնոցիկ, և Կարնացիք, և Տայեցիք, և Բասենացիք։ Եւ անդ ընդ առաջ եղեն նմա իշխանք Վանանդայ՝ հանդերձ զաւրուն իւրեանց, և Շիրակացիք, և Խոռխոռունին, և արք տանն Դիմաքսենից։ Անդ ընդ առաջ եղև նմա Մուշեղ Մամիկոնեան համազգեաւքն իւրովք հանդերձ, և այլովք ումամբք իշխանաւք, և զաւր ըստ Այրարատայ կողմանէ, Առաւեղեանք, և Առանեանք, և Վարաժնունիքն, և Գնթունիք, և Սպանդունիք, և այլք ընդ նոսին։ Ընդ առաջ եղև նմա կաթուղիկոսն Ներսէս եկեալ ի Տայոց. և պատմեցին ամենայն իշխանքն թագաւորին և զմիտս և զկամս ապստամբութեան Ուշտունեաց տեառն, և փութանակի երթևեկս առ նա դեսպանացն Իսմայէլի։ Յայնժամ նզովեաց թագաւորն և ամենայն զաւրք իւր զՈւշտունեաց տէրն, և լուծին զնա ի պատուոյ իշխանութենէն, և արձակեցին այլ այր փոխանակ նորա՝ և խ այր ընդ նմա։ Որ իբրև չոգան՝ հասին առ նա՝ կալան զնոսա և կապե-

ցին, և ետուն տանել ի բերդն Բաղիշոյ, և գոմանս ի կղզիս Բզնունեաց. և ինքն չոգաւ եմուտ յԱղթամար կղզի. և զաւրացն կողմանցն այնոցիկ ետ հրաման երթալ ամրանալ յիւրաքանչիւր գաւառի: Եւ էին ընդ նմա միաբան Վրացին և Աղուանն և Սիւնին, որք ըստ հրամանի նորա գնացին յիւրաքանչիւր աշխարհս և ամրացան ի նմին: Իսկ Թէոդորոս Վահեւունեաց տէրն կալաւ զբերդն Սրփայս. և Գրիգոր որդի նորա էր փեսայ Ռշտունեաց տեառնն. և Վարազ Ներսէհն Դաշտկարին ամրացան ի բացուոջն, և բռնացան ի վերայ գանձուցն. զի անդ էին ամենայն գանձքն աշխարհին, եկեղեցւոյ, և իշխանաց, և վաճառականաց:

Իսկ արքայ Կոստանդին իբրև զայն լուաւ՝ կամեցաւ առնուլ աւար զզաւրացն բազմութեան, և երթալ ձմերել ի Հայս՝ զի բարձցէ զերկիրն ի միջոյ: Եւ անդէն անկան ի վերայ երեսաց իւրեանց կաթուղիկոսն և Մուշեղ ամենայն իշխանաւքն Հայոց, և մեծաւ աղաչանաւք և արտասուալից պաղատանաւք խնդրեցին ողորմութիւն, զի մի ըստ նոցա յանցանացն խպառ բարկասցի և զերկիրն կորուսցէ: Լուաւ արքայ պաղատանաց նոցա և արձակեաց անդրէն զզաւրացն բազմութիւնն. և ինքն գնաց Այրարատ ի հազարաւ: Եւ երթեալ ի Դուին՝ նստաւ ի տան կաթուղիկոսին: Եւ արար արքայ զՄուշեղ Մամիկոնէից

տէր՝ իշխան Հայոց հեծելոյն, և արձակեաց զնա ի կողմն սեփհական գնդին գ հազարաւք. Նոյնպէս արձակեաց ի զաւրաց իւրոց ի Վիրս և յԱղուանս, և ի Սիւնիս քակտել զնոսա ի միաբանութենէ։ Այլ զաւրքն նստէին շուրջ զարքայիւ ի լեռնակողմանն և ի դաշտակողմանն, իսկ Թէպէտ առ ժամանակ մի ոչ կամեցան հնազանդիլ, սակայն յետոյ նուաճեալ ի ծառայութիւն։ Բայց յԱղուանն և ի Սիւնիքն և գունդն սեփհական ոչ հնազանդեցան, զորոց զերկիրն աւար առեալ տալեան զինչ և զտին, և դարձան անդրէն առ արքայ։

Վասն Հայոց կաթուղիկոսին Ներսիսի։

Արդ՝ ասացից փոքր մի ի շատէ վասն Հայոց կաթուղիկոսին Ներսիսի, զի էր նա բնակութեամբ ի Տայոց, ի գեղջէն՝ որում Իշխանն կոչեն։ Եւ սնեալ ի մանկութենէ յաշխարհին յունաց և ուսեալ զլեզուս և զդպրութիւն Հոռոմին, և շրջեալ ընդ աշխարհս զաւրու կարգաւք զինուորութեան. և հաստատեալ զմիտ իւր ի վերայ ժողովոյն Քաղկեդոնի, և ի վերայ տումարին Լեւոնի։ Եւ ոչ ումեք ի վեր հանէր զխորհուրդս ամբարշտութեանն՝ մինչև եհաս յեպիսկոպոսութիւն յաշխարհին, և անտի կոչեցաւ յաթոռ կաթուղիկոսութեան։ Եւ էր այր առաքինի վարուք պահաւք

և աղաթիւք։ Բայց ի սրտի իւրում ծածկեալ ու-
նէր զթիւնս դառնութեան, և խորհէր հաւանե-
ցուցանել զհայս Քաղկեդոնի ժողովոյն, բայց ի
վեր հանել զբանն ոչ համարձակէր։ Մինչև եկն
արքայ Կոստանդին և նստաւ ի տան կաթուղի-
կոսին. և քարոզեցաւ յեկեղեցւոջն սրբոյն Գրի-
գորի ժողովն Քաղկեդոնի յաւուր կիւրակէի։ Եւ
մատեաւ պատարագ հոռոմերէն ի Հոռոմ երի-
ցուէ, և հաղորդեցաւ թագաւորն և կաթուղիկոսն
և ամէն եպիսկոպոսունքն, որ կամաւ և որ ա-
կամայ։ Եւ այսպէս շարժեաց կաթուղիկոսն զճըշ-
մարիտ հաւատս սրբոյն Գրիգորի, զի կալեալ էր
ամենայն կաթուղիկոսացն հաստատուն հիմնա-
դրութեամբ ի սրբոյ եկեղեցւոջն ի սրբոյն Գրի-
գորէ մինչև ցայսաւր։ Եւ զոււրբ և զվճիտ և
զականակիտ աղբերացն պղտորեաց զջուրս, զոր
ի վաղնջուց իսկ ունէր ի միտս իւր կաթուղի-
կոսն, և ոչ իշխեաց յայտնել մինչև ցայն աւր։
Եւ ապա գտեալ ժամանակ, կատարեաց զկամս
իւր, մատնէր զմի մի յեպիսկոպոսացն, և բեկա-
նէր անհիւ։ Մինչ զի առ մահուն երկիւղիւ ամե-
նեքեան զհրամանան հաղորդութեանն կատարէին.
մանաւանդ զի մեռեալ էին երանելիքն՝ որք էին
հիմնաւորագոյնք. բայց յումեմնէ եպիսկոպոսէ
ըմբերանեալ առաջի թագաւորին՝ պապանձէր։
Քանզի յառաջագոյն ձեռն արկեալ էր նորա և
ամենայն եպիսկոպոսացն, նզովէր զժողովն Քաղ-

կեղոնի և զաւմայն Լևոնի, և մերժէր ի հաղոր-դութենէ Հոռոմին. և կնքեալ զնա մատանեաւ կաթուղիկոսին և ամենայն եպիսկոպոսացն և մե-ծամեծ իշխանացն մատանեաւքն. և ետուն առ նա զի պահեսցէ յեկեղեցւոջն։ Իսկ յորժամ մա-տեաւ պատարագն, և հաղորդեցան ամենայն ե-պիսկոպոսունքն. եպիսկոպոսն այն՝ զորմէ վերա-գոյն ասացի, ոչ հաղորդեցաւ, այլ չոգաւ էջ ի բէմբէն, և ծածկեցաւ յամբոխին։

Եւ իբրև կատարեցին զգործ հաղորդութեանն և եմուտ թագաւորն ի սենեակն, մատեաւ կա-թուղիկոսն և Հոռոմ երիցունքն և արարին զամ-բաստանութիւն զեպիսկոպոսէն զայնմանէ՝ եթէ՝ «ոչ նստաւ յաթոռ, և ոչ հաղորդեցաւ ընդ մեզ, անարժան համարեցաւ զմեզ և զձեզ, չոգաւ էջ ի բեմբէն, և ծածկեցաւ յամբոխին»։ Եւ խռովեցաւ թագաւորն և հրաման ետ երկու արանց՝ զի կալցեն զնա, և տարցեն յանդիման նորա ի սենեակն։ Պա-տասխանի ետ թագաւորն և ասէ. «Քահանա՞յ ես». ասէ եպիսկոպոսն. «Եթէ կամի Աստուած և ձեր փառք»։ Ասէ թագաւորն. «Եւ զի՞նչ ես դու, որ ես քո թագաւոր՝ և դա քո կաթուղիկոս և հայր մեր. և դու ոչ արժանի համարիս զիս ընդ քեզ հաղորդութեանն, և ոչ զդա»։ Ասէ եպիսկոպոսն. «Ես այր մեղաւոր եմ և անարժան, չեմ արժանի ընդ ձեզ հաղորդութեան, բայց թէ Աստուած արժանի առնէր ընդ ձեզ, համարէի թէ ընդ

Քրիստոսի ի սեղանոյ և ի նորին ձեռացն վայելեցայց»։ Ասէ Թագաւորն. «Թո՛ղ զայդ և զայս ասա ինձ՝ եթէ դա Հայոց կաթուղիկո՞ս է՝ թէ ոչ»։ Ասէ եպիսկոպոսն. «Այնպէս որպէս զսուրբն Գրիգոր»։ Ասէ Թագաւորն. «Ունի՞ս զդա առ կաթուղիկոս»։ Ասէ «Այո՛»։ Ասէ Թագաւորն. «Հաղորդի՞ս ընդ դմա»։ Ասէ. «Այնպէս որպէս ընդ սրբոյն Գրիգորի»։ Ասէ Թագաւորն. «Իսկ այսաւր վասն է՞ր չհաղորդեցար»։ Ասէ. «Բարեբար Թագաւոր, մեք զձեզ մինչ ի յորմն նկարեալ տեսանէաք, դողումն ունէր զմեզ. Թող թէ ահաւասիկ դէմ յանդիման տեսանեմք, և բերան ի բերան խաւսիմք. մեք մարդիկ եմք տգէտ և տըխմար, ոչ լեզու գիտեմք և ոչ դպրութիւն. բայց եթէ նախ ուսանիմք՝ և ի վերայ հասանիմք. այլ զբարերար հրամանդ բուժելով իշխէ։ Այս աշխարհ ամենայն կարգաց հրամանք, յայս տեղւոյս և ի դմանէ ի դուրս ելանէ. յառաջ քան զայս չորս ամաւք՝ ժողով արար դա, և զամենայն եպիսկոպոսունս այսր ժողովեաց, և վասն հաւատոյ գիր ետ առնել, և կնքեաց նախ իւրով մատանեաւն, և ապա մեր, և ապա ամենայն իշխանացն մատենեաւք։ Եւ գիրն այն այժմ առ դմա է. հրամայեցէք խնդրել և տեսանել»։ Եւ նա կայր պապանձեալ։ Եւ գիտացեալ Թագաւորն զնենգութիւն նորա, յանդիմանեաց զնա բանիւք բազմաւք ի լեզու իւր։ Եւ հրաման ետ Թագա-

ւորն երթալ հաղորդել ընդ կաթուղիկոսին։ Եւ իբրև կատարեաց եպիսկոպոսն զհրամանս թագաւորին՝ ասէ. «Աւրհնեսցէ Աստուած զբարերար և զաստուածասէր թագաւորութիւնդ յաւիտեան, տիրելով ի վերայ ամենայն ծովու և ցամաքի հաւդերձ յաղթութեամբ բազմաւ»։ Աւրհնեաց և թագաւորն զեպիսկոպոսն՝ և ասէ. «Աւրհնեսցէ Աստուած զքեզ, այնպէս արարեր որպէս վայելէ քո իմաստութեանդ, և ես շնորհակալ եմ»։

Եւ սաստիկ ստիպով փութացուցանէին զարքայ ի Կոստանդնուպաւլիս վաղ հասանել անդր. և գնաց փութանակի։ Եւ արար իշխան Հայոց զՄորիանոս ոմն հանդերձ Հայ զաւրուն՝ որ ի նոցուն կողմանէ։

Իբրև գնաց արքայ Կոստանդին ի Դըւնայ՝ գնաց և կաթուղիկոսն ընդ նմա։ Եւ երթեալ դադարեաց ի Տայս, և այլ ոչ դարձաւ ի տեղի իւր. զի իշխանն Ռշտունեաց և այլ իշխանքն որ ընդ նմա, անհնարինն ցասմամբ փքացեալ էին ի վերայ նորա։ Իսկ Թէոդորոս Ռշտունեաց տէր դարանակալ եղև յԱղթամար կղզի՝ ինքն և փեսայ իւր Համազասպ Մամիկոնէից տէր. և խնդրեաց յիւր զաւրս ի յԻսմայէլացւոցն, և եկն է հազար այլ յաւգնականութիւն նմա, և նստոյց զնոսա յԱղիովիտ և ի Բզնունիս, և ինքն առ նոսա ելեալ, կայր ի մէջ նոցա։

Եւ իբրև անցին աւուրք ձմերայնւոյն մերձ ի գարունն մեծ, փախեաւ Հոռոմ և անկաւ ի Տայս՝ և հանին անտի. և ոչ ուրեք կարաց գետեղել, այլ գնացին փախստական մինչև մերձ ի ծովեզերն և աւերեցին զամենայն երկիրն. առին և զՏրապիզոն քաղաք, և խաղացուցին առ և աւար և գերութիւն բազում յոյժ։

Յետ այսորիկ գնաց Թէոդորոս Ռշտունեաց տէրն առ Մաւիաս իշխանն Իսմայէլի ի Դամասկոս՝ և ետես զնա մեծամեծ ընծայիւք։ Եւ ետ նմա իշխանն Իսմայէլի հանդերձս ոսկեղէնս և ոսկեթելս, և վառ մի նորին աւրինակաւն։ Եւ իշխանութիւն ետ նմա զՀայս և զՎիրս և զԱղուանս և զՍիւնիս, մինչև ցԿապկոհ և ցՊարհակն Ճորայ, և արձակեաց զնա պատուով։ Եւ նորա պայման էր եդեալ նմա՝ ածել զերկիրն զայն ի ծառայութիւն։ Եւ եղև յամին մետասաներորդի Կոստանդի, լուծումն լինի հաշտութեանն՝ որ ընդ Կոստանդին և ընդ Մաւիաս իշխանն Իսմաէլի։ Եւ հրաման ետ արքայն Իսմայէլի ժողովել զամենայն զաւրս իւր ի կողմանս արևմտից, և ունել զգործ պատերազմի ընդ Հոռոմոց թագաւորութեանն՝ զի առցեն զԿոստանդնուպաւլիս, և ի բաց բարձցեն զայն ևս թագաւորութիւնն։

---

## ԳԼՈՒԽ ԼԶ.

*Թուղթ արքային Իսմայէլի առ Թագաւորն Յունաց Կոստանդին. գալ Մաւիաս իշխանին Իսմայէլացւոց ի Քաղկեդոն, և յաղթիլ տերամբ։*

«Եթէ կամիս՝ ասէ, խաղաղութեամբ ունել զկեանս քո, ի բաց կաց յունդունայն պաշտամանէդ յայդմանէ՝ զոր ուսեալդ ես ի մանկութենէ։ Ուրացի՛ր զՅիսուսն զայն և դարձի՛ր առ աստուածն մեծ՝ զոր եսն պաշտեմ՝ զԱստուած հաւր մերում Աբրահամու։

«Եւ զբազմութիւն զաւրաց քոց արձակեա՛ ի քէն յիւրաքանչիւր տեղիս և ես արարից զքեզ իշխան մեծ ի կողմանսդ յայդոսիկ, և արձակեմ ի քաղաքդ ոստիկանս, և քննեմ զամենայն գանձըս՝ և հրամայեմ բաժանել ի չորս մասունս։ Երեքն՝ ինձ և մի՝ քեզ. և տամ քեզ զաւրս որչափ և կամիցիս, և առնում ի քէն սակ՝ որչափ և դու կարես տալ։ Ապա թէ ոչ, Յիսուսն այն՝ զոր դու Քրիստոս կոչես, մինչ զանձն ոչ կարաց ապրեցուցանել ի Հրէից, զքեզ զիա՞րդ կարէ ապրեցուցանել ի ձեռաց իմոց»։ Եւ ժողովեցան ամենայն զաւրքն՝ որ ի կողմանս արևելից ի

Պարսից և ի Խուժաստանէ՝ և ի կողմանէն Հընդկաց և յԱրուաստանէ և յԵգիպտացւոց կողմանէ առ Մաւիաս իշխան զաւրուն՝ որ նստէր ի Դամասկոս։ Եւ կազմեցին նաւս պատերազմականս յԱղէքսանդրիա և յամենայն քաղաքս ծովեզերեայս. և լցին զինուք և մեքենայիւք զնաւս. զճ նաւս մեծամեծս, առ մի նաւն հազար այր յընտիր ընտիր հեծելոց։ Եւ հրամայեաց գործել նաւս թեթևս հինգ հազարս։ Եւ գումարեաց ի նոսա արս սակաւ վասն թեթևութեան՝ առ մի նաւ արս հարիւր, զի արագապէս ճախրեսցեն սլանալով առ մեծամեծ նաւաւք շուրջանակի ի վերայ մկանանց ծովուն. և արձակեաց զնոսա ընդ ծով։ Եւ ինքն առ զզաւրս իւր՝ որ ընդ իւր, և գնաց ի Քաղկեդոն։ Իբրև եհաս ի վերայ ամենայն երկրի՝ հնազանդեցան ամենայն աշխարհին բնակիչք ի ծառայութիւն՝ որ զծովեզերբն և լեռնականս և դաշտականս։ Իսկ բազմութիւն զաւրաց Հոռոմին չոգան մտին ի Կոստանդնուպաւլիս պահապան քաղաքին. և ապականիչն չոգաւ եմուտ ի Քաղկեդոն, յամի երեքտասաներորդի Կոստանդնու. կազմեալ ունէր յեզր ծովուն նաւս բազումս թեթևս, զի յորժամ ծանրագոյն նաւքն հասանիցեն ի Քաղկեդոն՝ նա փութանակի հասցէ յաւգնականութիւն նոցա։ Եւ զթուղթ արքային իւրեանց ետուն տանել ի քաղաքն առ Կոստանդին։

Եւ առ արքայ զԹուղթ և եմուտ ի տունն Աստուծոյ, և անկաւ ի վերայ երեսաց իւրոց՝ և ասէ. «Տէս Տէր զնախատինս՝ զոր նախատեցին զքեզ Հագարացիքս այս. եղիցի՛ ողորմութիւն քոյ Տէր ի վերայ մեր, որպէս յուսամք ի քեզ։ Լի՛ց զերեսս նոցա անարգանաւք և խնդրեսցեն զանուն քո Տէր. ամաչեսցեալ խռովեսցին յաւիտեանս յաւիտենից, և ամաւթալից կորիցեն. ծանիցեն զի անուն քոյ Տէր է, և դու միայն բարձրեալ ես ի վերայ ամենայն երկրի»։ Եւ վերացոյց զպսակն ի գլխոյ իւրմէ, և մերկացաւ զծիրանիսն և զգեցաւ քուրձ, և նստաւ ի վերայ մոխրոյ, և հրամայեաց պահս քարոզել ըստ աւրինակին Նինուէի՝ ի Կոստանդնուպաւլիս։

Եւ ահա եկին հասին ի Քաղկեդոն նաւք մեծամեծք յԱղէքսանդրացւոց կողմանէ հանդերձ ամենայն փոքր նաւովքն և ամենայն կազմուածովքն իւրեանց, զի էր կազմեալ ի վերայ նաւացն մանգղիոնս, և մեքենայս հրացանս, և մեքենայս քարընկէցս, աղեղնաւորս և պարսաւորս. զի յորժամ հասանիցեն ի պարիսպ քաղաքին ի վերուստ ի գլխոյ աշտարակացն, դիւրեաւ ելեալ ի պարիսպն՝ անկցին ի քաղաքն։ Եւ հրամայեաց զնաւսն կարգել ճակատ առ ճակատս, և դիմել ի վերայ քաղաքին։ Եւ իբրև մեկնեցան ի ցամաքէն իբր երկու ասպարիզաւք, անդ էր տեսանել զզաւրութիւն ահին Տեառն զի ակնարկեաց Տէր

յերկնից սաստիկ հողմոյ բռնութեամբ, և յարեաւ հողմն, մրրիկ մեծ, և դղրդեցաւ ծովն ի ներքուստ անդընդոց ի վեր և բարձրացեալ դիզանային ալիքն նորա իբրև զկատարս բարձրաբերձ լերանց, և հողմն փոթորկեալ ի վերայ նոցա ճայթէր իբրև զամպ և գոչէր։ Եւ խոխոջիւն յանդընդոց լինէին. և անկան աշտարակքն, կործանեցան մեքենայքն, քակտեցան նաւքն, և ընկղմեցան բազմութիւն զաւրացն ի խորս ծովուն, և մնացեալքն ի վերայ տախտակացն ցնդեցան ի վերայ ալեաց ծովուն, և տարաբերեալ այսր և անդր յելևէջս ալեացն՝ կործանեցան. զի եբաց ծովն զբերան իւր, և եկուլ զնոսա. և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի։ Եւ ապրեցոյց Աստուած յաւուր յայնմիկ բարձրացեալ բազկաւ զքաղաքն ի ձեռն ազաւթից աստուածասէր Թագաւորին Կոստանդիանոսի և ոչ դադարեաց հողմոյն բռնութիւնն և ծովուն խռովութիւնն մինչև ցվեց աւուրս։

Եւ եղև իբրև տեսին Իսմայէլացիքն զձեռն աջի Տեառն՝ բեկաւ սիրտ նոցա. և ելեալ ի գիշերի ի Քաղկեդոնէ՝ գնացին ի տեղի իւրեանց։ Եւ միւս զաւրն՝ որ նստէր ի կողմանս Կապուտկացւոց, արար պատերազմ ընդ զաւրացն յունաց. զոր եհար յոյնն, և գնաց փախստական ի կողմանս Արուաստանի, հարեալ աւար զչորրորդ Հայս։ Եւ եղև յետ անցանելոյ աշնանային ժամանակին՝ ի մերձենալ ձմերայնոյ՝ եկն զաւրն

Իսմայէլի և Նսռաւ ի Դուին. և խորհէր երթալ հարկանել զՎիրս սրով սուսերի: Ծաւալէր ընդ նմա ի ձեռն պատգամի սպառնալեաւք, զի կամ եկեսցեն ի ծառայութիւն նոցա, և կամ ի բաց թողցեն զերկիրն և գնասցեն: Իսկ նոքա չառին յանձն առնել այնպէս, այլ պատրաստեցան ընդդէմ նոցա ի պատերազմ: Եւ գնաց Իսմայէլացին ի վերայ նոցա պատերազմաւ՝ երթալ սատակել զնոսա իսպառ:

Այն ինչ եղև նոցա ի ճանապարհ ելանել, անկաւ ի վերայ նոցա ցուրտ և ձիւն ձմերայնոյ. վասն որոյ չոգան փութանակի և գնացին ի կողմանս Ասորեստանի, և ի Հայս անիրաւութիւն ինչ ոչ գործեցին:

Իսկ իշխանքն Հայոց որ ի Յունաց և որ ի Տաճկաց կողմանէ, Համազասպ և Մուշեղ, և այլն ամենայն եկեալ ի մի վայր միաբանեցան, և արարին ընդ միմեանս հաշտութիւն, զի մի՛ եղիցի ի մէջ նոցա սուր և արիւնհեղութիւն, և անցուցին խաղաղութեամբ զաւուրս ձմերայնոյն: զի և զշինականսն ապրեցուցանեն: Քանզի Ռըշտունեաց տէրն անկաւ յախտս հիւանդութեան, և չոգաւ անկաւ յԱղթամար կղզի: Եւ ոչ գոյր նմա լինել կարողութիւն ելանել արտաքս կամ խորհել ինչ. և բաժանեցին զերկիրն ըստ թուոյ իւրաքանչիւր հեծելոց, և կարգեցին հարկապահանջս ոսկւոյ և արծաթոյ:

Եւ աստ էր տեսանել զաղէտս տարակուսի, զաւրէն հիւանդաց՝ յորժամ տագնապեսցի ցաւն, և հատանիցի ի խաւսից. այնպիսի ինչ եղեն. զի ոչ գոյր մարդկան տեղի փախստի և թագստեան, և ոչ խնայել ի ներքուստ, այլ որպէս ոք զի անկցի ի ծով՝ և ելս ոչ կարիցէ գտանել։

Իսկ իբրև զայն ետես Ուշտունեաց տէրն՝ խնդրեաց իւր զաւրս յԻսմայէլացւոցն, զի հարցէ զՀայն և հալածական արասցէ, և զՎիրս սատակեսցէ ի սուր սուսերի։

## ԳԼՈՒԽ ԼԵ.

Ապստամբիլ Մարաց յԻսմայէլացւոց։

Յայսմ ամի ապստամբեցան Մարք ի ծառայութենէն Իսմայէլի և սպանին զիշխանն հարկապահանջին արքային Իսմայէլի, ապաւէն և թիկունս իւրեանց արարին զամուրս աշխարհին Մարաց՝ զանտառս խորաձորս, զվիհս, զվիմուտս, և զխորաձորս դժնդակս՝ որ զգետովն Գազայ և զլերամբն Մարաց, զժիր և զքաջ ազգացն զաւրութիւնս՝ որ բնակեալ էին ի նոսա, Դելն (Գե՞լն) և Դելումն։

Քանզի ոչ կարացին համբերել զառն և դժընդակ ծառայութեանն և հարկին ծանրութեանն՝ որ ի վերայ նոցա, զի անդրէն ի նոցանէ միոյ

միոյ ամի առնուլն յկե պայուասիկ դրամ. և որ ոչն կարէր տալ, առնուլն ընդ միոյ միոյ դրամի մարդ մի, և ի բաց բարձին զհեծելութիւն և զխշխանութիւն աշխարհին: Վասն այնորիկ տուեալ նոցա զանձինս իւրեանց ի կշիռս, լաւ համարեալ զմահ քան զկեանս. զմի յերկուցն գտանել կամ մեռանիլ՝ և կամ ազատիլ ի չար ծառայութենէ: Եւ սկսան զմիացեալ մարդիկն զաւրս ժողովել, և գունդըս գունդս կազմել, և թերևս կարասցեն զերծանիլ 'ի ժանեաց վիշապին և դառնաշունչ գազանէն:

Արդ՝ իբրև ետես բազմութիւն զաւրացն Իսմայէլի՝ եթէ ոչ յաջողի նոցա գործն ի կողմանէ ամուր լերանցն Մարաց. քանզի ոչ իսկ նուաճեցան ի ծառայութիւն նոցա՝ Կեթրուս և Սկիւթեայ՝ որ են գետք Դելումք հանդերձ ամենայն ամրաբնակ բազմութեամբն: Եւ բազումք ծախեցան յամուրս և ի խորաձորս դահավէժ լինելով, և բազումք խոցոտեալ նետիւք ի խարձան դժկոտս, ի քաջ և արի պատերազմողացն, ոստուցեալ ի բաց ի կողմանցն յայնցանէ, դէմ եդին երթալ ի կողմանս հիւսիսոյ, յազգն՝ որ ըստ կասբիական դրացն: Ջոգան հասին ի կապանս Ծորայ: Եւ անցեալ ընդ ներքս ընդ Կապանն՝ աւերեցին զամենայն կողմանս աշխարհին՝ որ առ լեռնոտամբն. և ելեալ ընդդէմ նոցա զաւրս սակաւս՝ որում Հոնաց դուռն կոչեն, հարին զնոսա, զի էին կողմնապահք տեղւոյն:

Եկն այլ զաւր ի կողմանցն Թետալաց, և բաղխեցին զմիմեանս զաւրութեամբ սաստիկ, և ի պարտութիւն մատնեցաւ զաւրն Իսմայէլի առաջի զաւրացն Թետալաց։ Եւ հարին զնոսա և սատակեցին սրով սուսերի։ Եւ ապրեալքն փախըստական ոչ կարացին ճողոպրել ընդ կապանն, զի եկն այլ զաւր նոցա ի նոցա թիկանց. և նոցա դէմս ի լեառն արարեալ ի դժուարս մեծի լերինն Կաւկասու, ելին ընդ կողմանս լերինն հագիւ հազ, սակաւք ճողոպրեալք մազապուրծ, մերկ և բոկ, հետևակ և վիրաւոր, չոգան անցին ի կողմանս Տիզբոնի յերկիր բնակութեան իւրեանց։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

*Ապստամբութիւն Մուշեղի ի Յունաց և ծառայել Իսմայէլացւոց. պատերազմ Իսմայէլացւոց ընդ Յոյնս ի Նախճաւան, և կոտորելն զՅոյնս, աւերելն զՀայաստան. վերստին ի բաց կալ Հայոց ի ծառայութենէ Իսմայէլացւոց և հնազանդիլ Յունաց. լինել կիւրապաղատ Համազասպայ Մամիկոնէից տեառն. վանորոյ սպանանել Իսմայէլայ զպատանդսն. անկանիլ խռովութիւն ի մէջ բանակին Իսմայէլի և պատառումն ի միմեանց. յաղթել ամենեցուն Մաւիասայ իշխանին իւրեանց, և թագաւորեալ՝ առնել ընդ ամենեսին խաղաղութիւն։*

Իսկ Մուշեղ Մամիկոնէից տէրն ապստամբեալ ի յունաց կողմանէն՝ հնազանդեցաւ ի ծա-

ռայութիւն Իսմայէլի. և ի նմին ամի զաւրն Իսմայէլի՝ որ ի Հայաստան աշխարհի, կալան ի ծագաց ի ծագս զերկիրն ամենայն։ Եւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն, և ամենայն իշխանքն աշխարհին միաբանեալ հնազանդեցան ի ծառայութիւն, և ամենայն իրաւք փութային զկամս նոցա կատարել, զի երկիւղ անհնարին մահու կայր ի վերայ նոցա։

Յամին յայնմիկ ի ձեռն նախանձու եղբաւր իւրոյ մատնեցաւ երանելի այրն աստուածասէր Արտաւազդն Դիմաքսեան, և տուաւ ի ձեռն անօրէն դահճի Հագարին անուանեալ զաւրավարի՝ որ նստէր յԱրուճն Աշնակի։ Եւ սպան զնա սատակմամբ չարաչար մահուամբ։

Եւ էին աւուրք ցրտաշունչ ձմերայնոյն, և նեղէր զնոսա յոյնն. և նոքա ցրտոյն ոչ կարէին ելանել և տալ պատերազմ ընդ նոսա, այլ ելին յանկարծակի և գնացին անցին զգետովն, և չոգան ամրացան ի Զարեհաւանի։ Իսկ յոյնն իբրև ետես զայն՝ ոչինչ փոյթ արար վասն նոցա, այլ աւարեաց զբերդն Դըւնայ, և գնաց ի Նախճաւան, և մարտեաւ ընդ բերդին՝ զի աւարեսցէ զնա եւս։ Եւ էր զաւրավար զաւրուն յունաց Մաւրիանոս ոմն, զոր ասէին այր հաւատարիմ։

Արդ՝ ի հասանել ժամանակի գարնայնոյն՝ կազմեցաւ պատրաստեցաւ ի պատերազմ ընդ զաւրուն Իսմայէլի։ Եւ Մաւրիանոս յամառեալ՝

զիւրն խորհէր կատարել զգործ։ Եւ արշաւեաց Տաճիկն ի վերայ յունին՝ որ մարտ եդեալ կռուէլին ընդ բերդին Նախճաւանի, եհար զնոսա և սատակեաց ի սուր սուսերի, և զմնացեալսն փախըստական արարեալ։ Եւ գնաց Մաւրիանոս փախըստական, և չոգաւ անկաւ ի Վիրս։ Իսկ զաւրն Իսմայէլի դարձաւ ի նոցանէ՝ և պաշարեաց զԿարնոյ քաղաք, և մարտ եդեալ կռուեցան ընդ նոսա. իսկ նոքա ոչ կարացին զդէմ ունել նոցա պատերազմաւ, բացին զդուրս քաղաքին, և հնազանդեցան ի ծառայութիւն։ Եւ նոցա մտեալ ի քաղաքն ժողովեցին ոսկի և արծաթ և զամենայն բազմութիւն ընչից քաղաքին. և կողոպտեաց զամենայն երկիրն Հայոց, և զԱղուանս, և զՍիւնիս և զամենայն եկեղեցիս մերկացոյց։ Եւ կալաւ պատանդ զգլխաւոր իշխանս աշխարհին և զկանայս և զուստերս և զդստերս բազմաց։

Եւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն համազգեաւքն իւրովք գնաց ընդ նոսա. և տարեալ իջուցին զնոսա յԱսորեստան։ Անդ մեռաւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն, և մարմին նորա բերաւ ի գաւառ իւր, և թաղեցաւ ի գերեզմանի հարց իւրոց։

Եւ ունէր զիշխանութիւն Հայոց աշխարհիս՝ Համազասպ Մամիկոնէից տէրն, որդի Դաւթի, այր առաքինի յամենայն դէմս։ Բայց ընդանեսուն և ընթերցասէր և ուսումնասէր, և ոչ ըստ

հայրենի ազգին վարժ և կիրթ հրահանգաւք գինուորական վարժից, ոչ մտեալ ի ճակատ, և ոչ տեսեալ զդէմս թշնամեաց։ Եւ արդ՝ սկսաւ նախանձել ի բնութիւն հայրենի տանն քաջութեանն, ջերմեռանդ փութով կատարել և զգործ քաջութեան ըստ նախնեացն վարժից, լիապէս կատարել ի վերուստ խնդրելով զառաջնորդութիւն և զյաջողութիւն անձին քաջութեանն կատարել։

Իսկ կաթուղիկոսն Հայոց Ներսէս գնաց ընդ թագաւորին, որպէս վերագոյն ասացի, և չուեաց ընդ նմա ի Կոստանդնուպաւլիս։ Եւ ընկալաւ զնա անդ պատուով. և ետուն նմա ինչս և արձակեցին անդրէն ի տեղի իւր, և եկն դադարեաց ի Տայս՝ մինչև մեռաւ Օշտունեաց տէրն, դադարեաց ասպատակ Տաճկին. և ապա յետ վեցերորդի ամի հալածանացն դարձաւ անդրէն ի տեղիս իւր. և հաստատեցաւ յաթոռ կաթուղիկոսութեան. փութայր կատարել զշինուած եկեղեցւոյն՝ զոր շինեաց ի վերայ պողոտային Վաղարշապատ քաղաքի։

Արդ՝ թէպէտ և վայրապար զրուցեալ տողեցից զբանս ի կարգի պատմութեանս ըստ անհանճար խորհրդոյ մտացս իմոց, և ոչ ըստ արժանաւոր շնորհի դիտութեան. այլ սակայն անդր հայեցեալ ի կարգս ուսումնասիրացն, և հաստատեցից մարգարէական բարբառոյն՝ որ ըստ հրա

մանի Տեառն խաւսեցեալ։ Զի թէ և յառաջինն կանխաւ կատարեալ, այլ սակայն և ի վերջինսս մինչև յաւիտեան կատարեսցի՝ ըստ բանին Տեառն որ ասէ, «Երկինք և երկիր անցցեն՝ և բանք իմ մի՛ անցցեն»։ «Զի հուր բորբոքեսցի՝ ասէ, ի բարկութենէ իմմէ՝ այրեսցէ և իջցէ մինչ ի դըժոխս ներքինս»։ Եւ զի զնոցանէն ասէ յայտ է, զի ասէ, եթէ՝ «Վառեսցին հրով, բորբոքեսցին հիմունք լերանց նոցա». այսինքն զմեծամեծ իշխանացն զըռնութիւնսն։ Եւ թէ՝ «կուտեղից չարիս ամենայն ի վերայ նոցա, և նետիւք իմովք սպառեցից զնոսա»։ Զի որպէս նետք թռուցեալք ի գրկաց առն կորովոյ ի լայնալիճ աղեղանէ ի նպատակ, այսպէս և սոքա ի Սին անապատէ որ ի վերայ ամենայն երկրի կատարեալ սովով և սրով և ահիւ մեծաւ։ Եւ զի ի կողմանս անապատին բորբոքեցաւ հուր, այսպէս յայտնապէս ցուցանէ այնու՝ զի ասէ. «Լարս առանց բժշկութեան արձակեսցես ի վերայ նոցա, զգազանս անապատի՝ որք այսր և անդր քարշեսցեն զնոսա ընդ երկիր»։ Զորմէ կոչէ մարգարէն Դանիէլ՝ եթէ՝ «Գազանն չորրորդ ահեղ և զարմանալի, և հզաւր յոյժ. ժանիք նորա երկաթիք, և մագիլք նորա պղնձիք. ուտէր և մանրէր, և զմնացեալսն առ ոտն կոտորէր»։ Եւ այլն ևս ապա ևս բանիցն ասէ. Մերձ է աւր կորստեան նոցա, հասեալ է պատրաստութեամբ տէր ի վերայ նոցա»։

*Որ և այս ևս կատարեսցի ի ժամանակի իւրում:*

*Ի նմին ամի ի բաց կացին Հայք ի ծառայութենէ Իսմայէլացւոցն, և հնազանդեցան անդրէն ի ծառայութիւն Թագաւորին յունաց։ Եւ արար արքայ Կոստանդին զՄամիկոնէից տէր զՀամազասպ՝ կիւրապաղատ, և ետ նմա գահոյս արծաթիս, և զիշխանութիւնն աշխարհին Հայոց, և պատիւս այլոց իշխանացն, և գանձս զաւրացն։*

*Յայնժամ ետես արքայն Իսմայէլի՝ եթէ ի բաց կացին Հայք ի ծառայութենէ նոցա, զամենայն զպատանդսն՝ զոր տարեալ էին յերկրէն ոգիս իբրև ուչհե, սատակեցին զամենեսեան ի սուր սուսերի. և մնացորդքն սակաւք, թուով իբրև իբ, որք ոչ դիպեցան ի տեղւոյն, այն միայն ապրեցան։*

*Իսկ Մուշեղ Մամիկոնէից տէր. վասն զի էին նորա չորս որդիք ի պատանդի առ Իսմայէլացւոցն, վասն այնորիկ ոչ կարաց ի բաց կալ ի ծառայութենէ նոցա։ Երեք (որդիք) Համազասպայ, (և) եղբայր մի ի պատանդի։ Բայց զայն՝ և այլ ևս յիշխանացն հանդերձ կանամբք իւրեանց, խնդրէին առ ինքեանս յԱսորիս։ Վասն այնորիկ լաւ համարեալ զմահ քան զկեանս, ի բաց կացին ի ծառայութենէ նոցա, և հապճեպ երթեւեկով հնազանդեցան ի ծառայութիւն Թագաւորին յունաց՝ հանդերձ միաբանութեամբ իշխանացն և*

զաւրացն Աղուանից, և իշխանացն աշխարհին Սիւնեաց հանդերձ աշխարհաւն իւրեանց. որք լծեալ էին յառաջագոյն յաշխարհագիրն Ատրպատականի, մինչև բարձաւ թագաւորութիւնն Պարսից, և տիրեաց Իսմայէլացին, նոքա անդրէն նուաճեալ միաբանեցան ընդ Հայոց։ Եւ ձերբակալ արարեալ զՄուշեղ, և զայլ ևս յիշխանացն՝ որ էին ընդ նմա։

Արդ՝ զայլ իշխանսն՝ զորս ձերբակալ արարեալ էին, հրամայեաց թագաւորն թողուլ ի բաց, բայց զՄուշեղ առ ինքն խնդրեաց։

Արդ՝ առաքեաց Աստուած խռովութիւն ի մէջ բանակացն որդւոյն Իսմայէլի, և պատառեցաւ միաբանութիւն նոցա, և խառնեցան ընդ միմեանս, և բաժանեցան ի չորս մասունս։ Մասն մի այն՝ որ ի Հնդկաց կողմանէն։ Եւ մասն մի այն՝ որ ունէին զԱսորեստանն և զկողմանս հիւսիսոյ։ Եւ մասն մի այն՝ որ յԵգիպտոս՝ և ի կողմանս Թետալացւոց։ Եւ մասն մի ի կողմանս Տաճկաց և յԱսկարաւն կոչեցեալ տեղւոջ։ Եւ սկսան կռուել ընդ իրեարս, և անհուն կոտորածով զմիմեանս սատակէին։ Արդ՝ միաբանեալ այն՝ որ յԵգիպտոս և որ ի կողմանս Տաճկաց, սպանին զթագաւորն իւրեանց, և աւար հարին զբազմութիւն գանձուցն. և այլ թագաւոր նըստուցին։ Եւ ինքեանք գնացին յիւրաքանչիւր տեղիս։

Իսկ այն իշխանն որ ի կողմանս Ասորեստանի էր՝ Մաւիաս անուն իշխան նոցա՝ որ էր երկրորդ Թագաւորին իւրեանց, իբրև ետես զեղեալսն՝ միաբանեալ զզաւրս իւր, գնաց և նա յանապատն՝ և սպան զայն ևս արքայ՝ զոր նոքայն նստուցեալ էին, և ետ մարտ ընդ զաւրացն՝ որ ի Տաճկաց կողմանէ, և եհար զնոսա կոտորմամբ մեծաւ։ Եւ դարձաւ անդրէն յաղթութեամբ յԱսորեստան։ Իսկ այն զաւրն՝ որ յԵգիպտոս, միաբանեալ ընդ Թագաւորին յունաց, և արար հաշտութիւն, և միաւորեցաւ։ Եւ բազմութիւն զաւրաց իբրև հնգետասան հազարաց հաւատացին ի Քրիստոս և մկրտեցան։ Եւ սաստկացաւ արիւն կոտորածին անհուն բազմութեանց ի մէջ բանակացն Իսմայէլի. և գործ պատերազմին տագնապէր զնոսա զմիմեանս սատակելով։ Եւ ոչ կարէին դադարել փոքր մի ի սրոյն և ի գերութենէն և ի սաստիկ պատերազմացն՝ որ ի ծովու և ի ցամաքի, մինչև զաւրացաւ Մաւիաս և յաղթեաց ամենեցուն։ Եւ հնազանդեցուցեալ ընդ ինքեամբ, և Թագաւորէ ի վերայ կալուածոց որդւոցն Իսմայէլի, և առնէ խաղաղութիւն ընդ ամենեսին (ամէն)։

# ՅԱՒԵԼՈՒԱԾՔ

## ՀԱՏՈՒԱԾՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՍԵԲԷՈՍԻ ԱՌ ԱՅԼ ՄԱՏԵՆԱԳԻՐՍ.

ա. Պատմութիւն Թովմայի Արծրունւոյ, Կ. Պօլիս, 1852, եր. 93—109.

*Եթէ որպէս եղև բարձումն չար թագաւորութեանն պարսից տանն Սասանական։*

*Յամի ութերորդի Մուրկայ յունաց թագաւորի, թագաւորն պարսից Որմզդ որ ի տանէ Սասանայ սպանաւ յիւրոց հաւատարմաց, և որդի նորա Խոսրով մանկագոյն տիովք մնացեալ, առնու զթագաւորութիւնն։ Վահրամ ոմն Մեհրեւանդակ, որ էր իշխան կողմանցն արևելից, այր հզօր զօրութեամբ, քաջութեամբ իւրով եհար զզօրս թետալացւոց, և բռնութեամբ կալեալ [1] զԲախլ և զամենայն երկիրն Քուշանաց, մինչև յայնկոյս գետոյն մեծի որ կոչի Վահռոտ. սա և զթագաւորութիւնն պարսից յինքն կորզեաց. և որդի Որմզդի Խոսրով գնաց փախստական առ*

---

[1] *Մեք այսպէս. իսկ ի տպագր. էր՝ եկեալ։*

*Մուրիկ թագաւորն յունաց. զոր առեալ քեռիք նորա Վնդով և Վստամ գնացին փախստական ի դուռն կայսերական։ Առաքեցին առ Մուրիկ թագաւորն արս ճոխս մեծամեծ ընծայիւք և պատարագօք. և թուղթ գրեալ ի բերանոյ Խոսրովայ զայս ինչ։*

*«Թագաւոր մեծ իշխան ծովու և ցամաքի, տուր ինձ զօր յօգնականութիւն և հաստատեա զիս ի տեղի թագաւորութեան հարց իմոց, զի թէ կարացից հալածել զթշնամին իմ և կանգնել զթագաւորութիւնն իմ. և եղէց քեզ որդի հնազանդութեան, և տաց քեզ զկողմանս Ասորոց և զամենայն Արեւաստան մինչև զՄծուին քաղաք. և ի յերկրէ հայոց զաշխարհ տանուտերական իշխանութեանն մինչև յԱյրարատ. և ընդ Դուին քաղաք և յեզր ծովուն Բզնունեաց, և ցԱռեստն աւան. և զմեծ մասն աշխարհին Վրաց մինչև ցՏփղիս քաղաք. և կալցուք ուխտ խաղաղութեան ի մէջ մեր երկոցունց, և անշուշտ լիցի այդ երդումն և պայման ի մէջ մեր և որդւոց մերոց յետ մեր թագաւորելոյ։»*

*Եւ կայսր Մուրիկ հաւանեալ նմա յղէր առ նա զՓիլիպիկոս փեսայ իւր. և տայր տանել նմա գիր ընդունելութեան, և առնոյր ի նմանէ երդումն։ Եւ տայր նմա զօր կայսերական յօգնականութիւն, և զՅովհան պատրիկ ի հայոց կող-*

մանէ, և զՆերսէս ստրատելատ յասորոց, և զՄուշեղ այր քաջամարտիկ և հզօր զօրութեամբ, և զամենայն զօրս յունաց և հայոց, վրաց և աղուանից, գունդ անթիւ բազմութեամբ եկեալ ի կողմանս Ատրպատականի ի Վառարատ գաւառի։

Գրէ և Վահրամ առ Մուշեղ և առ այլ զօրագլուխսն այսպէս։

«Ես այսպէս կարծէի թէ՝ յորժամ ես ընդ թշնամիս ձեր մարտնչիմ, դուք յայդմ կողմանէ օգնական ինձ լինիցիք, և միաբանութեամբ բարձցուք ի միջոյ զտիեզերական պատուհասն զտունդ Սասանայ։ Դուք աւադիկ ժողովեալ գայք ի վերայ իմ պատերազմաւ. այլ ես ոչ երկեայց ի ժողովելոց երիցանցդ հռոմայեցւոց որ գումարեալ գան ի վերայ իմ։ Բայց դուք Հայք տարաժամ ցուցանէք տիրասիրութիւն. ո՞չ ապաքէն տունդ Սասանիայ եբարձ զերկիր ձեր զտէրութիւնդ, և դուք դիմեալ գայք ի վերայ իմ. բայց ապա հաճոյ թուիցի ձեզ ի բաց կալ ի դոցանէ և միաբանել ընդ իս. զի թէ ես յաղթեցից երդուեալ ի մեծ աստուածն Որմազդ և յարեգակն և ի լուսին և ի հուր և ի ջուր և ի Միհր և յամենայն աստուածս՝ զի ձեզ տուեալ լիցի թագաւորութիւն հայոց. և զոր կամիջիք՝ արասջիք ձեզ թագաւոր, և յասորոց կողմանէ զԱսորեստան, և զՄծուին, և զՆուշիրական մինչև ի սահ-

մանս տաճկաց։ Եւ ես մի իշխեցից քան զԱրասխ անցանել յայդ կոյս. և զգանձդ արեաց թագաւորութեան այնչափ արձակեցից՝ մինչև շատ լիցի ասել ձեզ, և բազմութիւն զօրաց որքան և պիտոյ իցէ ձեզ մինչև ձեր թագաւորութիւնն հաստատեսցի»։ Եւ ըստ կարգի օրինաց իւրեանց երդուեալ, և աղ ծրարեալ հրովարտակին ետ տանել. և նոցա առեալ և ընթերցեալ, ոչ արարին բանիցն պատասխանի։

Գրէ դարձեալ թուղթս երկրորդս և ասէ. «Գրեցի ձեզ ի բաց կալ յայդմանէ. ուրեմն ոչ կամեցարուք լսել, ես զձեզ ապաշաւեմ, ասէ։ Քանզի վաղիւ առաւօտուն ցուցանել ձեզ փիղս վառեալս, և ի վերայ հզօր սպառազէնս ի քաջաց, որ տեղասցեն ի վերայ ձեր նետս երկաթեղէնս և շուառունս մուխս պաղպատիկք սլաքովք, և հաստաձիգք աղեղանց, և կռուփք բազմադիմիք, որչափ Խոսրովայ և ձեզ պիտոյ իցէ»։

Գրէ պատասխանի Մուշեղ նմա այսպէս։ «Զբանս քո լուեալ ասեմ, եթէ յԱստուծոյ է թագաւորութիւն և ում կամի տացէ. բայց դու պարտիս յանձն քո ապաշաւել քան թէ ի մեզ. զի տեսանեմ զքեզ այր պոռոտաբան, զի յանձն քո խրախուսես և ոչ յԱստուած, ի բազմութիւն զօրաց և ի փղաց զօրութիւն. այլ ես ասեմ քեզ, եթէ Տէր կամեսցի՝ վաղիւ պատելոց է զքեզ պատերազմ քաջաց. և ճեթեսցեն ի վերայ քո

իբրև զամպս երկնից. և բռնալիր նիզակօք անցանիցեն ընդ մէջ բազմութեան քո իբրև զփայլատակունս հրոյ շանթից։ Քանզի թէ Աստուած կամեսցի տանելոց է սաստկութիւն հողմոյ զզօրութիւն քոյ իբրև զփոշի»։ Էին [1] անդ, և Վնդայ, և Վստամ, և զօրք պարսիկք իբրև ութ հազար հեծեալ, թող զզօրս յունաց և հայոց։ Եւ ի վաղիւ անդր մինչդեռ արևն ընդ ծայրս հարկանէր, կարգեցաւ պատերազմ սաստիկ, ճակատ առ ճակատ ուժգին խումբ և անհնարին խառնուրդ, և մարտուցեալ ընդ միմեանս յայգուէ մինչև ընդ երեկս քաջապէս. և յոգնեցան երկոքեան կողմանքն ի մեծ պատերազմին. և այնչափ սաստիկ լինէր կոտորածն, մինչ զի սաստկութիւն վտակաց արեանն խաղացեալ ողողանէր զերկիրն ամենայն։ Եւ ոչ կարողացեալ ունել զդէմ զօրն Վահրամայ, փախստական լինէր առաջի զօրացն յունաց. և նոցա հետամուտ եղեալ մինչև ի մութ երեկոյին, լցին դիակամբք զերկիրն. և զբազումս ձերբակալ արարեալ ածին առ Խոսրով. և զօրացաւ յաւուր յայնմիկ յաղթութիւն Խոսրովայ։ Եւ Վահրամ գնաց փախստական և անկաւ ի Բախղ

[1] Մեք այսպէս ուղղեցաք. իսկ ի տպագր. էր՝ Եւ Նանդ և Վնդոյ, և այլն։ Նոյն սխալ գտանի և ի գաղղ. թարգմանութեան պատմութեանս (M. Brosset, Collection, I, 77), Nang, Vndo և այլն։

Շախստան. որ և յետոյ իսկ սպանեաւ ի հրամանէ Խոսրովայ. և հաստատեցաւ Խոսրով յաթոռ թագաւորութեան, և զխոստացեալսն կայսեր կատարեաց: Ետ նմա զԱրեւաստան զամենայն մինչև ցՄծուրն, և զերկիրն հայոց մինչև ցգետն Հուրաստան, և զգաւառն Կոտայից մինչև յաւանն Գառնի յեզր ծովուն Բզնունեաց, և մինչև յԱռեստն աւան. և զԿոգովիտ գաւառ մինչև զՀացիւն և ցՄակու: Եւ էր սէր դաշնաւորութեան մեծն ի մէջ երկոցունց թագաւորացն պարսից և յունաց:

Եւ եղև յամի չորեքտասաներորդի Խոսրովայ արքայի, ի քսաներորդ ամի Մուրկայ թագաւորութեանն, ապստամբեցան ի կայսերէ զօրքն յունաց, որք ի Թրակացւոց կողմանէն, և նստուցին իւրեանց թագաւոր այր զոմն անուն Փոկաս կոչեցեալ. և գնացեալ միաբանութեամբ ի Կոստանդնուպօլիս սպանին զՄուրիկ թագաւոր, և նստուցին զՓոկաս յաթոռ թագաւորութեան:

Իբրև լուաւ Խոսրով արքայ զլուր համբաւոյն այնորիկ, շարժեցաւ ի բարկութիւն մեծ, լինել վրէժխնդիր արեանն Մուրկայ: Եւ ժողովեալ զբազմութիւն զօրաց իւրոց, առնէր փասս մեծամեծս և սաստիկս ի բաժնին յունաց: Իբրև լցան ամք ութ Փոկայ՝ սպանաւ և նա ի Հայրակղէ, որ դաւեալ նմա էառ զթագաւորութիւն նորա: Եւ առաքեաց հրեշտակս մեծապէս գան-

ձիւք և հրովարտակօք առ արքայ Խոսրով, խնդ-
րել ի նմանէ զխաղաղութիւն մեծաւ թախանձա-
նօք, ասէ. «զվրէժ արեանն Մուրկայ առի ի
թշնամոյ նորա. արդ կամ եղիցի քեզ առնել ընդ
իս զխաղաղութիւն, և արգելուլ զսուր քո յերկրէ
իմմէ»: Որում ոչ կամեցեալ լսել Խոսրովայ,
ասէ. «իմ է թագաւորութիւնն այն, և ես զոր-
դին Մուրկայ նստուցի թագաւոր, և նա երթեալ
առանց մեր հրամանի թագաւորեաց. և զմեր
գանձս մեզ ընծայ մատուցանէ, ոչ գիտելով եթէ
համարս խնդրեցից գանձիս այսմիկ, և ոչ դա-
դարեցից մինչև առից զնա ի բուռն իմ»: Եւ
առեալ զգանձսն հրամայեաց սպանանել զընծա-
յաբերսն, և բանիցն Հայրակղի ոչ արար պա-
տասխանի, այլ առնէր վնասս սաստիկս, ի կող-
մանս կողմանս աւարառութիւն և գերութիւն և
սուր. և զօրք պարսից որք էին ի կողմանս պա-
ղեստինացւոց, և զօրավար նոցա անուանեալ
Ռազմայուզան որ է Խոռեամ, խօսէր ընդ Երու-
սաղէմի զխաղաղութիւն. քանզի էին հնազան-
դեալք յառաջագոյն ընդ թագաւորութեամբն յու-
նաց, և սպանեալ զոստիկանն պարսից որ էր ի
վերայ նոցա, և ինքեանք պատրաստեալ ի պա-
տերազմ ընդդէմ պարսից: Յայնժամ ժողովեալ
Խոռեմ Եռազմայուզան զզօրս իւր բնակեցաւ
շուրջ Երուսաղէմաւ, և պաշարեաց զնա. և պա-
տերազմեցաւ ընդ Երուսաղէմի աւուրս ինն և

տասն, և փորեալ ի ներքոյ զհիմունսն աւերեցին զպարիսպն։ Եւ եղև յաւուրն ինն և տասներորդի յամսեանն մարգաց, որ օր քսան և ութ էր ամսոյն. յամի քսան և հինգերորդի թագաւորութեանն Խոսրովու, որ կոչէր Ապրուէզ, զկնի տասն աւուր անցանելոյ զատկին, առին զքաղաքն. և սուր ի գործ արարեալ զերիս աւուրս, սպառեցին զամենայն մարդ ի քաղաքին. և նըստան ի ներքս ի քաղաքին քսան և մի օր. ապա ելեալ բնակեցան արտաքոյ քաղաքին, և զքաղաքն այրեցին հրով։ Եւ հրամայեցին համար առնել անկելոց դիակացն, գտաւ թիւ սպանելոցն յիսուն և եօթն հազար մարդ. կալան և զհայրապետն Զաքարիայ, և ի խնդիր անկեալ աստուածային սուրբ Նշանին սկսան զնոսա տանջել, մինչև զբազումս ի պաշտօնէիցն կառափեալ սատակեցին. ապա ցուցին զտեղին ուր ծածկեալն էր. զոր առեալ վարեցին ի գերութեան, և ոսկի և արծաթ անբաւ խաղացուցին ի դուռն թագաւորին։ Եւ վասն մնացելոցն որք ի քաղաքին և ի սահմանս նորա, ել հրաման յարքունուստ առնել ի վերայ նոցա ողորմութիւն. շինել զքաղաքն և հաստատել զամենեսին յիւրաքանչիւր կարգ. և անդէն վաղվաղակի կատարէին զհրաման արքունի. և կարգեցին երիցապետ ոմն ի վերայ քաղաքին որում անուն էր Մոդեստոս։ Եւ յետ այսորիկ գումարեցոյց զօրս բազումս Խոռեմ, և ել

ի Քաղկեդոն և նստաւ յանդիման Բիւզանդայ, և խնդրէր անցանել և կործանել զքաղաքն Թագաւորանիստ։ Իբրև ետես կայսր Հայրակղէս զչարիսն ամենայն որ եկին հասին ի վերայ նորա. ակամայ կամեցեալ ցուցանել բարեկամութիւն ել ընդ առաջ նոցա, մեծարել իբրև զվաստակեալս և զհիւրս. ընկալաւ զնոսա մեծամեծ ընծայիւք, և տայր զօրավարին և իշխանացն ամենեցուն պարգևս մեծամեծս, և բաշխէր զօրացն ամենեցուն դահեկանս ի խուռկս [1], և ճաշս և ընթրիսս ուրախութեան կազմէր ամենայն զօրացն մինչև ցեօթն օր։ Ապա ելեալ ի նաւն եկն ի մէջ ծովուն խօսել ընդ զօրավարին պարսից. «զի՞նչ կամիք, ասէ, առնել, և վասն է՞ր եկիք ի տեղիս յայս. մի՞թէ զծով իբրև զցամաք համարիցի՞ք, մարտնչել ի սմա ընդ մեզ. կարող է Աստուած եթէ կամեսցի ցամաքեցուցանել զծովս առաջի ձեր. բայց զգոյշ լերուք. մի գուցէ ոչ հաճեսցի Աստուած և խնդրեսցէ ի ձէնջ զվրէժ արեան կոտորածի աշխարհի. զի ոչ թէ վասն աստուածպաշտութեան ձերոյ կամ բարեգործութեան և սրբութեան արար Աստուած զայս այսպէս, այլ վասն մերոյ ամբարշտութեան ի Տէր, մեղք մեր արարին և ոչ քաջութիւն ձեր. բայց և զի՞նչ իսկ

---

[1] Ըստ հնչման բնակչաց Վասպուրականի սովորաբար Խ ի տեղի Հ ի կիր առնու հեղինակս։

խնդրիցէ թագաւորն ձեր յինէն որ ոչ առնէ խաղաղութիւն. բառնա՛լ կամի զթագաւորութիւնս զայս, մի՛ ջանասցի, քանզի յԱստուծոյ հաստատեալ է, և բառնալ զսա անհնար է. բայց թէ Աստուծոյ այնպէս հաճոյ իցէ, կամք Աստուծոյ կատարեսցին։ Եւ եթէ ասիցէ եթէ այլ թագաւոր նստուցից, արասցէ զո՞ և կամեսցի և արձակեսցէ, և մեք ընդունիմք. ահաւասիկ է տեղի թագաւորութեանս. և եթէ զքէն արեանն Մուրկայ խնդրէ, զքէն արեան Մուրկայ խնդրեաց Աստուած ի Փոկասայ ի ձեռն հօր իմոյ Հայրակղի. և եթէ երկիր խնդրիցէ, ահաւադիկ[1] երկիրդ առաջի ձեր, եթէ կամիմք և եթէ ոչ կամիմք և եթէ ոչ կամիմք եհան Աստուած ի մէնջ և ետ ի ձեռս ձեր. և եթէ քաղաքս խնդրիցէ, ահաւադիկ է քաղաքք մեծամեծք և պարսպաւորք. այլ գա՛նձս խնդրիցէ, ասասցի թէ՝ տաց որչափ և ձեռն հասանիցէ։ Եւ ոչ կամեցաւ լսել, այլ տակաւին ծարաւի է արիւնարբութեան. մինչև յե՞րբ ոչ կամիցի յագենալ արեամբ, մի թէ՞ ոչ կարէին հոռոմք սպանանել զնա, և բառնալ զթագաւորութիւնն պարսից ի ժամանակի իբրև ետ Աստուած զսա ի ձեռս մեր, այլ արարին ի վերայ նորա ողորմութիւն։ Բայց արդ ես զնոյն բարիս խօսեցայց և խնդրեցից ի նմանէ հաշտու-

---

[2] Այլ օրինակ. երկիրդ ամենայն առաջի։

թիւն և սէր. և ի ձէնջ խնդրեցից երիս ինչս և լուարուք ինձ. ի բաց արարէք յաշխարհէ զսուր և զհուր և զգերութիւն, և յերից օգուտ գտանէք. զի ոչ դուք նուազիցիք ի սովոյ, և ոչ հարկք արքունի կորնչիցին. և ես աւասիկ արձակեցից թագաւորին ձերում պատարագս և հրեշտակս հրովարտակօք, խնդրել ի նմանէ զխաղաղութիւն աշխարհի և ընդ իս հաշտութիւն»։ Եւ նոցա ընկալեալ զխնդիրսն հաւանեցան առնել ըստ կամաց նորա, մինչև տեսցեն եթէ զի՞նչ պատասխանի եկեսցէ յարքայէն իւրեանց, և կամ զօրուն զի՞նչ հրամայեսցէ առնել։ Եւ զօրուն գնացեալ անտի ձմերեցին ի Սուրիայ։

Իսկ թագաւորն պարսից ընդունէր զպատարագսն բերեալս ի կայսերէն, և հրեշտակսն անդրէն ոչ արձակեաց, և ոչ հրովարտակացն պատասխանի առնէր. այլ հրաման տայր զօրացն նաւս կազմել և անցանել ի Կոստանդնուպօլիս։ Եւ եղև պատերազմ և նաւամարտութիւն սաստիկ ի մէջ ծովուն։ Եւ կորեան ի զօրացն պարսից յաւուր յայնմիկ ապառազէնք հեծելոց չորք հազարք հանդերձ նաւօք իւրեանց։ Եւ տեսեալ զայնպիսի կորուստ ոչ ևս համարձակեցան ի նոյն գործ. այլ տարածեալ կալան զերկիրն ամենայն։

Եւ յաւել գրգռել ի սիրտս իւր արքայ Խոսրով. զի Տէր խստացուցանէր զսիրտ նորա, զի կործանելոց էր զթագաւորութիւն նորա։

Գրէ հրովարտակ նախատանաց առ Կայսր՝ որ ունէր օրինակ զայս։

«Աստուծոց պատուական և ամենայն թագաւորաց տէր երկրի և ծովու, ծնունդ մեծին Արամազդայ Խոսրով Թագաւոր։ Առ Հայրակղոս անմիտ, և առ անպիտան ծառայ մեր. ոչ կամեցար կամօք տալ զանձն ի ծառայութիւն մեզ, այլ տէր և թագաւոր կոչես զքեզ. զգանձ արքունի որ իմ առ քեզ է՝ ծախես, և զայդ ոչ գիտես եթէ վաղիւ համարս տալոց ես։ Զծառայս իմ պատրես, և զզօրս աւազակաց ժողովեալ ոչ տաս ինձ հանգչել, այլ հանապազ պատրաստիս ինձ ի պատերազմ, և ասես վստահանալ յԱստուածն իմ. արդ ո՞ւր է Աստուածն այն զոր դուդ ասես, վասն ե՞ր ոչ փրկեաց զԿեսարիայ, և զԱնտիոք, և զՏարսոն, և զԱմասիայ, և զԵրուսաղէմ, և Աղէքսանդրիս, և զԹեբայիտ, և զայլ աշխարհս։ Միթէ՞ և այժմ ոչ գիտիցես՝ թէ զամենայն երկիր, զծով և զցամաք ինձ հնազանդեցուցի. արդ զԿոստանդնուպօլիս միայն ոչ կարիցեմ բերե՞լ։ Բայց արդ զամենայն յանցանս քո և զխաս զոր արարեր թողում քեզ. արի առ զկին քո և զորդիս և եկ այսր. և տաց քեզ ագարակս, այգիս, և ձիթենիս, և սերմանս զի վարեսցես և հնձեսցես և մեք սիրով նայեսցուք ի քեզ։ Ապա թէ ոչ՝ մի խաբեսցէ զքեզ յոյսն սնոտի, զի Քրիստոսն այն՝ որ զանձն իւր ոչ կա-

րաց ապրեցուցանել ի հրէից, այլ կալան զնա և սպանին ի վերայ փայտի, իսկ արդ զքեզ զի-արդ կարէ ապրեցուցանել ի ձեռաց իմոց։ Զի թէ իջանիցես յանդունդս ծովու՝ ձգեցից զցանցս իմ և ըմբռնեցից զքեզ. և ապա տեսանիցես զիս այնպէս որպէս դու ոչ կամիցիս»։

Եւ առեալ Հայրակղի զհրովարտակն հրամայեաց ընթեռնուլ առաջի հայրապետին և ամենայն մեծամեծացն. և ապա մտին ի տունն Աստուծոյ, և տարածեալ զհրովարտակն առաջի սրբոյ սեղանոյն, անկան ի վերայ երեսաց իւրեանց յերկիր առաջի Տեառն և լացին դառնապէս. զի տեսցէ Տէր զնախատինս զոր նախատեաց զնա թշնամին։ Եւ հաճոյ թուեցաւ Հայրակղի և ամենայն սինկղիտոսիցն նստուցանել զորդին Հայրակղի յաթոռ թագաւորութեան, որ էր մանուկ փոքր. և ինքն հանդերձեալ կազմել գնալ ընդ արևելս, նաւել ի Քաղկեդոն։ Եւ զօր պարսից արքային որ յաշխարհին՝ ոչ գիտացին. և Հայրակղի ժողովեալ զամենայն արևելեայս իբրև հարիւր և քսան հազար, դիմէ ի վերայ Խոսրովայ։ Եւ ճանապարհ արարեալ ընդ կողմն հիւսիսոյ ել դէպ ուղիղ ի Կարնոյ քաղաք, և անցանէ ի Շիրակ, և հասեալ ի Դուին աւերէ զնա, և զՆախճաւան, և զՈրմի, և դիմեալ ի Գանձակն Ատրպատականի, բրէ զնա, աւերէ զԱհմատան, և զՄայ, կործանէ զբագին հրատին մեծի, որում Վշնասպն կոչէին,

և լնուն զծովակն որ յանդիման հրատին՝ դիւակամբք. զխօսուն և զանասուն, զայր և զկին և զմանուկ առ հասարակ մաշեցին ի սուր սուսերի. և արքայ Թոսրով զարհուրեալ պատրաստի ի փախուստ, քանզի զօրացաւ յաղթութիւն Հայրակղի. և ամենայն ուրեք ուր և հանդիպէր զօրուն պարսից, առ հասարակ սատակէր զամենեսեան մինչ ոչ մնալոյ ապրեալ։

Զայս յառաջագոյն իմացեալ հին պատմագրին, յառաջատես զկործանումն նոցա յայտ առնէ. և զոր ասեն այսպիսի ինչ է. «Վա՜յ քեզ. եղուկ դու երկիրդ պարսից, յորժամ բազմախուռն գունդք զօրացն յունաց ի քեզ արշաւանս եդեալ հասանիցեն և հարկանիցեն զքեզ ի սուր սուսերաց, և յառաթուր սմբակաց։ Վա՜յ քեզ. եղուկ դու այր քաջ արքայդ մեծանուն, յորժամ կարկառիցէ Բարձրեալն զձեռն իւր ի կործանել զքեզ, և ի խորտակել զգաւազան ամբարտաւանութեան քո. յայնժամ մերկասցի արեգակն զլոյս իւր ի քէն, և զգեցուսցէ քեզ խաւար. յայնժամ ահագինս որոտալով ճայթիցէ ի վերայ քո երկինք. և լսիցէ հնչիւն և բոմբիւն և դղրդիւն յանդնդոց. ձայն որոտալոյ սմբակաց բազում ամբոխից երիվարաց, և աղաղակ բազում սպառազինաց յարձակեսցին ի վերայ քոյ։ Յայնժամ ամօթալից աչօք տեսցես զբազմափառ և զպայծառացեալ նշանս դրօշմացն բարձրացելոց։ Յայնժամ թանձ-

բացեալ մթացի, բալ և մառախուղ, խաւար ի վերայ լերանց և դաշտաց քոց. յայնժամ կերիցէ սուր զպատերազմողս քո. ելցեն ի քեզ փայտահարք բազումք և կոտորեսցեն զմայրս քո մեծամեծս, և զմատաղատունկս բարձունս. յայնժամ ելցէ հուր ի քէն ծնեալ և կերիցէ զքեզ և զբազմութիւն ուստերաց և դստերաց քոց, ի քէն ակնունելով զբորբոքումն։ Զի որովք բարձրացար և ամբարտաւանեցար, նոքիմբք խոնարհեսցիս և անկցիս։ Քակտեսցի և աւերեսցի պերճութիւն տաճարաց քոց, և ամենայն ուրէք անարգեսցի։ Եւ զոր ծնար և գգուեցերն՝ քեզէն կոչեսցես ի մահ»։ Այս ամենայն վճարեցաւ պարսից ի ձեռն յունական սրոյն։

Իսկ Խոսրովու կարծեալ արծարծեալ զզօրս իւր, և որք ի դրանէն արքունի որ կոչին համհարզք և փուշտիպանք. և ամենայն արք ընտիրք տան թագաւորին ոյժ առեալ դարձեալ պատերազմել ընդ Հայրակղի. և նա գնաց ընդդէմ նոցա սաստիկ զօրութեամբ. և եղև բալ և մութ թանձրամած խաւարին ի վերայ երեսաց ամենայն երկրին. և ոչ գիտացին զօրն պարսից զդարձն Հայրակղի ի վերայ նոցա. մինչև երթեալ խառնեցան և բախեցին զմիմեանս պատերազմօք, այնպէս զօրացոյց Տէր զողորմութիւն իւր ի վերայ Հայրակղի յաւուր յայնմիկ տալ ի ձեռս նորա զամենեսեան. և նոքա հարեալ սատակեցին զնոսա սրով սաւ-

սերի յանխնայ. սպանին և զզօրավարն ի պատերազմին. և զմնացեալ սակաւսն ի մէջ արարեալ, շրջափակ տուեալ, կամէին զամենեսեան սատակել: Եւ նոցա ձայն բարձեալ ողորմագին պաղատանօք առ Հայրակղոս, եթէ՝ «Աստուածասէր և բարերար տէր արա ի վերայ մեր ողորմութիւն, թէպէտ և չեմք արժանի ողորմութեան»: Յայնժամ Հայրակղոս հրամայեաց առնել ի վերայ նոցա ողորմութիւն: Եւ թողին զնոսա արք իբրև չորք հազարք, վիրաւորք բոկք և մերկք և հետևակք: Եւ ընդ առաւօտն հրամայեաց Հայրակղոս ասպատակս սփռել ի վերայ ամենայն երկրին, և հարկանել զամենայն երկիրն սրով սուսերի: Եւ Խոսրով արքայ փախստական գնաց, և անցեալ զԹեկղաթաւ ի Վեհկաւատ հրամայեաց զլար կամուրջացն կտրել. և Հայրակղի հասեալ բանակեցաւ առ դուրս Տիսպոն քաղաքի. և քանդեալ աւերեաց զամենայն ապարանս Թագաւորին, և այրեաց զնոսա հրով, և բազում գանձս մթերեալս յափշտակեաց անչափ աւարաւ գանձս ոսկւոյ և արծաթոյ և հանդերձից, և անասուն բազում յոյժ, և բազմութիւն գերեաց իբրև զաւազ ծովու անթիւ: Բայց տիկնայքն և հարճքն և ամենայն որդիքն արքային, և արքունի երիվարացն էին անդէն ի Վեհկաւատ. և սկսաւ Խոսրով արքայ ժողովել զմնացեալ նախարարս զօրացն և զզօրն որ զերծեալ էին ի պատերազմէն: Եւ խօսէր ընդ

նոսա սաստիկ և ահագին դատաստանօք և սպառնալեօք. թէ՝ «ընդէ՞ր և դուք ոչ մեռարուք ի պատերազմին, քան թէ ելեալ փախստական գնացէք գալ առ իս և տալ համարձակութիւն ծառայի իմում ի յայսքան փաս. մի՞ թէ արդեօք զԽոսրով մեռեալ կարծէիք»։ Յայնժամ խորհուրդ միաբանութեան ի մէջ առեալ ամենեցուն նոցա ասեն. «Թէպէտ և ի թշնամեացն ապրեցաք, սակայն ի ձեռաց դորա մեզ չիք ապրել. արդ եկայք իմասցուք ինչ»։ Յայնժամ երդուեալ միաբանութեամբ գնացին ի գիշերի և անցին ընդ գոմ ի Վեհկաւատ. և կալան անդ զտիկնայսն ամենայն, և զհարճսն, և զորդիսն արքայի, և զերիվարսն արքունական, որով եկեալ էր Խոսրով արքայ ի Տիսպոն. հանին գաղտաբար ի գիշերի, և արքայ Խոսրով ոչ միոյ իւիք չէր տեղեակ. և զորդի նորա Կաւատ նստուցին թագաւոր. և նա դիմեալ եկն ի վերայ նորա. և ոմն ընթացեալ ետ գոյժ վաղվաղակի Խոսրովու, թէ ապստամբեցաւ ամենայն արեաց երկիր ի քէն, և զորդի քո Կաւատ նստուցին թագաւոր, և ահաւադիկ դիմեալ գայ ի վերայ քո։ Եւ ընդոստուցեալ Խոսրով ի յահէն և զարհուրեալ մեծաւ դողութեամբ, խնդրեաց իւր տեղի փախստեան, աղաղակեաց և ասէ. «Ձի՛, ձի՛», և մտեալ յասպաստանն, ոչ հանդիպեցան ձիոյ. յայնժամ արքայ Խոսրով յայլակերպս եղեալ գնաց եմուտ ի բու-

բաստանն արքունի, և երթեալ ի թաւ պուրակս բուրաստանացն մտեալ ի ներքոյ թաւ թփոյ ծաղկոցն որ էր մուրտ բազում, ղուղեալ դադարեաց։ Եւ Կաւատ արքայ հրամայեաց խնդիր առնել, և երթեալ ի բուրաստանն գտին զնա ի թաւի անդ ղուղեալ. կալան զնա և եկին ածին զնա ի դահլիճ անդր. հրաման ետ արքայ Կաւատ արկանել զնա ի տուն մի արքունական սենեկացն. և մտանէին առ նա արք ի նախարարացն խօսէին դատաստանօք և նախատէին զնա, անարգէին և գնային։ Այս եղև զաւուրս ինչ, ապա անարգեաց զնա և Կաւատ արքայ, եհատ ի վերայ նորա դատաստան մահու, և հրամայէ արանց մտանել և սպանանել զնա. որք մտեալ քարտակատեցին զնա տապարօք ի սենեկի անդ և սպանին։ Հրամայեաց և զեղբարսն իւր սպանանել, որք ի միում ժամու սպանան արք քառասուն, ամենեքեան ի չափ հասակի եկեալ, և Կաւատ արքայ հաստատեցաւ յաթոռ թագաւորութեան. և արար խաղաղութիւն մեծ ընդ կայսեր և ընդ ամենայն երկիր իշխանութեան իւրոյ։ Ետ և կայսեր զամենայն զոր և կամեցաւ առնուլ. և մինչդեռ խորհէր արքայ Կաւատ վասն շինութեան աշխարհի և խաղաղութեան, եհաս նմա վախճան կենաց և մեռաւ, կեցեալ ամիսս վեց։ Եւ յետ մահու նորա նստուցին թագաւոր զորդի նորին զԱրտաշիր, կարի տղայ մանուկ։ Յայնժամ Հայրակղէս գրէ

առ Յուսեամ և ասէ. «Կաւատ Թագաւորն ձեր վախճանեցաւ, և որդի նորա մանուկ տղայ է. բայց արդ ի քեզ հասեալ Թագաւորութիւնդ, և ես քեզ տաց զնա, և եթէ զօր պիտոյ իցէ յօգնականութիւն արձակեցից որչափ և կամիս. բայց արդ եկ ի կողմանցդ յայդցանէ. եկից և ես յասորեստան, և երդումն արարեալ ուխտ դիցուք ի մէջ մեր երկոցունց, խաղաղութեամբ ունել զԹագաւորութիւն»: Եւ հաւանեալ Յուսեմայ եկն առ Հայրակղոս արքայ յունաց, թողեալ ի նա զԵրուսաղէմ, և զԿեսարիայ պաղեստինացւոց, և զամենայն կողմանս անտիոքացւոց, և զամենայն քաղաքս գաւառացն այնոցիկ. և զՏարսոն կիւլիկեցւոց, և զմեծ մասն Հայոց, և զամենայն զօր միանգամ կամեցաւ Հայրակղոս. և ուրախ եղև մեծապէս խնդութեամբ. և Հայրակղոս տայ նմա զԹագաւորութիւնն, և խոստանայ զօր որչափ և պիտոյ իցէ: Եւ խնդրէ ի նմանէ խնդիրս առաջին, ասէ. «զԱստուածնկալ սուրբ Նշանն զոր գերեցեր յԵրուսաղէմէ, խնդիր արարեալ մեծաւ փութով այսրէն դարձուսցես»: Յայնժամ երդուաւ նմա Յուսեամ և ասէ. «հրամայեա արձակել արս հաւատարիմս, և ես յորժամ հասից ի դուռն արքունի, ի նմին ժամու խնդիր արարից Յաչին, և գտեալ զնա տայց բերել առ քեզ». և արար նմա հաւատարմութիւն յոյժ գրով, և կնքեալ աղիւ ըստ սովորութեանն իւ-

բեանց երդումն, և խնդրեաց ի նմանէ զօր ինչ սակաւ յերևելի մարդկանէ, յորս ինքն վստահն էր։ Իսկ Խոռեմայ առեալ զզօրսն երթեալ ի Թագաւորանիստն, հրաման տուեալ այլոց ոմանց սպանին զտղայ Թագաւորն զԱրտաշիր։ Յայնժամ արձակեաց Հայրակղոս արս հաւատարիմս առ Խոռէմ վասն Աստուածընկալ սուրբ Խաչին. և նորա խնդիր արարեալ մեծաւ ստիպով մինչև կարացին գտանել նովիմբ կազմածով. և ետ յայրսն որք եկեալ էին. նոքա առեալ գնացին փութանակի և ետ բերողացն Հայրակղոս ինչս բազումս և մեծարեալ արձակեաց պատուով։ Եւ գումարեալ Հայրակղի զամենայն զօրս իւր յորդոր և խնդալից սրտիւ, բազմութեամբ զօրաց եւ ընդ առաջ սուրբ Նշանին, ի պատիւ հրաշալի և երկնաւոր գանձուն. և տարեալ հասուցանէր ի սուրբ քաղաքն Երուսաղէմ։ Եւ ապա անտի ոչ սակաւ ինչ լինէր յաւուր յայնմիկ ձայն լալոյ, հեղումն արտասուաց յահագին բորբոքմանէ սրտից նոցա, և գութ խանդաղատանաց Թագաւորին և իշխանացն և զօրացն ամենեցուն և բնակչաց քաղաքին. և ոչ ոք կարէր երգել զօրհնութիւն սաղմոսացն, և կամ լսել ի գթալից արտասուաց ժողովրդեանն միանգամայն և յանչափ խնդութենէն։ Եւ կարգեալ հաստատեաց Հայրակղոս ըզսուրբ Նշանն անդէն ի տեղւոջ իւրում ի սուրբ Գողգոթայ։ Եւ բաշխեաց ամենայն եկեղեցեացն

և աղքատաց քաղաքին օրհնութիւն և գինս խըն-
կոց, և ինքն գնաց ի միջագետս ասորոց, զի կա-
լեալ հաստատեսցէ ինքեան զքաղաքսն և զսահ-
մանսն ամենայն որ առ Խոսրովու և առ Մուրկաւ
հաստատեալ էր։ Եւ եկաց սուրբ Խաչն Տէրունա-
կան յԱստուածակերտ քաղաքին մինչև ցմիւսան-
գամ առածն Երուսաղէմի, որ յորդւոցն Իսմայէլի։

Եւ Խոռեմայ առեալ զթագաւորութիւնն յա-
ւուր միում զգեցեալ էր հանդերձ թագաւորա-
կան, և հեծեալ յերիվար արքունի, և շրջէր ի
մէջ ամենայն զօրացն իւրոց ցուցանել զինքն և
քաջալերել զզօրսն. և յանկարծակի ի թիկանց
կողմանէ յարձակեալ ի վերայ նորա արանց, հա-
րեալ սատակեցին զնա։ Ապա թագաւորեցուցին
զԲորն զդուստրն Խոսրովայ որ էր կին նորին,
որում Բամբիշն կոչէին. և կարգեցին հրամանա-
տար ի դրանն զԽոռոխ Որմզդ, որ և սպանաւ ի
Բամբշանէն որ կոչէին Բոր։ Եւ կալաւ Բորն
զթագաւորութիւնն ամս երկու և մեռաւ։ Եւ յետ
նորա ածին զԽոսրոյ զոմն տղայ մանուկ և նըս-
տուցին իւրեանց թագաւոր. և նա փութանակի
վախճանեցաւ. ապա ոմանք թագաւորեցուցին
զԱզարմիկ դուստր Խոսրովու. և զօրն Խոռեմայ
թագաւորեցուցին զՈրմզդ ոմն ի Մծուին քա-
ղաքի. և յայնմհետէ նուազեալ պատառեցաւ թա-
գաւորութիւնն պարսից։ Յետ այսր ամենայնի
Յազկերտ թագաւորեաց ի Տիսպոն, և ունէր

զթագաւորութիւնն երկիւղիւ. և ոչ հրամանատուայլ անձնապահ։ Որ և ի սա հասեալ՝ վախճան եղև թագաւորութեանն պարսից զոր յետ սակաւուու միոյ ասասցուք։ Աստանօր և ի դէպ ելանէ մարգարէութիւնն Դանիէլի, տեսութիւն անհեդեդ պատկերին բազմախառն նիւթօքն ի վերայ խեցեղէն և երկաթեղէն ոտիցն։

---

## բ. Պատմութիւն Ստեփաննոսի Տարոնեցւոյ, Փարիզ, եր. 85—100, եւ 114—120.

Եւ ապա Խոսրով՝ արքայն Պարսից զՍուրէն ոմն ազգական իւր, որում անուն էր Ճիհովր-Վշնասպ հանէ ի հազարապետութիւն Հայոց։ Որ եկեալ կալաւ զերկիրս մեր յոյժ հարստահարելով զնախարարս Հայոց. զի շնայր ընդ կանայս ազատաց ոչ առնելով զայրն տէր կնոջ իւրոյ։ Ընդ որ զայրացեալ Վարդանայ բդեշխի՝ որդւոյ Վասակայ որ էր յազգէն Մամիկոնէից, սպասեալ դիպող ժամանակի՝ սուսերահար առնէր զՍուրէն մարզպան, (եւ) յերկիր կործանէր յամի քառասուն և միերորդի թագաւորութեան Խոսրովու, որ էր ամ եօթներորդ թագաւորութեան Յուստիանոսի՝ յամսեանն արեգի քսաներկուսն ամսոյն, որ է փետրուարի յաւուր երեքշաբաթւոջ։ Եւ իշխանք Հայոց համօրէն ապստամբեալ ի Պարսից՝

ձեռն ետուն ի Յունականն՝ նոքօք ընդդէմ կալով սաստիկ մարտիւ։ Իսկ Վարդանայ առեալ զընտանիս իւր և զայլ պայազատսն՝ փախստեայ անկանի յաշխարհն յունաց ի Թագաւորեալ քաղաքն Կոստանդնուպօլիս։ Եւ երթեալ յանդիման լինէր Թագաւորին Յուստինոսի որ զսուրբն Սոփիա շինեաց, և հաղորդի ընդ նմա օրինաց. և յիւր անունն անուանէ զաւադ դուռն սուրբ Սոփիայ, որ մինչև ցայսօր կոչի դուռն Հայոց։

Եւ այս են ժամանակք մարտից, երկպառակութեանց, անթիւ սպանմանց, գերութեանց, առից, խռովից, կապանաց, նեղութեանց, պակասութեանց, խիստ սովու, սրոյ և մարդամահու, աւերելոյ աւանից, հրդեհից շինուածոց և ամենայն փասուց բազում աշխարհաց յերկուց կողմանց հասանէր, մոռացեալ աստուածպաշտութեան։ Իսկ զկնի Տեառն Մովսիսի եկաց կաթողիկոս Հայոց տէր Աբրահամ ի գաւառէն Ռըշտունեաց, ի գեղջէ Աղբաթանից հրամանաւ Սըմբատայ Բագրատունւոյ որ էր մարզպան Հայոց ի Խոսրովու հրամանէ։ Այս Սմբատ երթեալ յաշխարհն Վրկանի պատերազմաւ, և գտեալ անդ ազգս գերեալս ի Հայոց բնակեալ ի Թուրքաստան անապատին որ Սագաստան անուանի, մոռացեալ զլեզու և զդպրութիւն հայերէն։ Զոր տեսեալ Սմբատայ, և ուրախացեալ յոյժ՝ երէց մի Հաբէլ անուն՝ վարդապետ նոցա կարգէ. յորմէ ուսեալ

գդպրութիւն հայերէն՝ կան մինչև ցայսօր վի-ճակ սրբոյն Գրիգորի։

Իսկ հայրապետն Աբրահամ բազում ջանիւ հոգ տարեալ վասն Վրաց աշխարհին՝ ոչ կարաց դարձուցանել յուղղութիւն. ապա հատեալ աս-տուածային սրով նզովեաց ամենայն Հայոց մի-աբանութեամբ։ Իսկ կայսրն Մաւրիկ զՅովհան ոմն նստուցանէ կաթողիկոս մասին յունաց։ Եւ Աբրահամ նստէր ի Դուին։ Եւ Աշոտ ոմն առա-քեալ յարքայէն պարսից Խոսրովու, հարեալ զյոյնն՝ էառ զԿթուճ՝ քաղաք Հաշտենից, նոյնպէս և զքաղաքն Կարնոյ. և գերեաց զՅովհան կաթողի-կոս ամենայն սպասուք եկեղեցւոյն և տարաւ ի Համատան. որ կալաւ զաթոռն ամս 16։ Այլ Աբ-րահամայ կալեալ զաթոռն ամս 23՝ վախճանի։

Իսկ յետ սուսերահարն լինելոյ Սուրենայ ոչ ևս պարսիկ մարզպան առաքէր ի Հայս թագա-ւորն պարսից. այլ ի խնդրոյ նախարարացն իշխան հաստատէ Հայոց զԴաւիթ Սահառունի, որ կալաւ զհազարապետութիւն Հայոց ամս 30 հրամանաւ Որմզդի՝ որդւոյ Խոսրովու՝ պարսից արքայի։ Ի սորա երկոտասան ամին երևեցաւ Մահմէտ՝ որդի Աբդլայի ի 68 թուին։ Եւ սկիզբն լինի թագա-ւորութեան Իսմայէլի յ72 թուականին։ Կւ զկնի Տեառն Աբրահամու եկաց կաթողիկոս Հայոց Տէր Կոմիտաս ի գաւառէ Արագածոտոյ, ի գեղջէ Աղ-ցից՝ ամս 8։ Սա շինեաց զհանգստարան սրբոյն

Հռիփսիմայ գեղեցկադիր շինուածով. քանզի խարխալեալ էր առաջին շինուածն սրբոյն Սահակայ։ Եւ ի սորա ժամանակս փայլէր վարդապետութեամբ Յովհան մայրագոմեցի որում զկաթողիկոսութիւնն հաւատացեալ էր Կոմիտաս։ Սա գրեաց զերկս գիրս. և զանուն իւր ոչ վերագրեաց ի նոսա վասն չընդունելոյ ժողովրդեանն. անուն միոյն՝ խրատ վարուց, և անուն միւսոյն՝ հաւատարմատ, և անուն միւսոյն՝ նոյեմակ։

Եւ ապա Տէր Քրիստափոր ազատ յաբրահամեան բարձէն յԱպահունեաց գաւառէն՝ ամս 6։ Զսա ընկեցին յաթոռոյն՝ զի խռովութիւն առնէր ի մէջ իշխանացն. յետոյ և այլ ինչ պատճառ ասացին։ Տէր Եզր ի Նգայ գաւառէ, ի գեղջէ Փառաժնակերտոյ՝ ամս 10։ Սա հանդիպեալ Հերակլի ի Կարնոյ քաղաքի, ոչ տանելով ընդ իւր զՅովհան՝ փակակալ սրբոյն Գրիգորի, որ յայնմ ժամանակի կատարեալ էր աստուածային գիտութեամբ, այլ զոմն կիսակատար գիտութեամբ ընդ իւր առնոյր։ Եւ հասեալ ի ժողովն՝ խնդրէ ի նմանէ Հերակլ ձեռնարկ հաւատոյ։ Իսկ նոքա իբրև տգէտ գոլով աստուածային գրոց՝ խաբեալ խորամանկութեամբն յունաց՝ նզովեալ զամենայն հերձուածողս բաց ի ժողովոյն Քաղկեդոնի, հաղորդեալ նոցա ըստ օրինաց՝ մեծապարգև փառօք դառնային, զԿողբ ժառանգեալ փոխան հաւատոյն։ Որոյ ընդ առաջ ելեալ Նիսա ուխտ եկե-

զեցուոյն. իսկ Յովհան ոչ ել. և մեղադրեալ Եզրի՝ ծանուցանէ նմա. որոյ ասացեալ «քա՛ւ լիցի ինձ հաղորդել այնմ որ քակեաց զցանկ հաւատոյ»: Եւ ապա բռնութեամբ մուծեալ ի սենեակն՝ ասաց Եզր «զի՞ ընդվզեալ և խրոխտացեալ ոչ տեսանես զմեզ»: Եւ նա ասէ «խրոխտութիւն ոչ գոյ յիս. այլ ջատագով ճշմարտութեան կամիմ լինել. բայց դու յիրաւի՛ կոչեցար Եզր. զի յեզր հանեալ տրոհեցեր զՀայաստանեայս քակեալ ըզսահմանս հաւատոյ հարցն և խրամատեալ զառաքելական զցանկն՝ կործանեալ ի մարդադաւան տօմարն Լևոնի»: Եւ զայս ասացեալ գնաց յերեսաց նորա անարգանօք: Եւ երթեալ բնակեցաւ ի Մայրոյ վանս. ուստի հալածեալ զնա Եզրի՝ կոչէ զտեղին մայրագոմ, և զՅովհանն՝ մայրագոմեցի: Իսկ նորա գնացեալ ի Գարդման՝ անդ կատարէ զկեանս իւր առաքելաջան հանդիսիւ: Զսմանէ համբաւի հերձուած մուծանել յեկեղեցի, որ ոչ է սորա. այլ այլ ումն Սարգիս անուն յաշակերտաց նորա արար զայն, զոր հալածեաց Յովհան յիւրմէ:

Իսկ զկնի Դաւթի Սահառունւոյ եկաց իշխան Հայոց Թէոդորոս Ռշտունի ամս 25: Եւ զկնի Եզրի յաջորդէ զաթոռ Ներսէս՝ եպիսկոպոս Տայոց: Սա շինեաց զվկայարան սրբոյն Գրիգորի ի վերայ վիրապին յԱրտաշատ, և զմիւս ևս հրաշապայծառ եկեղեցին զսրբոյն Գրիգորի Վաղարշապատու աւապարին զանազան յօրինուածով:

Յայնմ ժամանակի ամիրապետն Տաճկաց ել ի Սին անապատէն զօրու ծանու, և անցեալ ընդ ծով ի հարաւակողմն յարևելս ի Սինդ, ի Պարս, ի Սագաստան և ի Սրման և ի Հնդիկս. և առեըեալ գերեաց բառնալով զամենայն Թագաւորութիւնս ազգացն բաց ի Հռոմէացւոցն։ Զոր տեսեալ ապա Թէոդորոսի Ռշտունեացն տեառն, որ էր զօրավար Հայոց և այլոց համախորհից (միաբանութեամբ) ի բաց կացեալ ի կայսերէ՝ հնազանդին Տաճկաց։ Իսկ կայսր Կոստանդին՝ Թոռն Հերակլի մեծաւ ցասմամբ դիմէ ի Հայս, խրոխտայր ջնջել ի միջոյ։ Որում ընդ յառաջ ելեալ Հայրապետն Ներսէս՝ համոզէր ի խաղաղութիւն. և ի միասին հասեալ ի Դուին քաղաք, հրամայէ կայսր հռոմ երիցանց մատուցանել պատարագ յեկեղեցին. և ի միասին հաղորդեցան օրինաց կայսրն և կաթողիկոսն։ Յորմէ գայթակղեցան բազումք զի ուխթ որ ի խորհրդի եկաց կայսրն ըստ սովորութեանն։ Եւ ի ժամ ճաշուն արհամարեալ լինէին ազատքն Հայոց առաջի նորա։

Իսկ կայսրն գնացեալ ի Կոստանդնուպօլիս թողու ի զօրաց իւրոց վերակացուս աշխարհիս Հայոց. և ապա վիշապն ապստամբ, ամենաչար դևն՝ աստուածամարտ գազանն ոչ լռէր յիւրոց խորամանկ խորհրդոց չարութենէ, այլ անքուն ակամբ երկնէր յանձն իւր յարուցանել հալածանս ի վերայ եկեղեցեաց Աստուծոյ որ ի Հա-

յաստան աշխարհիս, քանզի յայսմ թագաւորու-
թեան Կոստանդնի՝ որդւոյ Կոստանդեայ թոռին
Հերակլի, արկ նա ի գործ զբնիկ կախարդու-
թեան իւրոյ զչարութիւն պղտորել զհաւատս
մանկանց եկեղեցւոյ. և արբանեակս իւր կալաւ
զզօրս յունաց որ ի Հայաստան աշխարհիս։ Քանզի
ոչ երբէք ընդունէին Հայք զհոռոմն ի հաղոր-
դութիւն մարմնոյ և արեան Տեառն։

Եւ արդ՝ գրեն նոքա ամբաստանութիւն ի
Կոստանդնուպօլիս առ Կոստանդին թագաւորն և
առ Հայրապետն թէ՝ իբրև զանօրէնս համարեալ
եմք յաշխարհիս այսմիկ զի անարժանս համարին
Քրիստոսի Աստուծոյ զժողովս Քաղկեդոնի և
զտօմարն Լևոնի, և նզովեն զնոսա և զամենեսին
որք ըստ նոցա խորհին ի հաւատս։ Յայնժամ
հրաման ետ թագաւորն հայրապետաւն գրել ի
Հայս հրովարտակ առ սրբասէր կաթողիկոսն Հա-
յոց Ներսէս, և առ մեծն Թէոդորոս՝ Ռշտունեաց
տէր, որ էր իշխան աշխարհիս և զօրավար զօ-
րացն, և առ ամենայն իշխանս աշխարհիս զի միա-
բանութիւն հաւատոյ արասցեն ընդ Հոռոմոց, և
մի՛ խոտեսցեն զժողովն զայն և զտօմարն. և եթէ
գտցի ոք յիշխանացն, որ ընդդիմասցի հրամա-
նին, ի պատուոյն և յիշխանութենէն ի բաց ըն-
կեսցի. և զինչս նորա զամենայն յարքունիս կալ-
ցեն, և տարեալ զնա ի դրունս թագաւորաց՝ անդ
արասցեն պատասխանի։ Եւ էր անդ այր մի ի

Բագրեւանդ գաւառէ, ի Բագւան գեղջէ, որ էր ուսեալ զարուեստ փիլիսոփայութեան, և էր անուն նորա Դաւիթ. զնա հրամայեաց արձակել ի Հայս. զի երթեալ ի բաց հատցէ զհակառակութիւն և արասցէ միաբանութիւն։

Եւ ժողովեցան ամենայն եպիսկոպոսունք և ամենայն իշխանք աշխարհին ի Դուին քաղաքի առ քրիստոսասէր և ճշմարտապատում կաթողիկոսն Հայոց Ներսէս և առ բարեպաշտ իշխան աշխարհին և զօրավարն Հայոց Թէոդորոս Սահառունի պատրիկ, որ էր Ռշտունեաց տէր. և տեսին զհրաման թագաւորին. և լուան բանս ի փիլիսոփայէն, որ ուսուցանէր բաժանմամբ զերկուց բնութեանցն վարդապետութիւն ըստ ժողովոյն Քաղկեդոնի։ Եւ իբրև լուան՝ ոչ առին յանձն փոխել զճշմարիտ վարդապետութիւն սրբոյն Գրիգորի ըստ տօմարին Լեւոնի։ Արդ հաճոյ թուեցաւ ամենեցուն առնել բանիցն պատասխանի և ցուցանել զհաստատութիւն հիմնադրութեան ճշմարիտ հաւատոյն իւրեանց, զոր ունէին յառաջին և ի բուն վարդապետացն իւրեանց։ Զաղաղակ բարձեալ ամենեցուն ասէին թէ «լաւ լիցի մեռանել քան թէ փոխանակել զվարդապետութիւն սրբոյն Գրիգորի ընդ ժողովոյն Քաղկեդոնի և տօմարին Լեւոնի, (որ) յոյս ճշմարիտ թուի մեզ ամենեցուն. իսկ որ զուղիղն կամիցին պարագիտել ճանապարհ, ասացեալն յա-

ռաքելոյն։ Արդ՝ աղաչեմ նախքան զամենայն առնել աղօթս, խնդրուածս, պաղատանս, գոհութիւնս վասն ամենայն մարդկան, մանաւանդ վասն թագաւորաց և ամենայն իշխանաց. զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցուք զկեանս մեր ամենայն աստուածպաշտութեամբ և սրբութեամբ։

Արդ՝ թէպէտև անարժանութիւնս մեր յոլովագոյն է, բայց զհրամայեալսն՝ մեզ՝ յոյժ փութամք կատարել առնելով աղօթս ի վերայ ամենայն մարդկան. բայց ևս առաւել ի վերայ աստուածընկալ փառաց թագաւորութեանդ և ամենայն իշխանաց և զօրաց և բոլորովին իսկ աստուածապահ պալատանդ, յոր սէրն Աստուծոյ լիով հանգուցեալ է, և շնորհք աստուածային պարգևացն ամենեցուն իսկ յայտնի են ի վերայ ձեր, զի ահա թագաւորութիւն մեծ և հզօրագոյն քան զամենայն թագաւորութիւնս. որ ոչ մարդկային ձեռամբ, այլ աստուածային աջովն է պսակեալ, զոր ոչ ոք երբէք կարասցէ փոխանորդել, բայց միայն Քրիստոսի թագաւորութիւնն. քահանայապետութիւն սուրբ և ճշմարիտ՝ լի աստուածային շնորհիւ. նախարարք և զօրք քրիստոսասէրք, և բազմութիւն ամենայն ժողովրդոցդ՝ ժողովուրդ Քրիստոսի Աստուծոյ. և մեք պանծացեալ ի լոյս փառաց ձերոյ աստուածասէր թագաւորութեանդ՝ անշարժելի հաւատով

կացեալ մնացաք ի մէջ դառնաշունչ և դժնդակ և անօրէն Թագաւորացն պարսից։ Զի յորժամ բարձին զԹագաւորութիւնն, կորուսին զամենայն նախարարս և զզօրս աշխարհիս, կոտորեցին սրով զարս և զկանայս, և ի գերութիւն վարեցին ըզ-բազմութիւն քաղաքացն և գիւղից։ Իսկ մնացելոցն սուր ի վերայ շողացուցեալ՝ բազում անգամ ջանացան դարձուցանել ի մոլորութիւն. բայց ոչ կարացին շարժել։ Նաև ամաչեցին անօրէնքն յունայնութեան իւրեանց զի նշան քրիստոնէական հաւատոյ հզօրագոյն է քան զամենայն Թագաւորութիւնս հեթանոսաց. մինչև հրաման տալ անօրէն Թագաւորացն Կավատայ, և յետ նորին՝ որդւոյ նորին Խոսրովու թէ՝ իւրաքանչիւր ոք զիւր հաւատ կալցի. և յայսմհետէ մի՛ ոք իշխեսցէ նեղել զհայս. ամենեքեան մեր ծառայք են, մարմնով մեզ ծառայեսցեն. վասն հոգւոց, որ զհոգին դատէ՝ նա գիտէ և նոքա։

Ապա դարձեալ յաւուր Խոսրովու՝ որդւոյ Որմզդի յետ գերութեանն Երուսաղէմի հրաման ետ արքայն Խոսրով ժողովիլ ամենայն եպիսկոպոսաց կողմանց արևելից և Ասորեստանեայց ի դուռն արքունի. «լսեմ, ասէ, թէ երկու կողմանք են քրիստոնէից, և մին զմիւսն նզովէ վասնզի չհամարի իրաւացի. արդ՝ միաբանութեամբ ամենեքեան ի մի վայր ժողովեսցին»։ Եւ ժողովեցան անդ ամենայն եպիսկոպոսունք և երի-

ցունք և ամենայն հաւատացեալք կողմանցն այնոցիկ։ Եւ կացոյց ի վերայ նոցա ոստիկանս զՍմբատ Բագրատունի՝ զանուանեալն Խոսրովշնում և զբժշկապետն արքունի։ Էր անդ ի գերութեան և Զաքարիա՝ հայրապետն Երուսաղէմի և այլ իմաստասէրք բազումք զորս գերեալ էր յԱղէքսանդրացւոց քաղաքէն։ Որոց հրաման ետ արքայ Խոսրով արդարութեամբ ի վերայ հասանել, և զուղիղն և զճշմարիտն ծանուցանել արքայի։ Եւ ժողովեալ ամենեքեան ի դահլիճն արքունի՝ եղև վէճ և աղաղակ մեծ. քանզի ոմանք էին յուղղափառութեան՝ հաւատով և գրով և կընքով հին Թագաւորացն միաւորեալք և միաբանեալք ընդ հաւատոյ աշխարհին Հայոց։ Եւ ոմանք Նեստորականք և Սեւերիտք և այլ բազմութիւն խառնիճաղանճ աղանդոյն։ Նաև հայրապետն ևս իւրովք համազգեօք յառաջ մատուցեալ՝ առնէր ամբաստանութիւն ըստ իւրոց բնիկ սովորութեանց։ «Մի՛ կոչեսցի, ասեն, ասա այրն այն»։ Եւ ծանուցին զբանս Թագաւորին։ Ասէ Թագաւորն «ո՞յր հրամանաւ եկն նա ի տեղին յայն. արդ՝ դանալի՛ց լիցի և գնասցէ ի տեղի իւր»։ Նոյնպէս և զայլ աղանդոյն բազմութիւն. բայց միայն զՆիկիականն և զԿոստանդնուպոլսին և զԵփեսոսին և զԲաղկեդոնին հրամայեաց քննել։

Դիպեցան անդ ի ժամանակին յայնմիկ արք երկու՝ եպիսկոպոսք յաշխարհէն Հայոց, արք հա-

ւատարիմք զորս վասն բռնութեան աշխարհիս էին արձակեալ զի ծանուսցեն թագաւորին. Կոմիտաս՝ Մամիկոնէից եպիսկոպոս և Մատթէոս՝ Ամատունեաց. և ունէին ընդ ինքեանս պատրաստական զպատմութիւն սրբոյն Գրիգորի և զայլ ևս վարդապետական պատմութիւնս։ Եւ հրամայեաց հարցանել թագաւորն եթէ՝ յորո՞ց թագաւորաց աւուրս եղեն ժողովքդ այդոքիկ։ Ասացին թէ «Նիկիոյ ժողովն առ Կոստանդիանոսիւ եղև. Կոստանդնուպօլսին՝ առ մեծն Թէոդոսիւ. Եփեսոսին՝ առ Թէոդոսիւ փոքու. Քաղկեդոնին՝ առ Մարկիանոսիւ»։ Պատասխանի ետ թագաւորն և ասէ «երից թագաւորաց հրամանքն ճշմարիտ լինել թուին քան զմիոյն»։ Եւ ի վերայ հասեալ թագաւորին զլուր վասն Նեստորի, թէ ո՞ կամ ուստի՞ կամ յո՞րում ժողովի և թէ զի՞նչ խօսեցաւ և որպէս եղև նմա, հրամայեաց զնեստորականսն հանել յատենէն արտաքս։

Նոյնպէս և վասն Քաղկեդոնի ժողովոյն եհարց եթէ ո՞յք էին գլխաւորք, և կամ զի՞ իսկ եղև ժողովն այն. և ծանուցին նմա զամենայն։ Ասացին թէ ի Նիկիայն և ի Կոստանդնուպօլսին ինքեանք իսկ թագաւորքն Կոստանդիանոս և Թէոդոս մեծ. իսկ յԵփեսոս Կիւրեղ՝ Աղէքսանդրացւոց հայրապետ. և ի Քաղկեդոնին՝ Թէոդորետոս ոմն եպիսկոպոս որ զՆեստորին խօսէր, և Աննա անուանեալն կաթողիկոս և այլ եպիսկոպոսունք և երի-

ցունք բազումք ի Նորին իշխանութենէ՝ յԱրուաստանէ, ի Խուժաստան կողմանէ և յայլոց աշխարհաց։ Վասն որոյ հրաման ետ արքայ Խոսրով քանդել զամենեցուն նոցա զեկեղեցիս։ «Թէ Քաղկեդոնին ընդունելի էր, ասէ, ապա Թուղթս ընդէ՞ր ոչ տարաւ. և այն զի ես ճշմարիտ գրեցի. այլ արտաքոյ է երից սուրբ ժողովոցն»։ և սրով սպառնացեալ զամենեսեան զնոսա սատակել, եթէ ոչ ի բաց դարձցին ի մոլորութենէն և եկանիցեն յարքունական պողոտայն։

Իսկ որք զՔաղկեդոնին (ունէին զդաւանութիւն) Իվերիոյ և Աղվանից կաթողիկոսն որ էր ի Փայտակարան, ի դրան արքունի, և այլք ոմանք եպիսկոպոսունք և երիցունք քաղաքաց որ ի յունաց կողմանէ, և իշխանք որք եկեալ էին ի ծառայութիւն Թագաւորին պարսից. որոց զփաքարն իսկ հրամայեաց տալ։ Եւ ապա խնդրեալ նա յետկար ի տէրանց կողմանցն երկոցունց՝ զՆիկիայն որ առ Կոստանդիանոսիւ, Կոստանդնուպօլսին որ առ մեծն Թէոդոսիւ, և զԵփեսոսին առ փոքր Թէոդոսիւ, և զՔաղկեդոնին առ Մարկիանոսիւ. և զամենայնն քննեալ և ի վերայ հասեալ՝ ասէ «Նոքա ընդէ՞ր ոչ ասացին երկուս բնութիւնս բաժանմամբ որպէս զոսա. յայտ է եթէ և զմեզ պարտ է յերկուս բաժանել, երկուս ասել Թագաւորութիւն և ոչ մի. զի եթէ բնութիւն ոք քննէ, և ես յերկուց բնութեանց եմ՝

թէպէտ ի հօրէ և ի մօրէ, թէպէտ ի հոգւոյ և ի մարմնոյ։ Բայց Աստուածութիւն որ յամենայն տեղւոջ է՝ թէ ինքն զինչ կամի զամենայն լինել և կամ առնել՝ ոչ կարէ, ապա Աստուածութիւնն զինչ է»։

Ապա հրամայեաց հարցանել զՋաքարիա՝ հայրապետն Երուսաղէմի և զայլս բազումս զորս ածեալ էր յԱղէքսանդրացւոց քաղաքէն՝ թէ որ իցէ ճշմարիտն, զարդարն ասացէք երդմամբ։ Եւ նոքա պատասխանի տուեալ ասեն «եթէ ոչ էաք խոստորնակի գնացեալ առաջի Աստուծոյ, և ոչ նա բարկութեամբ խոստորնակս գնացեալ էր ընդ մեզ։ Բայց արդ երկուցեալ յԱստուծոյ՝ առաջի ձեր զճշմարիտն ասեմք. հաւատք ճշմարիտ այն է որ ի Նիկիայն ասացաւ առ երանելեաւն Կոստանդիանոսիւ, և նմին միաբան են Կոստանդնուպօլսին և Եփեսոսին. և նոցին միաբան Հայոց հաւատն է ճշմարտութեամբ։ Իսկ Քաղկեդոնի ասացեալն ոչ է միաբան նոցին, որպէս ձեր իսկ բարերարութիւնդ ծանեաւ»։ Եւ հրաման տուեալ Թագաւորին խնդիր առնել ի գանձս արքային։ Եւ խնդրեալ գտին տեարեայս դրեալ ի վերայ հաւատս ճշմարիտս ըստ միաբանութեան հաւատոյ աշխարհիս Հայոց, որ էր կնքեալ մատանեաւ Կավատայ արքայի և որդւոյ նորին Խոսրովու։ Յորոյ վերայ հրաման ետ և արքայ Խոսրով եթէ ամենայն քրիստոնեայք որք ընդ

իմով իշխանութեամբ են՝ զհաւատս Հայոց կալ-
ցեն։ Եւ որ միաբան էին ընդ Հայոց հաւատոյս
ի կողմանս Ասորեստանի Կամկայէշով մետրա-
պօլիտ և այլ տասն եպիսկոպոսք, և նոցին միա-
բան աստուածասէր Թագուհին Շիրին և քաջն
Սմբատ և բժշկապետն մեծ։ Իսկ զպատճէն ու-
ղիղ խոստովանութեան արքայ Խոսրով հրամա-
յեաց կնքել իւրով մատանեաւ, և տալ ի գանձն
արքունի։

Իսկ արդ՝ զի եհան զմեզ Աստուած այժմ ի
խաւարին իշխանութեանց, և արժանի արար ծա-
ռայութեան երկնաքաղաքացի Թագաւորութեանդ,
որչափ ևս առաւել քան զառաւել արժան է մեզ
վայելել ի խաղաղութեան, որ և պարտիմք աղօթել
և խնդրել ի Քրիստոսէ Աստուծոյ վասն բարե-
պաշտ և աստուածասէր Թագաւորութեանդ հաս-
տատուն և անշարժ կալոյ մնալոյ մինչև յաւի-
տեան իբրև զաւուրս երկնից ի վերայ երկրի»։

Իսկ յետ գնալոյ կայսեր երկուցեալ Ներսէս
ի ցասմանէ իշխանացն՝ փախչի ի Տայս՝ ի բնիկ
գաւառն իւր։ Յետ վեց ամի, յորժամ վախճա-
նեցաւ Թէոդորոս զօրավարն՝ դարձաւ ի Հայս։
Յաւուրս յայսոսիկ և յիշխանութեան Թէոդորոսի
Ռշտունւոյ, յ86 թուին եղև առաջին ելք ի Հայս
Տաճկաց հրամանաւ Օմարայ Ամիրալմումնոյ, որ
էր երկրորդ ի Մահմետէ. և ի 95 ամի Թուակա-
նութեան դարձեալ սաստիկ զօրու եկեալ Տաճ-

*կաց՝ առին զԴուին քաղաք, և եղև համար գերութեան 35,000. և ապա տիրեցին Հայոց, Վրաց և Աղվանից։ Իսկ աշխարհս Հայոց ի բաց կացեալ ի Տաճկաց՝ հնազանդի կայսեր, և ի խնդրոյ Ներսիսի լինի Համազասպ հրամանատար Հայոց ի 104 թուին։ Զոր լուեալ ամիրապետին՝ զայրացեալ կոտորեաց զպատանդսն Հայոց ոգիս իբրև 777. և իսկոյն մեռանի ինքն յիւրոց զօրացն. և զօրն Իսմայէլի որ յԵգիպտոս՝ միաբանեալ կայսեր՝ հալածեցին ի Քրիստոս և մկըրտեցան 16,000։*

*Իսկ ի վախճանել Համազասպայ հայցէ Ներսէս նախարարօքն հանդերձ յամիրապետէն զԳրիգոր Մամիկոնեան՝ եղբայր Համազասպայ, որ ի պատանդի իսկ էր առ նմա, կացուցանել իշխան Հայոց. և շինեաց զկաթողիկէն որ յԱրուճ։ Իսկ Ներսիսի կացեալ ամս 10. յաջորդէ զաթոռն Անաստաս ի 120 թուին, որ էր սենեկապետ Ներսիսի, ի գաւառէն Մասեացոտոյ, ի գեղջէ Ակոռւոյ. որ և զեկեղեցին Ակոռւոյ վայելուչ շինեաց։*

## Գ.—Թագաւորք Պարսից Սասանականք. անուանք եւ ժամանակք նոցին։

*Արտաշիր ամս 40. Շապուհ՝ ամս 23. Ներսէհ՝ ամս 14. Որմիզդ՝ ամս 3. Շապուհ (Բ)՝*

ամս 58. Արտաշիր՝ ամս 3. Վռամ որ Կրման՝ ամս 11. Յազկերտ՝ ամս 20. Վռամ՝ ամս 22. Յազկերտ ջախջախ՝ ամս 19. Պերոզ՝ ամս 27. Վաղարշ՝ ամս 4. Կավատ՝ ամս 11. Զամասպ՝ ամս 4. Կավատ՝ ամս 31. Խոսրով որ մկրտեցաւ՝ ամս 48։ Սա ի ժամ մահուան իւրոյ ընկալաւ զերկնային շնորհս, հաւատաց ի Քրիստոս և մկրտեցաւ յերրորդութիւն սուրբ. և ի սենեկի իւրում ետ պատարագ մատուցանել և հաղորդեցաւ մարմնոյ և արեան Տեառն. Որմիզդ՝ ամս 12։ Ի սորա ժամանակս էր Վահրամ ոմն Մեհևանդ՝ իշխան արևելից կողման աշխարհին պարսից, որ հարկանէր քաջութեամբ զզօրսն Թետալաց, և բռնութեամբ ունէր զԲահղ և զամենայն աշխարհն Քուշանաց մինչև յայնկոյս գետոյն մեծի որ կոչի Վեհռոտ, և մինչև ցտեղին որ կոչի Գասբուն։ Այս Վահրամ պատերազմեալ ընդ արքային Մազքթաց՝ եհար զբազմութիւն զօրացն և սպան զԹագաւորն և յափշտակեաց զգանձս Թագաւորութեան. և սուղ ինչ աւարաման առաքեաց ի մեծամեծ ընչիցն Թագաւորին Որմզդի. և զայլսն զօրացն բաշխեաց։

Իսկ Թագաւորն առեալ զայն ասէ ցասմամբ «ընԹրիքն առաւել մեծագոյն, և զնշանն ի պատառոյս ծանեայ. յայնչափ մեծամեծ գանձուց զայս միայն բերիք յարքունիս»։ Եւ հրամայեաց

փշտիպանացն երթալ ժողովել զգանձսն ի զօրացն։ Ընդ որ զայրացեալ զօրացն սպանին զփըշտիպանսն, և թագաւորեցուցին զՎահրամ. և միաբանութեամբ դիմեցին յԱսորեստան սպանանել զՈրմիզդ. զոր լուեալ Որմզդի փախչել կամելով, և անցեալ ընդ գետն Դկլաթ ընդ զոմն ի Վեհկավատ։ Այլ խորհուրդ արարեալ արանցն և համահարզացն և փշտիպանացն՝ սպանին զՈրմիզդ. և նստուցին թագաւոր զԽոսրով՝ որդի նորին ի վերայ աշխարհին պարսից։ Եւ ոչ յետ բազում աւուրց Վահրամ ամենայն զօրօքն եկն, եհաս փութանակի իբրև զխոյանալ արծուեաց. իսկ Խոսրով իւրայօքն փախստեայ անց ընդ գետն մեծ Դկլաթ. և Վահրամ հասեալ էառ զտուն և զգանձն արքունի, և նստաւ ի գահոյս թագաւորին . . . (պակաս ի տպագր.)։

Ապստամբեցին զօրք նորա ի Թիրակ, և կացուցին իւրեանց թագաւոր զՓոկաս. և եկեալ ի Կոստանդնուպօլիս սպանին զՄօրիկ և զորդիս նորա։ Զոր լուեալ Խոսրովու՝ առ զբազմութիւն զօրաց իւրոց և ել ի կողմանս արևմտից. և առ նախ՝ զԴարայ քաղաք. և ապա զԽոռեմ զօրավար որ Ռազմանն անուանի՝ զօրօք առաքէ ընդ Ասորիս, և զԱշդատ՝ ընդ սահմանս Հայոց։ Որոյ եկեալ պատերազմեցաւ ընդ զօրսն յունաց, որ ի Դու և ի յՈրդրու և փախստեայ տանի մինչև ի

Սադալայ, և առնու զքաղաքն Կարնոյ և զերէ զկաթողիկոսն Յովհան ամենայն սպասուք կաթողիկոսարանին. և ամենայն բնակչօքն քաղաքին տանի յԱհմատան։ Իսկ Խոռեմ անցեալ ընդ Աստրիս՝ հնազանդեցոյց զԱմիթ, զՈւռհայ և զԱնտիոք։ Եւ Շահենայ՝ զօրավարի Պարսից, առեալ զքաղաքն Կեսարիա՝ եկաց ի նմա տարի մի։

Եւ Խոռեմայ անցեալ ի Պիսիդոն՝ առնու զՏարսոն քաղաք. և պաշարեալ զԵրուսաղէմ աւուրս 19, փորեաց զհիմն քաղաքի և առ զնա. և այրեցին զնա հրով և սատակեցին սրով 57,000. և գերեցին 35,000. և զԶաքարիա հայրապետն և զսուրբ խաչն փրկչական ամենայն սպասուքն ոսկւով և արծաթով տարան ի գուռն արքունի։ Իսկ թագաւորն զկալանաւորսն հրամայեաց ի քաղաքն դարձուցանել և շինել զքաղաքն և հալածել զհրէայսն. և կացուցանել երիցապէտ քաղաքին զՄոդեստոս որ ի Հայս թուղթ գրեաց։

Եւ յամի 29 թագաւորութեանն Խոսրովու քակեաց Կոմիտաս զմատուռ սրբոյն Հռիփսիմէի զշինեալն ի սրբոյն Սահակայ. և եգիտ անդ զմարմին սրբոյն Հռիփսիմէի իմն թիզ և չորս մատն՝ կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ. և իւրով ևս մատանեաւ կնքեալ՝ շինեաց զեկեղեցին. և ի նոյն տեղին եդ զնշխարսն։ Եւ զսուրբ կաթուղիկէին փայտայարկն վերացուցեալ՝ քարայարկ շինեաց. և էր Յովհան վանաց երէց։

Իսկ Խոռեմ՝ զօրավարն պարսից. որ գերեաց զԵրուսաղէմ, ամենայն զօրօքն ի Քաղկեդոն հասանէր. և մարտուցեալ նաւուք ընդ Կոստանդնուպօլիս, ի միում աւուր մեռանին ի պարսից զօրացն արք 4,000: Եւ ապա Հերակլէս թագաւորն զԿոստանդին՝ զորդի իւր թագաւորեցուցեալ ի Կոստանդնուպօլիս. ինքն ել ի Կեսարիա ժողովել զամենայն զօրս իւր 120,000. և դիմեաց ի վերայ արքային պարսից: Եւ եկն ի Կարնոյ քաղաք. և հասեալ ի Դուին աւերէ զնա, և զՆախճիվան և զԳանձակ և զՀեզակ ի հիմանց բրէ. կործանէ և զբագինս հրատին մեծի որում Վնասպն կոչէին: Յաւարի առեալ զաշխարհն պարսից դառնայ ընդ Մարս. գայ, հասանէ ի Փայտակարան յաշխարհն Կասպից, բանակի ի Տիգրանակերտ աւանի: Եւ զօրավարքն պարսից Շահրվարազ և Շահէն երկու բանակօք յառաջոյ և զկնի հասանեն Հերակլեսի: Եւ դարձաւ Հերակլէս ի Թիկունս կոյս, հարկանէ զՇահէն 30,000 օքն: Եւ ինքն ընդ Ծղուկս ի Նախճիվան թափի. և անցեալ ընդ գետն Երասխ յաւանն Վրնջունիս՝ գնայ ի Բագրեւանդ. և անցեալ ընդ Ապահունիս՝ բանակի ի գիւղն որ կոչի Խարճաօք: Եւ Շահրվարազ այր ընտիր եղեալ՝ վեց հազարաւ նստի յԱրճէշ դարան գործեալ Հերակլեսի: Եւ հասանէ ի վերայ նոցա ի գիշերի, հուրբ վառեալ զքաղաքն. և զելեալսն ի նմանէ սրով սատակեաց. և

առեալ զօրն ամենայն գնաց ընդ Կեսարիա յԱ-
մասիա հանդուցանել զզօրս իւր։

Եւ դարձեալ դառնայ զօրօքն ի Հայս, ան-
ցանէ ի Շիրակ, ընդ Կոգովիտ ճանապարհ կա-
լեալ ի Հեր և Զարևանդ գաւառ, դէպ ուղիղ ի
Տիզբոն ի վերայ Խոսրովու. և անցեալ յայնկոյս
լերինն Վարապայ յերկիրն Ասորեստանեաց։ Եւ
անցեալ ընդ արևմուտս գնաց ի Նինուէ։ Եւ Հե-
րակլէս սաստիկ զօրութեամբ դարձաւ ի վերայ
նոցա. և զօրքն պարսից ոչ գիտացին զդառնալն
Հերակլեսի զի բալ ունէր զերեսս դաշտին, մին-
չև երթեալ խառնեցան ընդ միմեանս։ Եւ օգ-
նեաց Տէր Հերակլեսի յաւուր յայնմիկ. և պար-
տեցան զօրքն պարսից առաջի նորա. սպանաւ և
զօրավարն նոցա. և սաստակս սփռեալ յաւարի
առեալ զաշխարհն պարսից։

Եւ ինքն կայսրն հասանէ ի դուռն Տիզբոն
քաղաքի. և այրէ շուրջ զքաղաքաւն զամենայն
թագաւորական ապարանս. և դառնայ յԱտրպա-
տական։ Յայնժամ զօրն պարսից և նախարարք
թագաւորեցուցին զԿավատ՝ որդի Խոսրովու, և
սպանին զԽոսրով։ Եւ Կավատ առաքեաց հրեշ-
տակս պատարագօք առ կայսրն ի հաշտութիւն.
և նա առաքեաց նոյնպէս. և խաղաղութիւն ա-
րարին ընդ միմեանս. և սահման նոյն հաստա-
տեցաւ. (որ) ի մէջ Մօրկայ և Խոսրովու։ Իսկ
Կավատ կեցեալ ամս երկու՝ փախճանի. և թա-

գաւորէ Արտաշիր՝ որդի նորա, մանուկ տղայ։ Իսկ կայսրն Հերակլէս գրէ առ Խոռեմ զօրավարն պարսից, որ էր ի կողմանս Աղէքսանդրի. և կոչէ առ ինքն. և թագաւորեցուցանէ պարսից. և խնդրէ ի նմանէ զխաչն փրկչական, և առաքէ զկնի նորա արս հաւատարիմս սակաւ զօրօք։ Եւ եկեալ Խոռեմայ սպան զմանուկն Արտաշիր։ Եւ խնդիր արարեալ փրկչական խաչին՝ առաքեաց առ Հերակլէս. և նորա առեալ տարաւ յԵրուսաղէմ։

Աստանօր դադարէ թագաւորութիւն պարսից յազգէն Սասանայ սկսեալ յերրորդ ամի Փիլիպպոսի՝ թագաւորի Հռոմայ, և դադարեալ ի 18 ամի Հերակլէսի յ77 թուին, կալեալ ընդ ամենայն զթագաւորութիւն պարսից ազգին Սասանեան ամս 386։

Յետոյ թագաւորեցին մի մի ամ բազում պատանիք, այլ և աղջկունք ամսականօք, որ ոչ իսկ են արժանի յիշատակի, բայց անուանք նոցա են այսոքիկ։ Յետ Խոռեմայ թագաւորէ Բորն՝ դուստր Խոսրովու։ Եւ ապա Յազկերտ՝ որդի Կավատայ թոռն Խոսրովու, որ թագաւորէ ի Տիզբոն։

---

գ. Պատմութիւն Վարդանայ. Վենետ. 1862. եր. 58—64.

ԼԱ. Իսկ Խոսրով Թագաւոր Պարսից մօտ ի վախճանն հաւատայ ի Քրիստոս, և կոչեցեալ առ ինքն զՑրան կաթողիկոսն՝ զոր տէր Գիւտ էր ձեռնադրեալ հանդերձ այլօք եպիսկոպոսօք, ի գնալն իւրում առ Պերոզ արքայ՝ ուր յանդիմանեաց զմոլորութիւնն պարսից, ցանկալով մահու, մկրտեցաւ յՑրանայ և հաղորդեցաւ. և զկնի սակաւուց կատարեցաւ, և թաղեցին զնա քրիստոնեայքն յարքունական գերեզմանս։ Եւ առ զթագ նորա որդի նորա Որմիզդ, որոյ նենգ գործեալ սպանին զնա յիւրում դահլճի, և առնու զթագն որդի նորա Խոսրով. յորոյ վերայ յառնէ Վահրամ գլուխ զօրացն, և առնէ զնա փախստական։ Եւ գնայ առ Մօրիկ կայսր, և գտեալ ի նմանէ օգնութիւն դառնայ և տիրէ հայրենեացն, և լինի երախտահատոյց, թողլով ի Մօրիկ զՄիջագետս, և ի Հայոց զաշխարհն՝ որ Տանուտէրական գունդն կոչի. բաց յոստանէն Դւնայ. և յերկուց գաւառացն՝ որ է Ոտն Մասեաց և կողմն Արագածու, թողու ի Մօրիկ ի լեռնէն որ կոչի Ընծաքիսար, մինչև ցԱռեստն աւան և ցՀացիւնս։ Որ յանդգնեալ զեղեալ անուանսն յԱրայէն՝ փոխէ. զԱրմնին կոչեցեալ ի նմանէ՝ որ է Առաջին Հայք՝

Երկրորդ Հայք զնա կոչէ, յորում մայրաքաղաքն Սեաստ. և զԿապադովկիա, յորում մայրաքաղաքն Կեսարիա՝ Երրորդ կոչէ Հայք, և առնէ զնա եպարքի. և զՄելտենի՝ որ ունի զհոմանուն գաւառն իւր, կոչէ զնա Առաջին Հայք. և զՊոնտոս, յորում մայրաքաղաքն Տրապիզոն, Մեծ մասն Հայոց կոչէ զնա. և զՉորրորդ Հայք, յորում մայրաքաղաքն Նփրկերտ որ ասեն Մուփարկին, Յուստինիանոս գրէ զնա ի դիւան արքունի. և զաշխարհն Կարնոյ՝ յորում քաղաքն Թէոդուպոլիս՝ Մեծ մասն Հայոց կոչէ. և որ ի Մեծ Հայոց մասն էր առ նոսա, ի կողմանց Բասենոյ մինչև ցսահմանս Ասորեստանի, Մեծ Հայք անուանէ. և զկողմանս Տայոց սահմանօքն իւրովք՝ Խորագոյն Հայք կոչէ. և զկողմն Դունայ՝ Ներքնագոյն Հայք կոչէ: Զայս անուանս գրէ ի դիւանի.

Յորում աւուր Սմբատ Բագրատունի քաջապէս խոնարհեցուցանէ ընդ ոտիւք Խոսրովու զամենայն թշնամիս նորա. և նորա պատուասիրեալ նմա տայ զմարզպանութիւնն Վրկան աշխարհի, ուր երթեալ գտանէ ազգս Հայոց գերեալ, և բնակեալ ի Թուրքաստան անապատին մեծի՝ որ Սագաստան կոչի, մոռացեալ զլեզու և զդպրութիւն. որք տեսեալ զՍմբատ խրախ լինէին, և նորոգէին զլեզու և զգիր. և զերէց մի նոցա Հաբէլ անուն՝ տայ եպիսկոպոս ձեռնադրել մեծի հայրապետին Մովսիսի. հաստատէ զնոսա վիճակ սբբոյն Գրի-

գորի, և առեալ հրաման յարքայէ՝ գալ տեսանել զերկիր իւր։ Եւ եկեալ ի Դուին՝ սկսաւ շինել զփայտաշէն սուրբ Գրիգորն ի Վարդանայ որբոյ. և պահնակ բերդին բողոքէ ի դուռն, թէ վնասակար է բերդիս. և ելանէ հրաման քակել զբերդն, և հեռագոյն շինել. և խնդացեալ Սմբատ ի փառս Քրիստոսի, շինէ զեկեղեցին կոփածոյ վիմօք, և տայ ձեռնադրել պատրիարգ զտէր Աբրահամ զեպիսկոպոսն Ռշտունեաց, որ շատ ջանացեալ թըղթով ի ձեռն Պետրոսի՝ ոչ կարաց դարձուցանել զՎիւրիոն յուղղափառութիւն. վասն որոյ արարեալ ժողով ի Դուին, անիծին զՎիւրիոն հերեսիոտեայ։ Եւ Մօրիկ կացոյց յիւր կողմանն կաթողիկոս զՅոհան որ նստէր ի գեօղն Աւան, շինեալ անդ եկեղեցի, այր սուրբ, և ընտրեալ յամենեցունց։

ԼԲ. Յանիմ ժամանակի նախարարքն Մօրկայ սպանին զնա, և եդին թագաւոր զՓովկաս, որ և եկեալ ի Բասեն՝ ջանայր նուաճել զՀայս. և ընդ առաջ երթեալ Աշոտ, հարկանէ անչափ կոտորմամբ հրամանաւ Խոսրովու, և առնու զԿարնոյ քաղաք, և փոխէ զբնակիչսն յԱհմատան, տարեալ զՅոհան կաթողիկոս զնի, որ կայր ի դաղթի անդ. որ և անդէն վախճանեալ, բերաւ դին ի գեօղն Աւան, որ կալաւ զկաթողիկոսութիւնն ամս քսան և վեց. և սուրբ պատրիարգն Աբրահամ փոխի զկնի քսան և երեք ամի աթոռակալու-

թեանն. և յաջորդէ զնա տէր Կումիտաս, ի գեղ-
ջէ Աղցից։

Իսկ յիշխանաց կարգի զկնի Մեժեժայ պար-
սիկք կացին. նախ Դենշապուհ, որ զշնմոլու-
թիւնն շատացոյց, և յետ նորա Վարազդատ ամս,
և ապա Սուրէն ազգական Խոսրովու, որ շնայր
ընդ կանայս իշխանացն. ընդ որ զայրացեալ Վար-
դանայ՝ որդւոյ Վասակայ Մամիկոնենոյ՝ սպան
զնա, և առեալ զընտանիս իւր գնաց ի Կոստան-
դնուպոլիս։ Բայց Հերակլ սպանեալ զՓովկաս,
թագաւորեցուցանէ զորդի իւր, և ինքն խաղայ
յարևելս. և Խոռեմ աւերէ զՅոյնս հրամանաւ
Խոսրովու, քննախնդիր մահուանն Մօրկայ, և
գերէ զԵրուսաղէմ և զփայտն փրկական, և զՋա-
քարիա պատրիարգ Երուսաղէմի։ Յայնմ ժամա-
նակի պատրիարգն Կումիտաս ընդարձակէ զվկա-
յարան սրբոց Հռիփսիմեանցն, և պատահէ սուրբ
նշխարաց նոցա. և լինի ոչ սակաւ մխիթարու-
թիւն քրիստոնէից. և էր կնքեալ մատանեաւ
սրբոյն Գրիգորի, և սրբոյն Սահակայ, զոր ոչ
իշխեաց բանալ, այլ և զիւրն եդ ի վերայ. և
չափ հասակին Հռիփսիմեայ՝ տասն թիզ և չորս
մատն, և զսուրբն Գրիգոր ասեն՝ ինն թիզ, և
զՏրդատ՝ մետասան թիզ։

ԼԳ. Առաքեաց Հերակլ դեսպանս պատարա-
գօք առ Խոսրով խնդրել զխաղաղութիւն, որում
ոչ ետ պատասխանի. և բարկացեալ Հերակլի,

առնու ընդ իւր զեղբայր իւր զԹէոդոս· երկիցս հարկանէ զզօրսն Պարսից առ Անտիոքաւ, և երթայ ընդ Հայս ի վերայ Խոսրովու, և զնա ոյժառեալ Կաւատայ որդւոյ առաջնոյ Խոսրովու, սպանանէ զԽոսրով, և խնդրեալ սէր ի Հերակլէ՝ թողու ի նա զՄիջագետս. և դառնայ Հերակլ և գայ ի Կարնոյ քաղաք։ Յորում յաւուրս յաջորդեալ էր զսուրբ աթոռն Կոմիտասայ տէր Քրիստափոր, և հանեալ զնա զի առնէր խռովութիւն ի մէջ իշխանացն, դնեն զԵզր Նիգացի, զոր կոչեաց Թագաւորն ի Կարնոյ քաղաք, որ վասն տգիտութեանն իւրոյ քաղկեդոնիկ եղև, առեալ զԱղցք, և զերրորդ մասն Կողբայ գին հաւատոյն։ Եւ ի դառնալ նորա կշտամբեաց զնա Յոհան վարդապետ կաթուղիկոսարանին, ասելով. Յիրաւի Եզր կոչեցար, զի յեզր ելեր յուղղափառութենէ. և ինքն չոգաւ յԱղուանս, ի գլուխ Գարդման գաւառի, և ճգնեցաւ խիստ վարիւք։ Սա գրեաց երիս գիրս, զանուն իւր չդնելով ի նոսա, զմինն կոչեաց Խրատավարք, զմինն Հաւատարմատ, և զմինն Նոյեմակ։ Էր սորա աշակերտ մի Սարգիս անուն, որ զՍաբելին ախտանայր. զոր հալածեալ մերժեաց յինքենէ։ Յաւուրս յայսոսիկ մեռանի Կաւատ արքայ, և թագաւորէ տղայ որդի նորա Արտաշիր. և լուեալ Հերակլ, յորդորէ զԽոռեմ՝ առնուլ զթագն, սպանանելով զտղայն։ Զոր և արար իսկ. և ետ զխաչն

սուրբ ի Հերակլ։ Եւ սպանեալ զօրացն զԽոռեմ՝ տան զԹագն ի Բորն դուստր Խոսրովու, և զկնի նորա ի Զամրիկ քոյր նորա. և յետ նորա, զՈրմիզդ թոռն Խոսրովու, զոր խեղդամահ արարին, և եդին Յազկերտ թոռն Խոսրովու։

Իսկ Հերակլ զխաչն տարեալ յԵրուսաղէմ, կանգնէ ի տեղւոջ իւրում. յորում ժամանակի կարգէ զօրավար Հայոց զՄժեժ, զոր սպանեալ Դաւիթ Սահառունի, ինքն լինի իշխան հրամանաւ Հերակլի, զամս երեք, որ շինեաց զեկեղեցին Մրենոյ. և ապա սնարգեալ յիշխանացն հալածեցաւ. և անկաւ շփոթ մեծ ի Հայս, զմիմեամբք ելանելով. յորում աւուրս ընդարձակեաց Եզր զվկայարան սրբոյ Գայիանեայ. և տէր Քրիստափոր շինեաց միայնարան ի յՈտն Մասեաց, և առաքինանայր բազում ջանացող աղօթիւք, երեքհարիւր խարազնազգեստ արամբք։ Յորում աւուր ժողովեալ յԵդեսիա երկոտասան հազար Հրեայ՝ ապստամբեցին ի Հերակլեայ, և նա երթեալ պաշարեաց զՈւռհա, և առ զնա և արձակեաց զՀրեայսն կենդանի, յո՛ և կամիցին երթիցեն, ոչ լսելով Թէոդորոսի եղբօրն՝ որ կամեցաւ սատակել զնոսա։ Եւ գնացեալ անտի ընդ անապատ չոգան ի Տաճկաստան առ որդիսն Իսմայելի, որպէս առ ազգայինս, և կոչէին յօգնութիւն. և կէսք ախորժէին, և ոմանք ոչ, վասն այլ և այլ աղանդոյ նոցա, որպէս երբեմն Եգիպտացւոցն,

ըստ զանազան պաշտամանց նոցա։

ԼԴ. Յայնժամ ապա այր մի յորդւոցն Իսմայելի, որում անուն էր Մահմաթ Թանգար, որ էր ծնեալ ի քաղաքին Մադինա, մերձ ի Մաքա երկօրեայ ճանապարհաւ, յազգէն՝ որ կոչի Կորէշ, որդի Աբդլայ, որ մեռաւ որբ թողեալ զնա. որ և յարեցաւ ի վաճառական մի, և եղև ի տան նորա յառաջադէմ. մեռաւ վաճառականն և ժառանգեաց տան տեառն իւրոյ, առեալ զկին նորա. և երթայր ուղտօք յԵգիպտոս, և պատահեաց նմա միայնակեաց մի Սարգիս անուն յաղանդոյն Արիոսի և Կերինթոսի, որ և ուսոյց նմա ի հին մատենիցն զԱստուած, և զգիրս տղայութեան Տեառն մերոյ. և ի դառնալն ի տուն քարոզեաց զոր լուաւն. և հալածեցին զնա ազգն իւր. և եկն յանապատն Փառանու. և յորժամ եկին երկոտասան հազար Հրեայքն, առեալ պատճառս ի նոցանէ, քարոզեաց որդւոցն Իսմայելի զԱստուածն Աբրահամու, և եղև երաշխաւոր նոցա, որ թէ պաշտեն զնա՝ ժառանգեն զերկիրն զոր ետ Աստուած Աբրահամու։

Եւ լուան նմա, և ժողովեցան յԵւիլայ մինչև ցՍուր, որ է հանդէպ Եգիպտոսի, և զերկոտասան հազարսն ըստ ցեղիցն Իսրայելի երկոտասանից նահապետացն, հազար հազար արկին յինքեանս, և եղեն երկոտասան բաժին, ազգապետ դնելով ինքեանց, յորոց անուն կոչեցան իսկ՝

Նաբէովթ, Կեդար, Աբդլա, Մարսամ, Մասմա,
Իդումա, Մասէ, Քոդդադ, Թեման, Յետուր, Նա-
բէս, Կեդմա։ Եւ գնացին բանակս բանակս յա-
նապատէն Փառանու ցՌաբովթ Մովաբու, և ան-
ցին յայնկոյս Յորդանանու ի վիճակն Ռուբինի։
Եւ զօրն Յունաց էր յԱրաբիա. հարին զնոսա, և
փախեաւ Թէոդորոս եղբայր կայսերն մազապուրծ։
Եւ դարձան ինքեանք յԱրաբիա, բնակեցան ըստ
ցեղից ցեղից, և ժողովեցան առ նոսա ամենայն
մնացեալք յորդւոցն Իսրայելի, և եղեն զօր մեծ։
Եւ յղեն բանս առ կայսր, թողուլ զերկիրն զոր
ետ Աստուած Աբրահամու. և արար նոցա ընդ-
դէմ պատասխանի, և գումարեաց զօրս եօթա-
նասուն հազար ի ձեռն ներքինւոյ մի հաւա-
տարմի, և պատուիրեաց երթալ յԱրաբիա ի վե-
րայ Իսմայելի, ուր և սատակեցան իսկ. և լցան
մեծութեամբ բանակքն Մահմեդի։

## դ. Պատմութիւն Յովհաննու Կաթուղիկոսի, Երուսաղէմ, 1867. եր. 86—114.

Բայց մինչդեռ կենդանի էր սուրբ հայրա-
պետն Մովսէս, Խոսրով որդի Կաւատայ արքայի
Պարսից յետ բազում մարտից արութեանց և
քաջութեանց և տիրելոյ ազգաց բազմաց, ըստ
ծագման նշուլից աստուածային լուսոյն ի սիրտ
նորա՝ ի ժամ վախճանի իւրոյ հաւատացեալ յԱս-

տուած ճշմարիտ, և յՈրդի նորա միածին և ի Հոգին սուրբ Աստուծոյ, և անարգեալ ի բաց ընկէց զկռամոլ ամբարշտութիւնն, խոստովան եղև՝ թէ ոչ գոյ այլ Աստուած բաց ի միոյն միայն զոր քրիստոնեայքն պաշտեն։ Եւ ապա աւազանին սրբոյ վերստին ծննդեան լուսաւորութեամբ հաղորդի ի կենդանարար մարմնոյ և արեան Տեառն, և ողջունեալ զսուրբ Աւետարանն Քրիստոսի համբուրմամբ, յետ երից աւուրց վախճանի ի բարւոք ծերութեան։ Եւ բարձեալ զմարմին նորա քրիստոնէից, նուիրական սաղմոսերգութեամբ և քահանայական դասուք տարեալ դնեն ի շիրիմս Թագաւորացն։ Եւ թագաւորէ որդի նորուն ընդ նորա Որմիզդ, զոր իւրոյ իսկ մերձաւորացն և այլոց ևս նախարարաց նենգ գործեալ, յիւրում իսկ դահլճի զնա սպանանեն. և փոխանակ նորա որդի նորուն Խոսրով թագաւորէ։ Այլ և սմա ևս ի Վահրամայ ումեմնէ իշխանէ, որ թագաւոր զինքն կարդայր, նենգ գործեալ՝ փախստեայ անկանի առ Մօրիկ կայսր Հոռոմոց։ Իսկ կայսերն օժանդակեալ Խոսրովայ բազում զօրու հանդերձ, սպանանի Վահրամն Յիռայ առ հասարակ ի նոցանէ։

Եւ Խոսրով, թոռն հաւատացեալ Խոսրովուն, հաստատի դարձեալ ի թագաւորութիւնն Պարսից. և ըստ երախտահատոյցն լինելոյ՝ խնդրէ Մօրիկ ի Խոսրովայ զՄիջագետս Դարայիւ և

Մծբնաւ հանդերձ, և ի Հայոց զայն աշխարհ՝ որ տանուտիրական գունդն անուանէր, բաց յՈստանէն ի Դվին քաղաքէ, և յերկուցն ևս գաւառաց՝ որ է Մասեաց ոտն և կողմն Արագածու։ Զայսոսիկ ի բաց զատուցեալ, զայլն ամենայն թողու Խոսրով ի Մօրիկ, ի լեռնէն որ կոչի Ընծաքիսար մինչև ցԱռեստն աւան, և ցՀացիւն։

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Խոսրովայ հաստատեալ ի թագաւորութիւնն պարսից, աստանօր Սմբատ քաջ Բագրատունի բազում և անհնարին մարտս յարդարէր ընդդէմ բոլոր թշնամեաց նորա, և արիաբար մրցմամբ վանեալ վտանգեալ զբնաւ հակառակորդս նորա, յոտին նմա կացուցանէր։ Ընդ որ զարմացեալ Խոսրովայ՝ յաւէտ իմն հաճոյանայր Սմբատ յաչս նորա, և բազմօք ումամբք ընծայական օժտութեամբք զնա պատուասիրեալ՝ տայ նմա և զմարզպանութիւն Վրկանայ։ Իսկ Սմբատայ երթեալ հասեալ յաշխարհն այն, գտանէ անդ ազգս գերեալս ի Հայաստանեայցս, և բնակեցուցեալս ի Թուրքաստան կողմանէ մեծի անապատին՝ որ Սագաստան անուանի։ Զլեզու իւրեանց մոռացեալ, և դպրութիւնն նուազեալ յոյժ. որոց և տեսեալ զՍմբատ՝ յաւէտ իմն խրախք լինէին, և ի հրամանէ նորուն դարձեալ աշակերտեալ ըստ հայերէն հագագայս սիգոբայիցն զլեզուն նորոգէին, և ուսեալ դպրութիւն հայերէն՝ հաստա-

տէին ի հաւատս։ Եւ ապա գերէց ումն ի նոցունց իսկ Աբէլ անուն՝ եպիսկոպոս նոցա հրամայէ կացուցանել մեծի հայրապետին մերոյ Մովսէսի։ Եւ այսպէս վիճակ մեծի աթոռոյ սրբոյն Գրիգորի ի հեռաստան երկրի գնոսա կազմէ մինչև ցայսօր ժամանակի։

Բայց Սմբատայ մարտիւ քաջութեամբ զամենայն թշնամիս Յուսրովու նուաճէր հնազանդել. յետ բազմաբազմ բարութիւնս նմա պարգևելոյ Յուսրովու, և մեծահարկի մեծարանս գնելոյ, հրամայէ երթալ տեսանել Սմբատայ զերկիր ծննդեան իւրոյ։ Իսկ նա յերթալն իւրում ըստ հրամանի Յուսրովայ՝ խնդրէ շինել զեկեղեցին ի Դվին քաղաքի, որ էր իսկ անուանակոչութեամբ սրբոյն Գրիգորի։ Իսկ արքայի աչալուրջ երեսօք զհայցուածս նորա լցեալ, և այնպէս հրաման առ ի նմանէ ընկալեալ, չուէ գնայ. և եկեալ հասեալ յիւրական յաշխարհս յայս, և տեսեալ առանց առաջնորդի զաշխարհս Հայոց, վասն զի վախճանեալ էր մեծ հայրապետն Մովսէս, ապա կարգէ ի վերակացութիւն Հայոց զԱբրահամ Ռշտունեաց եպիսկոպոս՝ ի գեղջէ Աղբաթանից. և ինքն արկանէ հիմն եկեղեցւոյն սրբոյ կոփածոյ քարամբք, գեղեցկադիր շինուածիւ, կրով ձուլեալ ի մի. զի յառաջ յաղիւսոյ և ի փայտէ կազմեալ էր նա ի սրբոյն Վարդանայ։ Իսկ սպանեալ ամբոցին ամբաստան առ արքայ լինի իբր փաստա-

կար զնա զոլ բերդին. և վաղվաղակի հրաման ընդունի եթէ՝ բերդդ քակեսցի և եկեղեցիդ ի դմին տեղ շինեսցի։

. . . . . . . . . . . . . . . . . . .

Յետ այսորիկ ըստ հրամանի կայսերն Մօրկայ զՅովհան ոմն ի գաւառէ Կոգայ ի Բագարան գեղջէ, կացուցանեն կաթողիկոս յունական կողմանն, բնակեցուցանելով զնա ի քաղաքագիւղն Աւան. ուր և շինեաց իսկ ինքնին Յովհան զպայծառակերտ քաւարանն սուրբ, և շուրջանակի նորա զարդարեաց կալուածս կայանի իւրոյ։ Իսկ մեծ հայրապետն Աբրահամ ըստ նախասաց բանին ի Դվին քաղաքի բնակէր՝ ի Պարսից բաժնի անդ, զի գետն Ազատ զսահման բաժնիցն երկոցունց ընդ մէջ հատանէր։ Եւ թէպէտ և Յովհան այր ճշմարիտ և արդար էր և առաքինի ի վարս, և բնաւ ոչ ինչ շեղեալ զկնի Քաղկեդոնական աղանդիցն, սակայն հակառակաթոռ գոլով՝ յերկուս հատուածս ճեղքեալ լինէր միատարր միութիւն հայրապետական Աթոռոյն, և ապա ոչ սակաւ հակառակութիւն կրեալ լինէին կողմանքն երկոքին։

Բայց Սմբատ զկնի բազում արիական քաջութեանցն և բազմահանդէս երկոց, և կրկին անգամ մենամարտիկն լինելոյ ընդ Եփթաղեայ արքային Քուշանաց և սպանանելոյ զնա, վախճանի ի բարւոք ծերութեան ի Տիզբոն քաղաքի։

Եւ բարձեալ տարան զմարմին նորա ի Հայս, և դնեն ի Դարոյնս՝ որ ի Կոգ գաւառի։ Իսկ զօրքն Մօրկայ ապստամբեալ առ ի նմանէ, և սպանեալ զնա ի պալատանն, կացուցանեն փոխանակ նորա զՓոկաս։ Իսկ Փոկաս եկեալ զօրօք բազմօք ի Բասեան, առ ընդ իւրեաւ զՀայաստանեայս նուաճել. իսկ Աշոտ ոմն հրամանաւ Խոսրովայ հասեալ ի Հայս, և դիմեալ ի վերայ՝ խորտակէր զզօրսն Յունաց, զի ոչ լինէր թիւ սպանանելոցն ի դաշտին, և ինքն կալեալ գործ պատերազմի ընդ Կարնոյ քաղաքի՝ առնոյր զնա։ Եւ յետ երկեամ մի ամաց զբնակիչս քաղաքին յԱհմատան փոխէ։ Եւ վասն զի ծերունի կաթողիկոսն Յովհան կայր ի փախստականութեան ի նմա, ընդ նոսին և նա ևս ըմբռնեալ վարեալ ի գերութիւն, և անդէն վախճանեալ բերաւ ի գիւղն Աւան, որ եդաւ մերձ յեկեղեցին՝ զոր իւր իսկ էր շինեալ. կալեալ զաթոռ հայրապետութեան ամս իզ։ Ի նմին իսկ ամի՝ ապա երանելի Հայրապետն Աբրահամ լցեալ զթուականն կենաց իւրոց իբրև ամս իդ, փոխի և յաշխարհէ, և յաջորդէ զաթոռ նորա Կոմիտաս ի գեղջէ Աղցից, փակակալ սրբոյն Հռիփսիմեանց վկայարանին, և եպիսկոպոս զկնի ի Մամիկոնեան Տարօնոյ։

Բայց Հերակլի սպանեալ զՓոկաս՝ զորդի իւր ընդ նորա թագաւորեցուցանէ, և ինքն զօրու բազմաւ չուէ գնալ յԱսորեստան։ Իսկ Խոսեմ

հրամանաւ Խոսրովայ առեալ զՑրուսաղէմ ան-հնարին կոտորածիւ. սպառէ ի նմա զամենայն այր, և զբազումս գերէ։ Ընդ որս և զհայրապետն նոցա զԶաքարիա, և զքրիստոսընկալ զսուրբ Խաչն տէրունեան ի գերութիւն վարէին։

Զայսու ժամանակաւ մեծ Հայրապետն Կոմիտաս զվկայարան սուրբ Հռիփսիմեանցն՝ որ նախ խրթին և փոքրատեսակ իմն էր շինեալ, ևս հրաշապէս և վայելուչ և նազելի և պայծառ շինուածով յարդարէր. ուր և պատահեալ սուրբ տիկնոջն Հռիփսիմեայ՝ ոչ սակաւ լինէր մխիթարութիւն բնաւ իսկ Հայաստանեայցս։ Եւ էր նա կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի և սրբոյն Սահակայ, ապա և մեծի հայրապետին ևս Կոմիտասայ ոչ համարձակեալ բանալ զնա, եդ և զիւր ևս կնիք ի վերայ նորա. իսկ չափ հասակի տիկնոջն՝ իննն թիզ և առ չորս մատունս։ Ապա շինեալ զեկեղեցին սուրբ, և անդ ամփոփեալ ժողովէ զնշխարս սուրբ Տիկնոջն ի պատրաստեալ իւր կայանսն։ Յետ որոյ ապա քակեալ սորա զփայտայարկ զմբէթ սրբոյ կաթուղիկէին՝ որ ի Վաղարշապատ քաղաքի, շինէ զնա գեղեցկայարմար և չքնաղատես կոփածոյ քարամբք։

Բայց Կաւատ որդի առաջնոյ Խոսրովայ սպանեալ զերկրորդն Խոսրով Պարսից արքայ՝ ինքն փոխանակ նորա թագաւորէ։ Եւ ապա տուեալ Կաւատայ զմարզպանութիւն Հայոց Վարազտի-

րոցի որդւոյ քաջին Սմբատայ, առաքէ զնա յիւրական աշխարհն։ Իսկ եկեալ նորա եգիտ հրաժարեալ ի կենաց աստի մեծ հայրապետն Կոմիտաս, որ եկաց իսկ յաթոռ հայրապետական ամս ութ։ Ապա զՔրիստափոր ոմն յԱբրահամեան տանէ խորհրդակցութեամբ Թէոդորոսի Ռշտունեաց տեառն՝ կացուցանէ յաթոռ Հայրապետութեանն։ Զսմանէ բան ճառի՝ թէ քսութիւն իմն յիւրում լեզուի կրէր, և սակս այնորիկ ասէ՝ ասպետն Վարազտիրոց զչարեալ զտանիւր ընդ եղբարս իւր։ Իսկ ի վերայ այսպիսի համբաւոյ ապա և յընտանեաց տանն քիղք չարաբանք ի վերայ յարուցեալ նորա՝ բամբասանս ապիրատս յօդէին. և ապա այնուհետև ոչ ըստ իրաւանց ուղղոց ինչ, այլ կամակար մտօք ըստ կամս անձանց հաստատէին վճիռ՝ անկանել նմա ի պատուոյն։ Իսկ նորա իւրովի կամաւ խոյս ի չարէն տուեալ, երթեալ շինէ միայնարան մեծ մերձ ի գիւղն Ուղեաց որ ի Մասեաց ոտան, և բազում միանձունս առ ինքն գումարեալ առաքինաջան երկօք և բազմաշխատ քրտամբք, փայլէր պահոց պնդակազմութեամբ և աղօթից պաշտպանութեամբ և ամենագիշեր տքնութեամբ, կացեալ յաթոռ Հայրապետութեան ամս երիս։ Ապա փոխանակ նորա կացուցանեն զԵզր ի Նիգ գաւառէ՝ ի Փառաժնակերտ գեղջէ, որ էր փակակեալ սրբոյն Գրիգորի։

Յաւուրս սորա վախճանի Կաւատ Պարսից արքայ՝ թողլով զթագաւորութիւնն Արտաշրի տղայադիտակ որդւոյ իւրոյ։ Իսկ ապա Հերակլ սակս ըղձակերտութեան քրիստոսընկալ նշանի Խաչին թագաւորեցուցանէ Պարսից զԽոռեմ, և զԽաչն սուրբ փոխարէն իւր առ ի նմանէ հայցեալ. որոյ երթեալ և սպանեալ ի Տիզբոն զաղայ թագաւորն Արտաշիր, վաղվաղակի առաքէ զտէրունեան Խաչն առ կայսրն Հերակլ։ Եւ իսկ և իսկ ապա զօրքն Խոռեմայ սպանանեն զԽոռեմ ի ճեմարանի իւրոյ ասպարիսէն, կացուցեալ թագաւոր զԲօր դուստր Խոսրովու՝ որ էր կին Խոռեմայ, և յետ մահուան նորա՝ զԽոսրով ոմն յազգէ Սասանայ։ Իսկ յետ նորա զԱզրմիկ դուստրր Խոսրովայ, և յետ նորա Որմիզդ թոռն Խոսրովայ, զոր խեղդամահ արարին։ Եւ զկնի թագաւորէ Յազկերտ թոռն Խոսրովայ։

Իսկ Հերակլէս զքրիստոսընկալ Խաչն տարեալ դնէ յԵրուսաղէմ ի տեղւոջ իւրում։ Բայց Մաժեժ Գնունի զօրավարի ի Հերակլեայ և առաքի ի Հայս. ապա պատուէր տայ հայրապետին Եզրի երթալ լինել կցորդակից և հաղորդկայսեր ի գործ մասին խոստովանութեան հաւատոյ։ Եւ եթէ ոչ, ասէ, կամիցիս երթալ միակցիլ, արասցուք մեզ այլ կաթողիկոս։ Եւ Եզրի վասն զի ոչ կարացեալ զատանիլ յիւրոց հաւատացեալ հօտիցն, յանձն առնու երթալ առ կայսր։

Եւ իբրև չոգաւ, ոչ տանէր ընդ իւր զՅովհան փակակալ սըբոյն Գրիգորի, որ էր յայնմ ժամանակի փիլիսոփայ կատարեալ, և աստուածային գրոց գիտութեան բանիբուն ճանաչիւր, այլ զայլ ոմն իւր քեռորդի՝ կիսակատար ուսմամբ՝ առեալ գնայր նովաւ վճարել զգործ իւրն։ Եւ ի հանդիպել կայսերն՝ խնդրեն առ ի նմանէ ձեռնարկ հաւատ նամակի։ Որ և վաղվաղակի իսկ գրեալ ետ նոցա՝ նզովել զամենայն հերձուածողս բաց ի ժողովոյն Քաղկեդոնի։ Իսկ Եզրի և իւրայոցն տգիտաբար իմն իբր անծանօթ գրոց աստուածայնոց, ոչ կարացեալ ի միտ առնուլ զխորամանկ հնարիմացութիւն հերձուածոյն՝ որ ընդ կայսերական ձեռագրին իբրև ընդ գրուանաւ էր թագուցեալ, դաւաճանեալ խաբեցան ընդ նորա՝ ըստ օրինի տօմարին Լևոնի։ Եւ ապա մեծարեալ յարքայէն, և ընկալեալ պարգևս զերիր մասն գիւղաքաղաքին Կողբայ, և զայս նորուն բովանդակաբար. դառնայ մեծաւ շքով ի տեղի իւր։

Իսկ ի չուել գալ նորա ըստ օրինի սովորական կարգացն, կղերք եկեղեցւոյն իւրոյ փութացեալ լինէին։ Բայց փիլիսոփոսն Յովհան՝ զոր վերագոյն ասացաք, ոչ ևս ընդ այլսն երթալով լնուլ զսակ հարկին որ ի վերայ կայր։ Եւ մտեալ ի տաճարն ի խնդիր Յովհաննու լինէր ի հայրապետէն Եզրէ։ Եւ պատմեցաւ ապա յոմանց Յովհաննու՝ հանդերձ մեղադրութեամբ, եթէ ընդէ՞ր

ոչ չոգար ընդ առաջ նորա յերկրպագութիւն։ Առ որս և պատասխանի տուեալ ասէ. Ձիարդ պարտ վարկանիմ յողջոյն կամ յերկրպագութիւն նմա երթալ, որ քակեաց իսկ զսահման կանոնի հարցն մերոց ուղղափառաց. և հանդունակից զմեզ խորհեցաւ առնել Քաղկեդոնեան չար հերձուածոյն։ Ապա հրամանն Եզրի սաստկանայր ի վերայ, և ապա ակամայ կամօք մուծանէին ըզՅոհան ի սենեակն։ Իբրև յանդիման եղև, ասէ Կաթուղիկոսն. Խրոխտաբար իմն ամբարհաւաճութեամբ ընդվզեալ թուիս. վասն այնորիկ ախտակրեալ սրտիւ ոչ տեսեր զմեզ։ Եւ նա ասէ. Խրոխտումն և ամբարհաւաճութիւն յիս ոչ գտանի, այլ ջատագով ճշմարտութեանն լինել հաւանիմ։ Բայց քո յիրաւի կոչեցաւ անունդ Եզր, վասն զի յեզր տարեալ հաներ տրոհեցեր զհայաստանեայսս, քակեալ զսահման հաւատոյ հարցն մերոց ուղղափառաց, և խրամատեալ զցանկն առաքելական, և ի մարդադաւան տօմարն Լեւոնի կործանեալ։ Ապա հրամայէ Եզր մուրցացի տանջել զպարանոց նորա և զկզակս։ Իսկ Յովհան ձեռս ի վեր ամբարձեալ ասէ, թէ՝ Ահաւասիկ գնացի խնդալով յերեսաց ատենին, զի վասն անուանն Տեառն արժանի եղէ անարգելոյ։ Եւ զայս ասացեալ ելեալ գնաց։ Եւ երթեալ առկայանայր ի Մայրոց վանս՝ որ ի ծործորս լերինն ամրոցին Բջնոյ, և սակս ի նմա բնակելոյն Յով-

համնայ՝ փոխեալ Եղբի զանուն տեղւոյն Մայրոց վանաց՝ Մայրեգոմ զնա անուանէր, և զՅովհան՝ Մայրեգոմեցի։ Բայց վասն զի յայնմ տեղւոյ ևս հրամայէր զնա հալածել, ապա չուէ գնայ ի գաւառն Գարդմանայ, և անդ ապա խստամբեր վարս իւր ստացեալ, նեղ և անցուկ պողոտայիւ հետևի զկնի ամենայն առաքինի վարուց։

Ջամանէ ապա համբաւ ամբաստանութեան պատմի, իբր դառն հերձուածս իմն նմա մուծանել ի մէջ եկեղեցւոյ սրբոյ. սակայն ես ոչ կարեմ հաւանութիւն իմոյ կամացս տալ վասն այնպիսւոյ առնն, թէ զիմրդ նա կարէր խորհել առ փլուզանել զուղիղ հաւատոյ շինուածս։ Այլ կարծիս իմն ընդունի սիրտ իմ ի հակառակադիր և խորիմաց այլոց կամաց այս գործ համբաւոյ լեալ։ Բայց եթէ սակս Սարգսի աշակերտի նորա համբաւէ ոք զայնպիսի չար հերձուածս ընձիւղեալ, և ես ոչ վասն նորա հակառակիմ, զի իմ իսկ ընթերցեալ է գիր վնասու նորա. այլ վասն զի Յովհան ի բաց յիւրմէ հալածեաց զՍարգիսն, սակս այնորիկ արտաքոյ կամաց նորա ասեմ զնորայն հերձուած։ Իսկ ապա հայրապետն Եզր զվկայարան սրբոյն Գայիանեայ, զոր երբեմն խրթին և մթին էր զնա շինեալ, քակեալ զայն՝ ևս ընդարձակագոյն և պայծառագոյն զնա շինեաց, կոփածոյ քարամբք և կրով ձուլելով, և արտաքուստ յարդարէր կայանս բնակութեան քա-

համայական դասուց ի պաշտօն աստուածային խորանին։ Այս եղև սկիզբն ժամատուն շինելոյ. մինչև ցայս վայր ոչ երևիւր ի Հայս։

Ի ժամանակի աստ յայսմիկ Վարազտիրոց որդի քաջին Սմբատայ փախստեայ լեալ յՌոստոմայ իշխանէ Ատրպատականի, չուէ գնայ ընտանեօք և աղխիւ առ կայսրն Հերակլ. վասն զի նենգ Թագուցեալ յինքեան Ռոստոմայ սպանանել զՎարազտիրոց, սակս այնորիկ գնացեալ տարաբնակէր ի Յոյնս։ Ի սմին յայսմիկ յաւուրս կայսրն Հերակլ զԴաւիթ Սահառունի կուրապաղատ արարեալ՝ իշխան Հայոց կացուցանէր, որ մեծաւ ճոխութեամբ և յաղթութեամբ բազմաւ քաղաքավարէր զիշխանութիւնն ամս երիս. և ի հրամանէ նորուն շինէր իսկ եկեղեցին գեղեցկայարմար՝ որ ի քաղաքագեղն Մրեն։ Իսկ յետ երեամ մի անարգեալ զնա նախարարացն և զօրաց իւրոց, հալածեցաւ։ Եւ յայնմ հետէ ապա ի չար հակառակութենէ նախարարացն և ի նանիր նախանձուէ զղրդեալ կործանեցին սպառասպուռ զՀայաստանեայսս. բայց միայն բարեպաշտ իշխանն Թէոդորոս ըստ սակաւաձեռն կարի՝ դիմակայ հինից Թշնամեաց գտանիւր։

Ձայսու ժամանակաւ ապա երևեալ ժառանգն Հագարայ աղախնոյն Մահմէտ որ ըստ Պօղոսի ի լեռնէն Սինայ կամ յանապատէ ի ծառայութիւն ծնեալ է. սա հպարտացեալ ի վերայ քրիս-

տոսադրոշմ և ստուգահաւատ ազգաց, լնոյր ապա
գիւր կորստական խորխորատն խորհրդոց, ո՛չ տա-
լով յագուրդ սրոյն ծարաւոյ, յոր միշտ արբուցա-
նէր յարենէ վիրաւորելոց՝ գերելոց գլխոց իշխանաց
թշնամեացն յարձակելոց ի վերայ հաւատացե-
լոց, որ թէպէտ կարծեցուցանէր զինքն հակա-
ռակորդն, հպարտացեալ ի հրամանէն աստուծոյ
դոլ քարոզ ճշմարտութեան աբրահամեան հաւա-
տոյ և մովսիսականն օրինաց, սակայն անաս-
տուած աստուածածանօթութիւն նորա, դաւա-
ճանումն միայն լինէր մտաց տգիտաց, վասն զի
դատապարտ էր դատաստան նորա, և անարգա-
գոյն յարգանք նորա, և ուխտադրուժք ուխտք,
և աննուէր նուիրմունք, և անողորմ ողորմու-
թիւնք։ Քանզի և ոչ իսկ թերևս ի Տեառնէ տուաւ
ազախնորդւոյ՝ ընդ որդւոյ ազատին լինել ժա-
ռանգորդ, որպէս և ոչ իսկ բաժին հաւատացե-
լոցն ընդ անհաւատին։ Արդ՝ իբրև զումարտակ
մեծ լինէր Հագարացին, և յաղթեալ կոտորէին
առ հասարակ զզօրս կայսերն Հերակլի որ յԱ-
րաբիա, այնուհետև ազգք և ազինք պակուցեալք
ի հայէ նոցա՝ հնազանդեցան ի ծառայութիւն
նոցա։ Իսկ Երուսաղէմացիք զքրիստոսընկալ սուրբ
Խաչն վաղվաղակի յուղարկէին նաւուք ի Կոս-
տանդնուպօլիս. զի մի՛ կրկին ևս ի թշնամեացն
գերեսցի, և ինքեանք հնազանդեցան ի ծառայու-
թիւն Հագարացւոյն։

Աստ ապա վախճանեալ կայսրն Հերակլ, Կոստանդին որդի նորա ընդ նորա թագաւորէ։ Եւ վասն զի նախարարք աշխարհիս մերոյ անմիաբան լեալք, և ոչ ոք էր որ սմա զօրավարէր, յայնժամ ապականիչ զօրքն Հագարայ համարձակութիւն առեալ յԱսորեստան կողմանէ՝ ասպատակ ի Հայս սփռէին. և ըստ օրինակի հրացայտ իմն հրդեհի՝ ճարակ բոցոյ նոցա վաղվաղակի հասանէր յԱյրարատ գաւառ, հարեալ զդաշտավայրն ամենայն, և պաշարեալ պատերազմաւ զԴվին քաղաք, և առեալ զնա՝ զսուսերս իւրեանց արբուցին յարենէ քաղաքին, ուր ոչ ես կայր թիւ բազմութեան սպանելոցն. լ. հազար ոգի գերեցին վաճառակուր լինել, և անցեալ գնացին ընդ որ չուեալ եկեալ էին յԱսորեստան։ Եւ իսկ և իսկ վախճանէր հայրապետն Եզր, կալեալ զաթոռ Հայրապետութեան ամս տասն։

Իսկ Թէոդորոս Ռշտունեաց տէր, և այլ նախարարք Հայոց հանդերձեցին կացուցանել յաթոռ Հայրապետութեանն փոխանակ Եզրի՝ զՆերսէս եպիսկոպոս Տայոց, բայց նա յապշութեան լեալ յանհնարին կոտորելոցն՝ որ ի գերելոց քաղաքին, գաղտագնաց փախստեայ լինել խորհէր, իբր ոչ կարող կալ ի քաղաքավարութեան այնմ աստիճանի մեծի։ Ապա յողոքական բանից և ի սադրելոյ նախարարացն հնազանդեալ հանդարտիւր։ Եւ կացեալ յաթոռ Հայրապետութեան՝

ամփոփեալ հաւաքէր զբազմութիւն դիակացն անկելոց, և ի նմին տեղ վերստին շինէր զհրդեհեալ վկայարան մեծի նահատակին Սերգեայ։ Զկնի ապա շինէ տաճար սրբութեան և ի վերայ վիրապի սրբոյն Գրիգորի. ուր ի մէջ թունաւորացն թաղեալ առաքելանուէր այրն Աստուծոյ. զկամակոր վիշապին ջախջախեաց զգլուխ, ի մեռելութենէ խորոց կռապաշտութեան վերածելով զՀայաստանեայսս ի լոյս փառաց Որդւոյն Աստուծոյ։ Դարձեալ յուսացեալ ի Տէր, և ոչ ածեալ զմտաւ զկրթական արշաւանս հինիցն թըշնամեաց, գեղեցիկ իմն մոլութեամբ դնէ ապա հիմն մեծ և հրաշալի բազմապայծառ յարկի տան Աստուծոյ՝ ըստ անուանակոչութեան սրբոյն Գրիգորի, յանձն առնելով զկատարումն իմաստութեան շինողին Քրիստոսի։ Իսկ ի հիմնարկել զաստուածակերտ փարախն բանաւոր հօտին Քրիստոսի, ի ներքոյ չորից սեանցն հաստահեղուսիցն բաժանեալ դնէ զնշխարս ոսկերաց սրբոյն Գրիգորի, առ ի յանշուշտ մնացականութեամբ պահիլ գանձուն երկնաւորի ի գերչաց ապականչաց, և ի պարծանս հաւատոյ քրիստոնէական կարգաց։ Իսկ քրիստոսադրոշմ և զպատուական գլուխն ոչ ի խորոջ, այլ արտաքոյ զգլրոցի եդեալ՝ դնէ ի գանձարանս Աստուածութեանն ի յոյս բարեաց փափաքողաց նմա և ի բժշկութիւն ախտակրելոց։ Բայց հայրապետն մեծ Ներսէս հրաման

հայցեալ ի կայսերէն Կոստանդնէ, կացուցանէ զօրավար Հայոց զԹէոդորոս Ռշտունեաց տէրն։

Արդ՝ մինչ ցայս վայր ոչ ևս էր իւրովի եղեալ ի պատերազմ ընդ ումեք՝ ամիրապետի Հագարացւոյն, այլ միայն զզօրսն և եթ ասպատակաւ հանեալ սփռէր ի ծագս երկրի։ Ապա յայժմ նուագի ինքն իսկ ամիրապետն ելեալ ի Սին անապատէ, անթիւ բազմութեամբ անցանէր ընդ ծով ի հարաւակողմ և յարևելս, ի Պարս և ի Սագաստան, ի Սինդ և ի Մորան, ի Դարան և ի Մակուրան, և յաշխարհն Հնդկաց· առեալ և աւերեալ զբոլորեսին, բառնայ զամենայն թագաւորութիւնս ազգաց, բաց ի յՂիտինացւոց՝ որք են Հռովմայեցիք։

Իսկ կայսրն Կոստանդին ի Մարտինեայ մօրուէ իւրմէ դաւեալ սպանանի, կացուցեալ փոխանակ նորա զորդի իւր զՆրակլակ։ Իսկ Վաղենտին զօրավար հուպ ի վերայ հասեալ, և սպանեալ զՄարտինէ և զՆրակլակ զորդի նորա, կացուցանէ թագաւոր զԿոստանդին որդի Կոստանդնի։ Իսկ ապա վասն զի հատուած եղեալ՝ և եկեալ էր ի Յունաց ասպետն Վարազտիրոց, ապա մեծ հայրապետն Ներսէս խնդրէ հաշտութիւն նմա ի կայսերէ, և տայ առնել զնա կուրապաղատ և հրամանատար Հայաստանեայցս։ Իսկ նա յառնուլ զիշխանութեան պատիւն՝ վաղվաղակի վախճանի, զոր և տարեալ եդին առ հօր իւրում քա-

ջին Սմբատայ։ Ապա Ներսէս զորդի նորա զՍըմբատ ի պատիւ հօրն խնդրէ կացուցանել, և հայցէ ևս զԹէոդորոս Ռշտունեաց տէր ի զօրավարութիւն հաստատել. և այսպէս պայազատեալ յապահովանայր առ ժամանակ մի ի չար հինից Հագարու աշխարհս մեր։

Իսկ իբրև բառնայր առ հասարակ տէրութիւն ազգաց և ազանց, այնուհետև պատառեալ առագաստն հին հարաւոյ՝ ընչեաց ի մեզ նոր հարաւահողմ մահաբեր խորշակ, և տապախարշ արարեալ զմատաղատունկս իմանալի բուրաստանաց մերոց՝ խայթոցօքն խոցոտեաց. և այսպէս ապա յամս սակաւս արագընթաց ազգք հարաւոյ փոթորկեալ պտուտեալ տիրեցին ամենայն երկրի, զոր տեսեալ Թէոդորոսի և այլոց ևս նախարարացն, և պակուցեալք յահէ հինիցն եկելոց՝ հնազանդեցան ի ծառայութիւն Հագարացւոյն, դնելով ուխտ ընդ մահու, և կռելով դաշինս ընդ դժոխոց։ Եւ այսպէս ի բաց կացին ի կայսերէ։

Իսկ կայսեր զօրս բազումս գումարտակ արարեալ, չուէ գնայ ի Հայս՝ ընդ իւրև նուաճել, որում ոչ ոք թերևս գտաւ հնազանդեալ, բայց միայն ի Վրաց աշխարհէն։ Ապա կայսրն Կոստանդին յաւէտ իմն բարկացեալ՝ խորհէր կործանմամբ սաստիւ բառնալ զերկիրն ի միջոյ։ Իսկ հայրապետն Ներսէս մեծապաղատ աղաչանս

արքային մատուցեալ՝ դառնայ յայնց կամաց իւ-
րոց։ Եւ ապա հեզաբար գնացեալ ի քաղաքն
Դվին՝ իջեւանս ի տան Կաթողիկոսարանին ա-
րարեալ, և անդ ապա հրամայէ հռոմ քահա-
նայիցն պատարագ ի սուրբ յեկեղեցւոջն մա-
տուցանել, և քարոզել ի նմա ժողովն Քաղկե-
դոնի. և հաղորդեցան օրինացն ի միասին Թա-
գաւորն և հայրապետն մեր Ներսէս. այլ և ժո-
ղովեալ ևս եպիսկոպոսունքն։ Եւ այսպէս ապա
Թէ կամաւ և Թէ ակամայ պատճառք գայթակ-
ղուԹեան բազմաց այս լեալ. շարժեցաւ հաւատն
զոր ընկալեալ էր ի սրբոյն Գրիգորէ, և ցայն
վայր անշուշտ կացեալ և մնացեալ։ Իսկ մի ոմն
յեպիսկոպոսացն ի վայր ի բաԹրոնէ բեմին ի-
ջեալ՝ լռիկ իմն ծածկեցաւ յամբոխին։ Իսկ իբրև
յայտ իրք եպիսկոպոսին գայր, ածաւ եպիսկո-
պոսն առաջի արքային, և ապա հարցեալ առ ի
նմանէ Թէ՝ Ընդէ՞ր ոչ ընդ իս՝ կամ ընդ քում
Հայրապետին ոչ հաղորդեցար։ Նա պատճառս
փաստաբանականս ի մէջ առնոյր։ Առ ահի
սրտիս, ասէ, զայն գործեցի. քանզի մեք, ասէ,
մինչ ի տախտակի տպաւորեալ նկարապաճոյճ
դեղով միայն զձեզ զկայսերդ տեսանեմք, դո-
ղումն զմեզ պատեալ պաշարէ, Թողում ասել
զկենդանի դիտակ երեսացդ նկատել, և հաղոր-
դակից ևս լինել։ Կայսրն ասէ. Արդ հաղորդի՞ս
ընդ քում Պատրիարգիդ։ Ասէ եպիսկոպոսն. Իբ-

րև ընդ սրբոյն Գրիգորի. սակայն ինքն իսկ դա եղև պատճառք չհաղորդելոյս իմոյ ընդ իւր։ Զի երկուք ամօք յառաջ քան զայս հրամայէր դա ժողով եպիսկոպոսացն առ ինքն լինել. որք միաբան ընդ դմա ձեռնարկ արարեալ, նզովեցին զամենայն հերձուածողս, և առաւել ևս զժողովն Քաղկեդոնի, և ես ևս ապա խառն ընդ նոսա։ Վասն որոյ կայսր զայրագնեալ յանդիմանէր զնենգութիւնն Ներսիսի ի լեզու իւր. և ապա յայն ևս եպիսկոպոսն հաղորդէր ընդ նոսա՝ օրհնելով զԹագաւորն, և Թագաւորն զնա։

Եւ ապա ըստ հապճեպ տալոյ խնդրակաց ի Կոստանդնուպօլսէ՝ գնայ կայսրն փութանակի։ Իսկ Հայրապետն երկուցեալ իմն ի սաստիկ ցասմանէն Աշտունեաց տեառնն, եոթեալ դադարէ ի Տայս։ Բայց յետ մի անգամ և երկիցս ասպատակի իսմայէլեան զօրու ի Հայս, և սպառսպուռ տիրելոյ, առին պատանդ յամենայն գլխաւորաց աշխարհին զկանայս և զուստերս և զդստերս։ Բայց Թէոդորոս Աշտունեաց տէր գնաց ընդ Իսմայէլի զօրուն յԱսորեստան իւրայնօքն համազգօք, և անդ մեռաւ, և մարմին նորա բերեալ եդաւ ի գերեզմանի հարցն իւրոց։

Իսկ հայրապետն Հայոց Ներսէս յետ վեց ամի հալածանաց իւրոց, իբրև լուաւ զվախճանն Թէոդորոսի, և զդադարումն իսմայէլեան ասպատակին, դարձաւ անդրէն ի տեղի իւր։ Եւ միա-

խորհ ապա լեալ ընդ Նախարարացն, իշխան ի վերայ Հայաստանեայցս կացուցանեն զՀամազասպ Մամիկոնեան. որ էր այր ընթերցասէր և ուսումնասէր, և վարժ ի բոլոր հրահանգս, և զնախնական քաջութեանցն պայման միշտ ջանայր լրութեամբ կատարել մրցարանաց կրթութեամբ։ Բայց հայրապետն Ներսէս պարապ անձին գտեալ. զարտաքոյս հրաշակերտ Եկեղեցւոյն՝ զոր ինքն իսկ էր շինեալ, շուրջանակի պատուար պարսպով փակեալ ամրացուցանէր, յօրինեալ ի նմա յարկս բնակութեան ինքեան հաստահեղոյս կոփածու քարամբք։ Այլ և կարգեալ կացուցանէր ի նմա ամբոխութիւնս երդումարդաց ըստ պայմանի քաղաքականաց, և ածեալ ջուր ի Քասաղ գետոյ՝ զամենայն աւազախիր առապար դաշտավայրն ի գործ արկանէր, տնկէր այգիս և բուրաստանս ծաղկոցաց։

Աստ ապա դարձեալ սակս անհնարին և ծանրաքեռն ծառայութեանն ի բաց կացեալ Հայք յիմայէլեան բռնակալացն, հնազանդէին ի ծառայութիւն կայսեր։ Եւ մեծին Ներսեսի խնդրեալ յարքայէ առնել կուրապաղատ զՀամազասպ և հրամանատար Հայաստանեացս. զոր ապա լուեալ ամիրապետին՝ զամենայն պատանդսն Հայոց առ հասարակ կոտորէ, հոգիք իբրև ուչհե, (1776)։ Եւ յայնմ օրէ հետէ ապա հոգի խռովութեան առաքեալ յԱստուծոյ ի մէջ բոլոր բա-

նակացն խմայէլեան, և այր ի վերայ ընկերի յարուցեալ, և սուր յազգեր կալեալ անհնարին սաստակմամբ զմիմեանս կոտորէին. և սպանանէին ևս զամիրապետն իւրեանց, և այլ ի տեղի նորա կացուցանէին։ Ապա զօրքն խմայէլեան որ էր յԵգիպտոս, միաբանեալ ընդ կայսեր Կոստանդնի, հաւատացին ի Քրիստոս և մկրտեցան արք իբրև վեշտասան հազար։ Եւ ապա զօրացեալ Մաւի, և սպանեալ զայն ևս ամիրապետ, ինքն իսկ թագաւորէ ի վերայ բոլորից Հագարացւոցն, առարեալ խաղաղութիւն ընդ բոլոր ծագս երկրի։

---

ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ԲԱՌԻՑ ԵՒ ԱՆՈՒԱՆՑ։

Հրատ (եր. 37, 42). մեհեան կամ տաճար հրոյ, ատրուշան։ Հռչակաւոր էր հրատն Վշնասպ յԱտրպատական նահանգի (եր. 147)։ Տես ի ծանօթ. 2. յեր. 147. զոր ինչ ասացաք զանուանէս Վշնասպ։ Էր և շաժական հրատ, զոր մեծագոյն համարէին քան զամենայն կրակ آتش ի պարսից կոչեցեալ, որպէս ասէ հեղինակն։

Շահրմար (եր. 40). անուն քաղաքի անյայտ յայլ գիրս։ Ստուգաբանութիւն անուանս իցէ թերևս՝ شهرمار, քաղաք օձի կամ քաղաք Մարաց։

Շահաստանն Ոկնոյ (եր. 44). նոյնպէս քաղաք անյայտ մատենագրաց մերոց։ Ի սեպաձև արձանագրութիւնս Ասորեստանեայց յիշատակի գետն Ուկնի ի Խուժաստան աշխարհի։

Միհրևանդակ (եր. 41, 46) որ և Մեհևանդակ (որպէս Մեհրուժան և Մեհուժանն։ Ըստ սմին օրինակի և մեհեանն ի մեհրեան բառէ կարծի լինել). անուն Միհրան ազգատոհմին, ի ցեղէն պահլաւիկ Արշակունեաց։

Անուշ ըռուան (եր. 41, 45). մականուն Խոսրովու ա, «անմահ հոգի» ստուգաբանի ի լեզու պահլաւկաց։

Բամբիշն (42, 72, 159). ի լեզու պահլաւկաց նոյնպէս տիկինն կամ զթագուհի նշանակէ։

Մաշապերճան, Մաշկապերճան (եր. 42, 66). առ Բիւզանդ. եր. 55, մաշկապաճեան, և յեր. 189, մաշկաւարզան. վրան թուի լինել արքայի յարմարեալ վասն կանանոցի, թերևս ի բառիցս مشکو, կանանոց և بارگاه կամ بارگه, վրան արքունի։

Փուշտիպան (եր. 49, 68). ի փուշտ پشت բառէ պարսից, որ է թիկունք, և փուշտիպանն՝ թիկնապահ փոխի ի հայ լեզու։

Զոմ (եր. 50, 153). տես ի ծանօթ. յեր. 50։

Սինկղիտոս (եր. 52, 129, 183). է σύγκλητος, ծերակոյտ, բառն յունաց։

Ապրուէզ (55). մականուն Խոսրովու Բ, ابرويز կամ փարվիզ پرويز կոչեցելոյ, որ նշանակէ՝ յաղթող և երջանիկ։

Անակ (57). ի լեզու պահլաւկաց anâk դժնեայ նշանակէ։ Տես West, Arda, Viraf, Gloss.

Կայէն (56). տ. ծան. յեր. 56։

Կապկոհ (59, 102). է անուն լերինն Կովկասու և յԵղիշէէ ևս յիշատակեալ (59)։ Ստուգաբանութիւն բառիս է كوه قاف, قاپ, այսինքն՝ լեառն Կաֆ կամ Կապ։ Ցարդ ևս բնակիչք տեղւոյն զՎլադիկավկազ քաղաք Կապկայ կամ Կավկայ յորջորջեն։

Յետկար (64). է يادگار բառն պարսից։

Վասպուրական (76), հաւանական է կարծել զանուն նահանգիս ի վասպուր وسپور պահլաւիկ բառէ ծագեալ, որ է զօրագլուխ։ Տես Justi, Bundehesh, Glossar.

Ողոգոմեան (72). ծաղկազարդ օր արմաւենեաց, ἐυλογημένος (ὁ ἐρχόμενος ἐν ὀνόματι κυρίου), այսինքն՝ օրհնեալ (եկեալ անուամբ տեառն)։ Իսկական անուն տօնիս առ յոյնս է՝ κυριακὴ τῶν βαΐων կամ κυριακὴ βαϊοφόρος.

Ճամբար (78). چنبر, շրջան, տեղի շրջափակեալ, թերևս՝ բանակ։ Ճանբար ականակապ (103) է մանեակ, բոլորաձև զարդ պարանոցի։

Կորատոր (79, 126.) Curator, κουράτωρ, կառավարիչ տան արքայի։

*կինիկ (87). է* κυνήγιον, *հրապարակն կրկէսի.* Du Gange.

*Պէշասպի (89). զայս բառ պէշասպիկ ընթեռնուն Բառարանք և «պատի ձի» մեկնեն, այն ինչ առաւել հաւանական թուի զայն ի* پش *յառաջագնաց և* اسپ*, հեծեալ, ձիաւոր, բառից ստուգաբանել, իբր թէ՝ հեծեալ սուրհանդակ. զի ասէ Բիւզանդացին (56)». բայց միայն Թագաւորն պրծեալ մազապուրծ, պէշասպիկ մի սուրհանդակ առաջի, պրծեալ ելանէր փախստական։*

*Գեղում (91). տես ի ծան.*

*Ռէ, Ռէյ կամ Ռէհ (91). է* ری *նախնի քաղաքն պարսից, որոյ աւերակք ցարդ ևս տեսանին մերձ ի Թէհրան։ Չէ պարտ զՌէյ շփոթել ընդ Հրև քաղաքին, յիշատակելոյ առ հնագոյն մատենագիրս մեր, որպէս առնեն բազումք ի հայագիտաց, զի վերջինս է Հերատ քաղաքն Աֆղանիստանի.*

*Ամաղ, Ռոյեան, Զրէջան (94). տես զոր ինչ ասացաք զսոցանէ ի Ռուս թարգմանութեան աշխարհագրութեան Խորենացւոյն, յեր. 61, 62.*

*Զանգապանակ (101). զանգա ի լեզու պարսից սրունգ նշանակէ. ուստի և զանգապանն՝ սռնապան թարգմանի հայերէն։*

*Գումարտակ (103). ա. խումբ զօրաց. բ. փունջ*

կամ շար (ականց) ի զարդ պարանոցի։ Կարծեմք զսա ի كومارتن պահլաւիկ բառէ ծագեալ, որ նշանակէ՝ կազմել, շարել զգօրս կամ զայլ ինչ։ Տես, Justi, Bund, Glosc.

Խոսրով Շում (103, 105, 163, 165, 185, 221). մականուն Սմբատայ բագմայաղթի. «գովեստ կամ դրուատ Խոսրովու», ստուգաբանի ի լեզու պարսից։ Տես شوم, Bund. Glos.

Վեհռոտ (105). անուն Օքսուս կամ Ամու դարեայ կամ Ջահան գետոյն, بِه և رود բառից, այսինքն՝ վեհ գետ, կամ մեծ գետ։

Հար, Վատագէս, Տոխորստայն, Տաղական, Մարգ և Մարգռոտ (107). տես զսոցա զասացեալն մեր ի ռուս թարգմանութեան աշխարհագրութեան Խորենացւոյն, յեր. 75, 76։

Ջաւիտեան Խսրով (108, 163), մականուն Վարազտիրոցի որդւոյ Սմբատայ Խոսրով Շմոյ։ جاويد և جاويدان նոյն են ընդ յաւէտ և յաւիտեան բառից Հայոց։

Ջուվան վեհ կամ Ջովանան վեհ (114, 116), մականուն զօրապետին Խոսրովու, որոյ բուն անուն չէ մեզ յայտ։ Ջուանն է جوان պարսից, որ է՝ մատաղահաս, երիտասարդ. իսկ վեհ بِه ի լեզու պահլաւկաց նոյն ունի նշանակութիւն զոր և ի հայումս.

Խոռեամ, Խոռեմ (130, 142, 153), անուն երևելի զօրավարին Խոսրովու։ Ի լեզու պարսից։ خرّم

ուրախ և զուարթ նշանակէ։ Յիշատակի առմատենագիրս և այլ ձև անուան սորա՝ Խորիան։ Զամանէ ասէ Կաղանկատուացին (Բ, 10). «Արդ իբրև եւես (Խոսրով) եթէ յաջողեաց գործ մարտի պատերազմաց... ի ձեռն զօրավարին իւրոյ... որոյ բուն անուն իւր Խոռիան կոչէր. և վասն մղելոյ նորա և յօրինելոյ զճակատն պատերազմաց և զյաղթութիւնս կատարելոյ՝ ըստ խորագիտութեան պարսից, այլ և այլ պճնող անուամբ յորջորջէր զնա՝ Ռազմիոզան և երբեմն Շահ վարազ»։

Ռազմիոզան (130, 131). ասի ևս Ռազման, Ռամիկոզան և Ռազմայուզան. իսկ առաջինն է ուղղագոյն։

Աշտադ Յեզտայար (121, 122). անունս Աշտադ է اشتاد բառն պարսից, որ նշանակէ «զբարի հրեշտակ» ի զրադաշտական կեշտին։ Իսկ Յեզտայարն یزدیار «բարեկամ աստուծոյ» ստուգաբանի, որոյ ըստ օրինակի Ալլայեար اللهیار անուն նորագոյն պարսից է ձևեալ։

Զիթարիճ (123). քաղաք Հաշտենից կոչէ զսա Սեբէոս։ Անյայտ է այժմ նշանակութիւն բառիս առիճ կամ առինճ, որ ի հնումն ի լեզու պարսից՝ աւան կամ գիւղ թուի լինել. որպէս երևի յանուանցս՝ Բագայառինճ։ Մկնառինճ, Կուկայառինճ, Տիրառիճ։

Շահէն պատգոսապան (123, 148). է անուն զօրավարին Խոսրովու, զոր Յոյնք Σάην անուանեն։ Շահէն է . شاهين պարսից, որ ի լեզունոցա և առ մեզ զբազէ կամ ազգ ինչ բազէի լսի։ Իսկ բուն նշանակութիւն բառիս պատգոս անյայտ է մեզ։ Բառգիրք՝ պաշտօնեայ կամ զօրավար մեկնեն զսա, զիմաստն առեալ, ի Թոմ. Արծր. եր. 322. որ ասէ. «զայսու ժամանակաւ առաքին յարքունուստ պատգոսք պատուաւորք զօրօք բազմօք»։ Իսկ պատգոսապանն, որ կրկնակի յիշատակի ի պատմութեանս, ոչ է գլուխ պատգոսաց (պաշտօնէից), զի լինէր պատգոսապետ, այլ կառաւարիչ թուի լինել պատգոսի (այլով նշանակութեամբ) پدکوس , որ ի լեզու պահլաւկաց գաւառ փոքրիկ նշանակէ։

Ռոճիկ վեհան, (151) Ճուռճ վեհան, Ռոճվեհ։ Ուղղագոյնն Ռոճվեհան և Ռոճվեհ թուի լինել, զի այլ ձև մականուանս Ռուզբիհան յիշատակի ի Միքայելէ Ասորւոյ և ի յոյն պատմագրաց։ Ռոճվեհ, պարսկերէն روزبه , զայր յաջողակ նշանակէ։ Ռոճն նախկին պահլաւկաց ձև է روز բառիս, որ է՝ աւր կամ լոյս։

Շահր վարազ (148, 149, 150). Տես զոր ինչ ասացաք զմականուանէս ի Թարգմանութեան Աշխարհ. Խորենացւոյ յեր. 72—75։

Պեշոպա (149). տես ի ծանօթ. 149.

Խոռոխ (159, 163, 174). է خُرف, փառուխ, բառն պարսից, որ է՝ գեղեցկատեսիլ, և վարի իբրև գյատուկ անուն։ Հնչումն Խոռոխ յիշատակի և առ Համզայի (II 47). Chorzad, filius Chorhormos, ուր Խոռ դնի ի տեղի Խոռոխի։ Հայ ձև անուանս է Փառոխ որպէս տեսաք յեր. 10։ Խոռոխ ազատն էր որդի Խորոխ Որմզդի և եղբայր Ռոստոմայ իշխանին Ատրպատականի։

Որդսպու (175, 189) (ի մերում ռուս թարգմանութեան պատմութեանս վրիպակաւ գրի Ордубадъ). առ այլ մատենագիրս մեր ոչ յիշատակեալ, երևի լինել ի մէջ Բերկրոյ և Բայազիդի։

Խուժաստան Տաճկաստան (177). ոչ է սա Արաբիա—Տաճկաստան, այլ մասն ինչ Խուժաստանի յարևելեան հիւսիսային եզերս ծոցոյն Պարսից, որ այժմ Արաբիստան յորջորջի. եթէ չիցէ խուժաստան հասարակ անուն և ի կիր առեալ ի տեղի խուժական կամ այլ նոյնանման բառի։

Մաւրինեայ (180). պարտ է ընթեռնուլ Մարտինեայ։

Մարսս (177, 181). չէ այս մեծ նահանգն Պարսից Մեդիա, զոր Հայք Մարս կոչեն, այլ գաւառ ինչ փոքրիկ մերձ ի Նեհաւենդ։ Կա-

*դանկատուացւոյն (139) Բեկղադ կոչէ գա-
նուն տեղւոյն մեծի պատերազմին ի մէջ
տաճկաց և պարսից։ Ի Պատմ. Խոր. բ. 60.
նոյնպէս յիշատակի սա. «Ի Մարսս ի Սա-
հունդ անուանեալ տեղւոջ»։ Ուստի յայտ
է, թէ չէ պարտ շփոթել զՄարս ընդ Մարսս
անուան, որպէս առնեն ոմանք։*

*Սպաթառ (185).* σπαθάριος *զինակիր թարգմանի.
իսկ այն որ ունէր զպատիւ սպաթարի և
կանդիդատի* σπαθαροκαδιδάτος *յորջորջէր։* Du
Gange.

*Դրունգար (188) և ոչ դրունգար, որպէս էր ի
տպագ. և ի ձեռագ. օրինակի մերում. է*
δρουγγάριος, Drungarius *զինուորական պատիւ
առ բիւզանդացիս, այսինքն՝ պետ վաշտի։*
Du Gange.

*Ոգոմայ (191). Ուղղագոյն Ոգպայ ըստ Ղևոն-
դեայ։*

*Փաքար (198). տես ի ծանօթ.*

*Կամիշով (200). տես ի ծանօթ.*

*Պալհաւ, Պահլաւ (223)։ Տես զոր ինչ ասացաք ի
ռուս թարգմանութեան աշխարհագրութեան
Խորենացւոյն յեր. 68—71։*

*Մորդոցէս (225). ոչ մարտուցեալ և ոչ մարտ-
կոց, որպէս կարծէ հրատարակիչն (1851),
այլ անուն տեղւոյ ինչ ի Գոգովիտ գաւա-
ռի, որպէս ասէ Ղևոնդ (24). Պառկոպ որ էր*

բնակեալ ի գաւառին Գողովիտ ի սահմանս Բագու ձորոյ և Մարդուցայից»։

Պայուսակ (240). հին տպագր. պայուսակ։ Ի Մնացորդս Անանիայի Շիրակունւոյ (Ս. Պ. Բուրգ. 1877, 29, ծան.). Սատեր է դ դրամոց կշիռ, և պայուսակն ժ լիտր է, (չկ, կամ մերձաւորապէս) ու սատեր, որ լինի (վպխ, կամ մերձաւորապէս) տ դրամակշիռ։

Թանկանգար (104). Թոմա Արծր. (110) և Վարդան (63) Թանգար կոչեն զՄահմէտ։ Զթանգարն վաճառական թարգմանեն բառգիրք և հայագէտք, իբր թէ յարաբացի تاجر թաջիր բառէ, կամ յարամականէն թագգար (Lagarde, Arm. Stud. 173) ի փոխ առեալ։ Թանկանգարն, եթէ չիցէ աղաւաղութիւն գրչի, թուի լինել توانگر թաւանգար բառն՝ որ է՝ հարուստ կամ իշխան։ Իսկ թանգարն թերևս է թանգար تانگر բառն պարսից, որ թարգմանի՝ վարսավիրայ, սափրիչ գլխոյ, զի ասէ Թոմայ Արծրունին (110). «և եղև (Մահմէտ) այր թանգար արուեստիւ և հմուտ վաճառական» որով զարուեստն ի վաճառականութենէ որոշէ։



# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

ՂՈՒԿԱՍԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Է.

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՍԵԲԷՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ
# Ի ՀԵՐԱԿԼՆ



ԹԻՖԼԻՍ
Էլէկտրատպ. Օր. Ն. Աղանեանցի, Պօլից. 7
1912

## ՂՈՒԿԱՍԵԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ

---

Ա. Եղիշէի Պատմութիւն Վարդանանց . 20 կ.
Բ. Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան. . . . . . . . . . . . . 30 կ.
Գ. Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ Պատմութիւն Հայոց. . . . . . 30 կ.
Դ. Պատմութիւն Նահանգին Սիսական Ստեփաննոսի Օրբէլեան . . . . 50 կ.
Ե. Յովհաննէս Կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց . . 30 կ.
Զ. Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ . . . . . . 20 կ.
Է. Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն. . . . . . . . . . . 40 կ.

---

**ԳԻՆՆ Է 40 ԿՈՊ.**

